# ԴԱՍԱԿԱՆ ՀԱՅԵՐԷՆԸ

ԵՒ

# ՎԻԵՆՆԱԿԱՆ ՄԽԻԹԱՐԵԱՆ ԴՊՐՈՑԸ

ՊԱՏՄՈՒԹԻՒՆ ՀԱՅ ԴԱՍԱԿԱՆ ԼԵԶՈՒԻ ԶԱՐԳԱՑՄԱՆ, ԱՆԿՄԱՆ ԵՒ ՎԵՐԱԾՆՈՒՆԴԻ· ՀԱՆԴԵՐՁ ՀԱՄԱՌՕՏ ԱԿՆԱՐԿՈՎ Հ· ՅՈՎՍէՓ ԳԱԹԸՐՃԵԱՆԻ ԿԵՆՍԱԳՐՈՒԹԵԱՆ (1820—1882) ԵՒ ՎԻԵՆՆԱՅԻ ՄԽԻԹԱՐԵԱՆ ԴՊՐՈՑԻ ԳՐԱԿԱՆ ԳՈՐԾՈՒՆԷՈՒԹԵԱՆ (1840—1854) ՎՐԱՅ

ԳՐԵՑ

Հ. ՆԵՐՍԷՍ Վ. ԱԿԻՆԵԱՆ
ՄԽԻԹԱՐԵԱՆ ՈՒԽՏԷՆ

ՎԻԵՆՆԱ
ՄԽԻԹԱՐԵԱՆ ՏՊԱՐԱՆ
1932

# DIE KLASSISCH-ARMENISCHE SPRACHE

UND

# DIE WIENER MECHITHARISTEN-SCHULE

GESCHICHTE DER ENTWICKLUNG, DES UNTERGANGES UND DER RENAISSANCE DER KLASSISCH-ARMENISCHEN SPRACHE, NEBST EINER SKIZZE ÜBER DIE BIOGRAPHIE P. JOSEPH GATHERDJIANS (1820—1882) UND DIE LITERARISCHE TÄTIGKEIT DER WIENER MECHITHARISTEN-KONGREGATION (1840—1854)

ANHANG: ZUSAMMENFASSUNG IN DEUTSCHER SPRACHE

VON

P. NERSES AKINIAN

MECHITHARIST

WIEN

MECHITHARISTEN-BUCHDRUCKEREI

1932

# ԴԱՍԱԿԱՆ ՀԱՅԵՐԷՆԸ

ԵՒ

# ՎԻԵՆՆԱԿԱՆ ՄԽԻԹԱՐԵԱՆ ԴՊՐՈՑԸ

ՊԱՏՄՈՒԹԻՒՆ ՀԱՅ ԴԱՍԱԿԱՆ ԼԵԶՈՒԻ ԶԱՐԳԱՑՄԱՆ, ԱՆԿՄԱՆ ԵՒ ՎԵՐԱԾՆՈՒՆԴԻ· ՀԱՆԴԵՐՁ ՀԱՄԱՌՕՏ ԱԿՆԱՐԿՈՎ Հ. ՅՈՎՍԷՓ ԳԱԹԸՐՃԵԱՆԻ ԿԵՆՍԱԳՐՈՒԹԵԱՆ (1820—1882) ԵՒ ՎԻԵՆՆԱՅԻ ՄԽԻԹԱՐԵԱՆ ԴՊՐՈՑԻ ԳՐԱԿԱՆ ԳՈՐԾՈՒՆԷՈՒԹԵԱՆ (1840—1854) ՎՐԱՅ

ԳՐԵՑ

**Հ. ՆԵՐՍԷՍ Վ. ԱԿԻՆԵԱՆ**

ՄԽԻԹԱՐԵԱՆ ՈՒԽՏԷՆ

ՎԻԵՆՆԱ

ՄԽԻԹԱՐԵԱՆ ՏՊԱՐԱՆ

1932

ԱՐՏԱՏՊՈՒԱԾ ՆՈՐ ԽՄԲԱԳՐՈՒԹԵԱՄԲ

“ՀԱՆԴԷՍ ԱՄՍՕՐԵԱՅ„

ՈՒՍՈՒՄՆԱԹԵՐԹԷՆ

1932, թ. 1—2 եւ 5—6

---

REVIDIERTER SONDERABDRUCK AUS

“HANDES AMSORYA„

MONATSSCHRIFT

FÜR ARMENISCHE PHILOLOGIE

1932, HEFT 1—2 UND 5—6

ՀԱՅ ԲԺՇԿԱԿԱՆՈՒԹԵԱՆ ՄԵԾ
ՌԱՀՎԻՐԱՅԻՆ

# Հ. ՅՈՎՍԷՓ Վ. ԳԱԹԸՐՃԵԱՆԻ

ԱՆՄՈՌԱՑ ՅԻՇԱՏԱԿԻՆ
ԱՌԹԻՒ ՄԱՀՈՒԱՆ 50 ԱՄԵԱՅ
ՏԱՐԵԴԱՐՁԻՆ
1882—1932

Կ'ԸՆԾԱՅԷ, ԿԸ ՆՈՒԻՐԷ, ԿԸ ՁՕՆԷ
ՅԱՐԳԱՆՔՈՎ ԵՒ ԵՐԱԽՏԱԳԻՏՈՒԹԵԱՄԲ

## “ՀԱՆԴԷՍ ԱՄՍՕՐԵԱՅ„Ի

ԽՄԲԱԳՐՈՒԹԻՒՆԸ

ՎԵՐՅԻՇԵՑՆԵԼՈՒ ՆՈՐ ՍԵՐՈՒՆԴԻՆ ԱՆՈՐ ԱԿՆԱՌՈՒ ՎԱՍՏԱԿՆԵՐԸ Ի ՆՊԱՍՏ ՀԱՅԵՐԷՆ ԴԱՍԱԿԱՆ ԼԵԶՈՒԻ, ՀԱՅ ԲԺՇԿԱԿԱՆՈՒԹԵԱՆ ԵՒ ՀԱՅՈՑ ՊԱՏՄՈՒԹԵԱՆ.

*Ան ապրեցաւ, գործեց ու փոխեցաւ յաւիտեանս բայց կը մնայ յիշատակը անմահ անուշակ իր գործերուն մէջ, երախտագէտ սրտերու մէջ:*

## ՄՈՒՏՔ

Կէս դար յառաջ՝ 1882, Յունուար 9ին հողի կը յանձնուէր ի Կ. Պոլիս Հ. Յովսէփ Գաթըրճեանի բազմատանջ մարմինը, որ 62 տարի շարունակ ընդունարանն էր եղած երկնաւոր քանքարին։

Յիսուն գարուններ բուսցուցին ծաղիկներ անոր շիրմին վրայ. ու թէպէտ աշնան հովերու հետ խամրեցան շուշանները, բայց մնաց անթառամ ամէն եղանակի մէջ յիշատակն անոր, որ եղած էր յարգողը երկնապարգեւ տաղանդին եւ իւր բեղուն գործունէութեամբը հանդիսացած էր բազմարդիւն վաստակաւոր հայրենի Բուրաստանին մէջ։

Ան փայլեցաւ իւր դարուն մէջ իբրեւ մեծ հայկաբան, խորաքնին պատմագիր, բանասէր մատենագիր եւ եղաւ ռահվիրայ բանասիրական ճանապարհին վրայ։ Հայ բանասիրութեան տաճարին ճակատը կը կրէ իւր վրայ ոսկի տառերով քանդակուած ԳԱԹԸՐՃԵԱՆ անունը։

Գաթըրճեան պայծառացաւ Վիեննայի Մխիթարեան Միաբանութեան համաստեղութեան մէջ ինչպէս լուսալիր աստղ, եւ ունի հոն իւր լոյսն անշէջ։ Կենդանի է իր յիշա-

տակը Մխիթարեան յարկիս ներքեւ, որովհետեւ անմահ կ'ապրին հոս իր գործերը· անոնք մշտադալար եւ հոտաւէտ կը պահեն իրենց թոյրն ու բոյրը, վասն զի ձգած են արմատներ մարգերու եւ եղտիւրներու մէջ:

Պիտի կոչեմ այսօր անոր ոգին, պիտի խօսիմ իրեն հետ, իր գործերու մէջ, անձնատուր իր տեսիլներուն: Ոչ միայն իբրեւ ազնիւ մարդ, ընտիր եկեղեցական, գիտուն անձնաւորութիւն սիրելի՛ է ինձ նա, այլ առաւելապէս իբրեւ գերազանց հայերէնագէտ ախորժելի է ինձ վայելել ժամեր անոր հետ:

Հարուստ է հայ երկնակամարը լուսաւորներով· անոնց թուին մէջ է Հ. Յ. Գաթըրճեան՝ իւր ուրոյն բոցովը, համապայծառ վառմամբը: Ան տեսանելի է այն ամէն երկնապիշ աչքերուն, որոնց բիբերը մաքուր են բիժերէ եւ աղտերէ:

Անոր լոյսին տակ փարատեցաւ հետախաղաղ խաւարն անդունդներու, փայլատակեց ոսկին իւր գոյնը դեղնաւուն, ձայն տուաւ լեզուն կենսազուրկ, եւ կենսուրախ ժպիտով ողջունեց աշխարհս յարուցեալը:

Հայ հ ո ւ մ ա ն ի ս տ ը պճնեցաւ ոսկեհուռ պատմուճանով, մտաւ շքաւոր իւր ոսկեդրուագ ապարանքը, ցնծացին սրահները ի լուր ոսկեհնչիւն բարբառին եւ ապրեցաւ հայ աշխարհն իւր ոսկի դարը միւսանգամ:

Հ. Ն. Ա.

# ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹԻՒՆ


| | Էջ |
|---|---|
| *Մուտք* ................................ | 7 |
| *Բովանդակութիւն* ........................ | 9 |
| Ա. ՀԱՅ ՄԱՏԵՆԱԳՐՈՒԹԵԱՆ ՈՍԿԵԴԱՐԸ .. | 11—54 |
| *Դասական հայերէնը* ...................... | 13 |
| *Դասական հայերէնին նկարագիրը* ...... | 28 |
| *Պատկեր դասական մատենագրութեան* .. | 38 |
| *Դասականին չորս դասերը* ............ | 49 |
| Բ. ՀԱՅ ՄԱՏԵՆԱԳՐՈՒԹԵԱՆ ԱՐԾԱԹԻ ԴԱՐԸ ............................ | 55—82 |
| *Յետ-դասական շրջանը* .................. | 56 |
| *Հռովմէական Հայաստանի դպրոցը* ...... | 59 |
| *Երուսաղէմեան դպրոցը* ................ | 69 |
| *Հայաստանի դպրոցը* .................... | 73 |
| *Բարգէն Կաթողիկոսի Բ. Թուղթը* ...... | 76 |
| Գ. ՀԱՅ ՄԱՏԵՆԱԳՐՈՒԹԵԱՆ ՊՂՆՁԻ ԴԱՐԸ | 83—120 |
| *Յունաբան դպրոցը* ...................... | 85 |
| Դ. ՀԱՅԵՐԷՆ ԼԵԶՈՒԻ ԸՆԹԱՑՔԸ 450—1850 | 121—136 |
| *Վարքեր եւ վէպեր* ...................... | 123 |
| *Ս. Ղազարի Մխիթարեան Դպրոցը* .... | 130 |
| Ե. ԴԱՍԱԿԱՆ ՀԱՅԵՐԷՆԻ ՎԵՐԱԾՆՈՒՆԴԸ .. | 137—188 |
| *Վիեննայի Մխիթարեան Դպրոցը* ...... | 139 |
| *Դասական հայերէնի վարդապետութիւնը* | 148 |
| *Մրցութեան ասպարէզի վրայ* .......... | 154 |
| Զ. Հ. ՅՈՎՍԷՓ ԳԱԹԸՐՃԵԱՆ. ԿԵԱՆՔՆ ԵՒ ԳՐԱԿԱՆ ԳՈՐԾՈՒՆԷՈՒԹԻՒՆԸ ...... | 189—274 |
| *Կեանքը* ................................ | 191 |

Էջ

Գործունէութիւնը — Իբրեւ թարգմանիչ ... 211
Իբրեւ հեղինակ .. 244
Իբրեւ բանաստեղծ ... 271

Է. ՎԻԵՆՆԱՅԻ ՄԽԻԹԱՐԵԱՆ ԴՊՐՈՑԸ .... 275—365
Հ. Յ. Գաթըրճեանի ուսումնականները .. 277
Հ. Մ. Գարագաշեան .................. 278
Գարագաշեան իբրեւ բանաստեղծ ...... 299
Հ. Ղեւոնդ Յովնանեան .............. 313
Հ. Ղուկաս Տէրտէրեան .............. 315
Հ. Թէոդորէ Սպէնեան .............. 318
Հ. Փիլիպպոս Ճամճեան .............. 322
Հ. Սրապիոն Էմինեան .............. 343
Հ. Եփրեմ Ջագըճեան .............. 347
Հ. Արսէն Այտընեան .............. 351
Հ. Սամուէլ Գաթըրճեան .............. 357
Հրաժեշտի խօսք .............. 363

Resumé .............................. 365—387

ԴԱՍԱԿԱՆ ՀԱՅԵՐԷՆԸ

*Հայկական նշանագիրներու գիւտովը (407) սկիզբ առաւ հայ գրաւոր մատենագրութիւնը :*

*Որովհետեւ գիրը հնարելու եւ մայրենի լեզուով գրականութիւն ստեղծելու գլխաւոր դրդապատճառն եղաւ հայ ժողովրդեան՝ յատկապէս գաւառներու մէջ քրիստոնէական քարոզութիւնը դիւրացնելու հոգը, պէտք է ի յառաջագունէ ընդունիլ, թէ երանելին Մաշտոց ա՛յն բարբառն ընտրեց մատենագրութեան լեզու, որ ամէն գաւառի առ հասարակ հասկնալի էր, նաեւ ծայրագաւառներուն, ինչպէս Գողթնիքի եւ Սիւնիքի :*

*Թէ գոյութիւն ունէ՛ր հայ հողին վրայ ամէնուն դիւրընկալ բարբառ մը, կարելի չէ կասկածի ենթարկել. բայց դժուար է ըսել ստուգութեամբ, թէ ո՞ր միջավայրի մէջ զարգացած էր անիկա : Յամենայն դէպս Մաշտոց, ինչպէս Կորիւնի լռութենէն կարելի է հետեւցնել, դժուարութեան չբախեցաւ այս ընտրութիւնն ընելու ժամանակ : Նաեւ այն պարագան, որ Տարօնեցի Վարդապետը առաքելական քարոզութեամբ կը*

*գործէ Այրարատի մէջ, կը հասնի Գողթն, կը շրջի Սիւնիք եւ ամէն տեղ ընդունելութիւն կը գտնեն իր խօսքերը, կը վկայէ թէ կար միջազգային բարբառ մը, որ իր քերականութեամբն եւ բառամթերքովը դիւրալուր էր եւ հեշտընկալ ինչպէս մերձաւորներուն նոյնպէս հեռաւորներուն:*

*Անշուշտ այս ամէնուն դիւրամատոյց բարբառը ոչ յանկարծ ելած էր հրապարակ եւ ոչ ալ արուեստով յարմարցուած յերիւրուած: Հին ժամանակներու մէջ պէտք է փնտռել անոր խանձարուրքը եւ դարերու ընթացքին մէջ աճումն եւ զարգացումը:*

*Բարեբախտութիւն էր, որ հայ մատենագրութեան սկզբնաւորութիւնը կ'իյնար ժամանակ մը, երբ կանգուն էր դեռ հայ թագաւորութիւնը եւ նահանգներն ու գաւառները կ'ապրէին կեդրոնին հետ հաշտ եւ հաւան. ասով ինչպէս քաղաքական նոյնպէս քաղաքակրթական կեանքը կը դեկավարուէր միջնաշխարհէն, ուսկից կը ծծէր նաեւ լեզուն իւր նիւթն ու հիւթը: Բարբառներու զանազանութիւնը, որ կար անշուշտ, կեդրոնին հետ սերտ հաղորդակցութեամբ կ'ամոքուէր. եւ ուսկից պետական հրահանգները կը բղխէին եւ քաղաքակրթական շարժումը մղում կը ստանար, անկէ նաեւ գաւառներուն բաժին կը հասնէր:*

*Հարկ է մշակոյթի որոշ բարձրութեան*

վրայ մտածել միջնաշխարհը, ուր հինաւուրց արքայական տուն մը կ'իշխէր՝ թէպէտ մէտ ի մահ, բայց հարուստ՝ փառաւոր անցեալի աւանդութիւններով. ուր յաճախ աշխարհաժողով կայուրդներ կը խմբուէին, ուր թատերասրահները կը հիւրընկալէին նախարարակոյտ եւ ազատախումբ բազմութիւնը, գուսանները կը գեղգեղէին, բանիբուն ճարտարախօսները կ'որոտային, ու վիպասանները քաջանց դրուատիքն կը հիւսէին, հին զրոյցներով ամբոխը կը զուարճացնէին: Հոն էր նաեւ Հայրապետանոցը, որուն դահլիճները կ'ընդունէին սրբազան եպիսկոպոսները, տաճարները՝ քրիստոնեայ հաւատացեալները, հռետորները Աստուծոյ խօսքով կը հրավառէին հաւատացելոց սրտերը եւ սաղմոսերգութիւններով կը թնդար տաճարներու գմբէթը: Թէ հոս եւ թէ հոն հասարակաց կիրթ բարբառ մը հարկ է որ բաւականութիւն տար ամէնուն, մէկ հայերէնախօս լեզու հնչէր թէ՛ քաղաքացւոյն եւ թէ՛ շինականին, թէ՛ ազատորեարին եւ թէ՛ ռամկին ականջը:

Ինչպէս քրիստոնէական, նոյնպէս հեթանոս դարերուն նոյն էր պատկերը: Նաեւ Վահագնի մեհեանին մէջ յԱշտիշատ եւ Անահտական ոսկեձոյլ արձանին առջեւ յԵրիզա խուռներամ պաշտօնատար ընծայաբեր կ'ըլլար հայ ժողովուրդը, եւ նոյն կայուրդներուն բազորդ եւ բաժանորդ՝ հայերէնա-

շուրթն եւ հայերէնաբարբառ կ՚արտայայտուէր:

Մեհեաններու մէջ երգուած դից օրհներգութիւնները, կացուրդներու մէջ նուագուած գիւղազանց երգերը, հարսանեաց ատեն հիւսուած գովքերը շրջան կ՚ընէին ապա քաղաքէ քաղաք, բերնէ բերան եւ կը յանձնուէին շինականին յուանդ: Անոնք հասարակաց ստացուածքը կը նկատուէին, որովհետեւ իմանալի էին ե՛ւ քաղաքացւոյն ե՛ւ գիւղացւոյն: Եւ զարմանալի չէ, եթէ այն հին երգերը, երբ անոնք քաղաքներու մէջ կանուխ ժամանակներ արդէն մոռացութեան կը մատնուէին, դարեր յետոյ հայ շինականին բերանը լսելի ըլլան ի Գողթն եւ ի Բջնի, նոյն անվթար հարազատութեամբ, անխառն հնչիւնով, ինչպէս յօրինուած էին Քրիստոսէ դար մը յառաջ: «Զհրեանց երգս առասպելաց գիսպասանութեան սիրեցեալք ի վայթ կրթութեանցն եւ նմին հաւատացեալք եւ ի նոյն հանապազորդեալք», կը վկայէ պատմագիրը [1]:

Անոնք թէպէտ ոչ մէ՛կ ժամանակի մէջ եւ ոչ ալ մէ՛կ հեղինակէ երգուած էին, բայց մէ՛կ էր բարբառը ամէն ժամանակի համար, որովհետեւ մէ՛կ ժողովուրդի ծոցի ծնունդներն էին, հարազատ եւ սիրուն [2]:

---

[1] Փ. Բուզ. Գ. 13:

[2] «Աս բանաստեղծներն որոշեալ դասակ մը փառքը չեն, մինակ տոհմի մը պարծանքներուն քարոզը չեն, իրենց երգը Հայաստանի զանազան կողմէ հեռու տեղերու եւ տոհմերու յիշատակներն ունի, եւ

Այն հատորակաց գլուընկալ բառբառը, զոր կը կիրարկէին գուսաններն ու վիպասանները, ինչպէս մեզի հասած Հին Երգերու հատուածները ցոյց կու տան, ի վաղուց արդէն զարգացած աստիճանի վրայ կը գտնուէր: Մաշտոց որդեգրեց զայն իբրեւ գրական լեզու եւ իւր աշակերտները խօսեցան անով իրենց թէ՛ թարգմանական եւ թէ՛ ինքնուրոյն աշխատասիրութիւններու մէջ. անո՛վ թարգմանուեցան Հին եւ Նոր Կտակարանները, ա՛յն լեզուով յօրինուեցաւ Ընդհէմ աղանդոց ալկի մատեանը:

Եթէ թարգմանութիւններուս նպատակն էր Աստուծոյ խօսքը անսեթեւեթ լեզուով ժողովրդեան մատչելի դարձնել, պէտի հետեւցնենք թէ ընտրուած բառբառը ժողովրդական էր, եւ միակ յարմարը նկատուած՝ ընդհանուրէն հասկնալի ըլլալու համար: Ի հարկէ գրաւորին ճշգրիտ իմացման համար, երբ մանաւանդ նիւթը խորհրդախառն, վարդապետական էր, պէտի պահանջուէր ընթերցողէն որոշ աստիճանի վրայ զարգացում. կրթուածը պէտի հասկնար աւելի պայծառ, եւ նուազ զարգացածը նուազ պայծառ. այս ամէն ժամանակի եւ ամէն լեզուի համար արդէն ընդհանուր օրէնք է:

Հնագոյն գուսանական եւ վիպասանական

---

առով ազգային միութեան զարգացումը զանազան հայ ցեղերու մէջ պահելու մէկին է»: Հ. Յ. Գաթըրճեան, Պատմութիւն մատենագրութեան Հայոց, Ա. էջ 23:

անգիր գրականութեան մէջ կիրարկուած հայերէնը նոյնութեամբ երեւան կու գայ Ե. դարու գրական հայերէնի մէջ. հնոյն եւ նորին այս նոյնութիւնը յայտնապէս ցոյց կու տայ երկուքին արենակցութիւնը. քերականութիւնը նոյն է ըստ ամենայնի հոն եւ հոս. հոս ճոխագոյն է միայն բառամթերքը: Մինչ հին Երգերը յօրինուած են բնիկ հայ բառերով, գրական հայերէնը կը մատնէ իր կրասերութիւնը պարթեւերէնէ, նաեւ յունարէնէ, լատիներէնէ եւ ասորերէնէ փոխառեալ տարրներով. տարրներ, զորոնք ոչ թէ գրական լեզուն ինքնին մուրացածոյ փոխ առած էր օտարներէն Ե. դարուն, այլ ժողովուրդն անձամբ մուտ շնորհած էր անոնց իր լեզուին մէջ յընթացս այն դարերու, որոնք կը կանխեն Ե. դարը: Ինչ որ սեպհականուած, սատ նուիրագործուած էր իբրեւ հայ լեզուի բաղկացուցիչ մաս, ժառանգած էր գրաւորը անխտիր՝ հին լեզուին բառամթերքին հետ: Նա գիտցաւ առանց վնաս հասցնելու լեզուին հայեցի նկարագրին՝ հաշտեցնել հինը նորին հետ եւ այսպէս երեւան բերել ճոխ, միանգամայն ուժեղ բարբառ մը, որ ռամկին դիւրալուր եւ ազատին հաճելի ըլլար:

Թէ՛ անգիր եւ թէ՛ գրաւոր բարբառները հաւասար կատարելութեամբ կը փայլեցնեն իրենց վրայ քաղաքակրթուած, բարգաւաճած լեզուի բոլոր յատկանիշները, կանոնաւոր եւ ճոխ քերականութեամբ, հարուստ

բառամթերքով, մոքերը վայելչօրէն արտայայտելու եւ գունագեղ պատկերներ յօրինելու ճկունութեամբ: Կայ հոն առատ առատաղձ կառուցանելու հրաշակերտներ, եթէ գիտնայ արուեստագէտ ձեռքը շահագործել ու ձեռն պատրաստական շինանիւթը, զանգել շաղախը հայ արիւնով, դասել պատշաճեցնել աղիւսները հայ ճաշակով եւ զգեցնել շինուածքին հայ քիմքին հաճելի քանդակազարդեր: Եւ ունեցանք արդեամբք ալ հայ Մատենագրութիւնը իր հմուտ արուեստագէտները հայ արուեստով բարձրացնելու տոհմային գրականութեան մեծակառոյց շէնքը. անոնք Սահակի եւ Մաշտոցի աշակերտներն էին, որոնք ուսած կանխաւ հայ ժողովրդական գուսաններու արուեստանոցի մէջ՝ մեծ ուսուցիչներու առաջնորդութեամբ ձեռք զարկին Ե. դարու սեմոց վրայ կառուցանել հայ մատենագրութեան գեղեցկակերտ եւ հոյակապ տաճարը: «Մատենագրութեան Ոսկի դարուն սկիզբն լինէր, կը գրէ Թոռնեան[3], յառաջին ամս անդ դարուն հինգերորդի՝ խակ եւ խակ ընդ գիւտի հայերէն նշանագրաց. կամ թէ՝ նոյն լեզու ոսկեղէն, որ ի բազում ազգաց կարգեալ գայր ի Հայաստան աշխարհի, յայնժամ ուրեմն արկաւ ընդ գրով. քանզի անհնարին խակ է թէ որ ցայն վայր չէրն լեզու

[3] Հ. Թ. Թոռնեան՝ Հատընտիր ընթերցուածք ի Մատենագրութեանց նախնեաց. Հտր. Ա: Վիեննա 1866, էջ *12—13:

գեղեցիկ եւ գարգարուն եւ կատարեալ, յորժամ առինն մատենագրել՝ յայնժամ յանկարծ լեալ իցէ նոյնպիսի: Սմին վկայ հաւատարիմ կան ցայժմ երգք ժամանակաց Հեթանոսութեան, յօրինեալք յառաջ քան զսկիզբն մատենագրութեան, զորոց զլեզու գտանեմք ամենայնիւ իսկ միաբան եւ նման լեզուի Ոսկիդարու: Դարձեալ եւ մեծ իմն եւ յայտնական ընծայութիւն է ասացելոցս՝ եւ այն նմանութիւն լեզուի առ հասարակ յամենայն ի գիրս առաջնոց նախնեաց, թէպէտ բուն իսկ հայ Գրչաց արգասիք իցեն, որպէս Եզնկայ, թէպէտ թարգմանութիւնք ի յունէն կամ յասորւոյն, որպիսի ինչ՝ մեծ կէս մասն յայնժամու գրոց մերոց. յորս կանոնք եւ դարձուածք յունականք՝ գտանին ի սեպհական հայ կանոնս եւ ի դարձուածս Հայերէնս շրջեալ»:

Եւ այլապէս ալ կարելի չէ մեկնել լեզուի այն միութիւնը որ կը տեսնուի Ե. դարու հայ Մատենագրութեան մէջ, զանազան գրիչներու տակ. Տարօնեցին, Կողբացին, Պարպացին, Վանանդացին... կը գրեն մի եւ նոյն քերականութեամբ, մի եւ նոյն համաձայնութեամբ, մի եւ նոյն բառամթերքով եւ լեզուագիտական զարգացման նոյն աստիճանին վրայ, բարձր, վսեմ, ամենայնիւ կատարեալ ոճով, առանց այժ հացներու անհատականին քիմքին՝ արտայայտուելու առանձնայատուկ ճաշակով: Այս պատութիւնը անրնա-

բարելի է · եւ ա՛յս է որ պիտի տայ լեզուի եւ ոճի միօրինակութեան երանգ, ձայներու բազմազանութեան ներդաշնակութիւն:

Թարգմանիչները, որովհետեւ ժողովուրդը միշտ նկատի ունէին, որուն ծոցէն ելած՝ կրկին անոր ծոցը պիտի դառնային, այս պատճառաւ ալ չգեղծան իրենց ազատութեամբը, չշեղեցան ոսկի կանոնէն՝ սանձարձակ, ապաստան քմայարդ ճաշակի · այլ խօսեցան ժողովրդեան՝ միշտ անոր հասկանալի ըլլալու ջանքով · վսեմ էր անոնց արտայայտութիւնը, խառն ազնուական վայելչութեամբ, բարձր էր անոնց ձայնը, բայց միանգամայն ցածուն հնչականութեամբ եղանակաւորուած · բաներու յորդառատ հնչիւններն եւ չարադասութեան դարձդարձիկ ձեւերը, որոնք նախադասութիւններուն վայելչութիւն եւ կորով պիտի պարգեւէին, համեմատ էին նիւթին: Ուր աւետարանական վարդապետութիւնը պարզամիտ ժողովրդեան պիտի ներկայացնէին, հոն պարզախօս էին, զգաստ եւ գիւրամատոյց · եւ ուր կրօնի բարձր վարդապետութիւնը եկեղեցական կրթուած դասին պիտի բարբառէին, հոն մրցակից գեր ի վերոյ յոյն բանիբուններուն:

«Հիմակուան հայկաբանութեան փորձն եղած է, կը գրէ Այտընեան, ցուցնել՝ որ ատոնց մեծ մասը թէեւ հայերէն լեզուին բուն եւ բնական գեղեցկութեանն ու կենդանութեանը մէջ ծնած ու սնած, բայց եւ այնպէս

*չէ թէ ունակարար կամ լոկ վարժութեամբ մը ստացուած ընտանի լեզուն կը գրէին անխտիր, այլ առանձինն ջանիւ եւ խնամով երեւցուցած են մեծ արուեստական նրբու-թեամբ, բառերու ընտրութեան, նոյնանշան-ներու պէսպիսութեան, կարգի եւ ձեւոց զա-նազանութեան մասդրութիւն, այլ եւ այլ լե-զուաց թարգմանութեան մէջ լեզուի յատ-կութիւններն որոշել, յարգել, եւ այլն. — որոնց ոչ իրենց անմիջական յաջորդները կրցած են հասնիլ, եւ ոչ յետնագոյն (է.— ԺԲ.) դարուց առաջին կարգի հանճարները մօտենալ. եւ ընդունայն եղած է նոյն ա-րուեստին գաղտնիքը թափանցելու ջանքը» (Բննական Քեր. 52)։*

*Առաւելութիւնը, զոր ունէին գրչի նոր ձեռք զարնող հայ հեղինակները, այն էր, որ իրենք ոչ թէ սեպհական մտքեր յօրինելու կոչուած էին, այլ արդէն չափուած ու ձեւուած մտքերու թարգմանները կ'ըլլային։ Աշխատութեան խնայութիւնը յաճախեց ա-նոնց ջանքերուն արդիւնաբերութիւնը։*

*Անոնք անձուկ իմաստով թարգմանիչներ չէն, այլ պարզապէս օտար մտքերու հայե-րէնախօս թարգմանները։ Հմուտ սեպհական լեզուին տարրներուն, հաւատարիմ հայ ճա-շակին նուրբ զգածումներուն՝ կը փոխարկեն հայերէնի օտարին խորհուրդները՝ նախ իւրացնելով զանոնք, մանր որոճալով անոնց իմաստն եւ ապա հայերէնաբարբառ գրի առ-*

ներով: Այնուհետեւ ոչ թէ յոյն Ոսկերերան մըն էր կամ Սեբերիանոս, կամ Բարսեղ, որ կը խօսէին հայ ականջներուն, այլ հայերէնաշուրթն հեղինակներն էին որ կը բարբառէին հայ գրով: Որչափ հաւատարիմ են սկզբնագրին Ս. Գրոց թարգմանութեան մէջ, առանց սակայն մեղանչելու տոհմային լեզուին նկարագրին, նոյնչափ ազատ ընթացած են յոյն եւ ասորի Ս. Հայրերու թարգմանութեան մէջ: Այս ազատութեամբ ահա ստեղծուած է ինքնուրոյն հայ գրականութիւն, ուր բանաստեղծը, հռետորն եւ աստուածախօսն ունին ասպարէզ արտայայտուելու սեպհական զգածումներով, խորհելու ինքնայատուկ եղանակով եւ իւրուրոյն ոճով, ազատ անկաշկանդ ամենեւին օտարին լուծէն: Քաջ հմուտ մը զարուս մատենագրութեան կը գրէ այս տեսակէտով. «Զթարգմանութիւնս նոցա ի նիւթս գեղեցիկ ուսմանց ամենեւին ազնուական եւ ընտիր արժան է համարել, բանք յայնպիսի նիւթս սեպհականք, վայելուչք եւ յոյժ պատշաճականք, եւ ոչ ինչ խոտորումն յօրինաց եւ ի ճաշակէ հայ լեզուի կամ յունական դարձուածք. այլ ի փիլիսոփայականս եւ յուսմունս գիտութեան ուրեք ուրեք ոչ այնչափ ճշգրիտ: Զթարգմանութիւնս սոցա եթէ՛ վասն յստակութեան լեզուին եւ ազնուութեան եւ լիութեան ասացուածոց, եւ եթէ՛ վասն հաւատարիմ միանգամայն եւ անեղծն եւ անապական թարգմանութեան,

ըստ ամենեցուն վկայութեան մարթ է օրինակս առաջի դնել ճարտար թարգմանութեան. բայց ի սակաւուց ոմանց որ բանաստեղծական ազատութեամբ մոռանան իմն զբնագիրսն, չառ համարեալ զմիտս օրինակացն ընծայեցուցանել, զոր եւ յայլոց ազգաց թարգմանիչս ուրեք ուրեք է տեսանել [4]»:

Թարգմանական գրականութիւնս այն տեսակէտով ալ առաւելութիւն ունի, որ կ՚ընծայէ մեզի հնարաւորութիւնը համեմատելու բնագիրները սկզբնագիրներու հետ եւ թէ՛ թարգմանութեան արուեստին վրայ դարմանալու եւ թէ՛ վերահաստ ըլլալու դասական լեզուի բառերու ճշգրիտ իմաստին, որոնք այլուստ անծանօթ պիտի մնային: Շատ բառեր յընթացս ժամանակի կորսնցուցած են իրենց հարազատ նշանակութիւնը, եւ ուրիշներ դարձեալ անհետ եղած կենդանի բարբառին մէջ. հարազատին խելամուտ ըլլալու եւ ապաւաղութիւնները ստուգելու եւ կորսուած բառերուն իմաստ տալու համար նպատակայարմարագոյն ձեռնտու են ահա յոյն եւ ասորի սկզբնագիրները: Հ. Յ. Գաթըրճեան եւ Հ. Մ. Գարագաշեան, որոնք այնքան խնամով ուսումնասիրած են դասական բնագիրները, կը հաստատեն մեր խօսքերը. «Մեծ մասն գործոց սոցա թարգմանութիւնք են,

[4] Հ. Մ. Գարագաշեան՝ Նկարագիր ուսմանց, էջ 29—30:

որ յօգուտ մեծ եղեւ, զի ի սակաւ ժամանակի բազում մատեանք սփռեցան, եւ մեզ յետնոց նպաստամատոյց են յուսանել բարւոք զհայ բարբառ ի ձեռն համեմատութեան յունական օրինակաց, որով բազում իրաց կարեւորաց առնիմք տեղեկս, եւ զբազում վրիպածս եւ զայլայլութիւն յետնոց, որ ի ժամանակս ժամանակս ի լեզու այսր սպրդեալ իցեն, ուղղել ձեռնհաս լինիմք[5]»: Ասոր վրայ կ'աւելցնէ Հ. Գաթրրճեան[6]. «Առ կատարեալ խելամտութիւն ամենայն անուանց եւ ասացուածոց եւ ոգւոյ լեզուին՝ անվրէպ իմն կարեւոր է համեմատել զայն լեզու ի թարգմանութիւնս անդ ընդ բնագրին, վասն ի վերայ հասանելոյ զաղտնեաց հայերէն լեզուի, եւ այնպէս տիրելոյ իմն նախնական հանգամանաց նորա: Նմին իրի եթէ ի միոջէ կուսէ ի դէպ իսկ էր ընդ այն աշխարել՝ զի մեծ մասն գրոց ոսկի դարուն մերոյ թարգմանութիւնք ի լեզուաց օտարաց են, նմին հակառակ յայլմէ կուսէ բախտաւորս պարտ է համարել զրանաւէրս մեր՝ զի ի ձեռն համեմատութեան թարգմանութեանցն այնոցիկ մարթեն միջամուխ ի ներքին ծածուկս եւ ի հնութիւնս լեզուին մերոյ լինել»:

Գործին գլուխը կանգնած էին Սահակ

---

[5] Հ. Մ. Գարագաշեան, Նկարագիր ուսմանց, էջ 28:

[6] Քաղուածոյք ի թարգմանութեանց նախնեաց, էջ Ը—Թ:

*Հայրապետ եւ Մաշտոց վարդապետ: Աշխատեցան անոնք մեծ արագութեամբ ծաւալցնել Հայաստան ոչ միայն Արեւելքի, այլ եւ Արեւմուտքի գիտութիւնը: «Կը զարմանայ մարդ թէ ինչպէս համեմատութեամբ քիչ ատենուան մէջ այնչափ մթերք ժողվեցան երկիր մը, ուր քիչ մ'առաջ գիր չկար*[7]»:

*Ոչ առանց մանաւոր յատակագծի ձեռնարկուած էր այս կարեւոր աշխատութեան: Եթէ նկատի առնենք տարուած գործը, պիտի նշմարենք մեծ ուսուցիչներու ձեռքը յատուկ յատակագիծ մը, որուն պատկերն է մօտաւորապէս հետեւեալը.*

1. Գրականք (biblica). *պէտք էր նախ թարգմանել հայերէնի Ս. Գիրքը, որ հիմը պիտի կազմէր քրիստոնէական քարոզութիւններու:*

*Ասոր հետ միաժամանակ տալ ժողովրդեան, յատկապէս եկեղեցականութեան՝ Ս. Գրոց ճշգրիտ իմացման համար՝*

2. Մեկնողականք (hermeneutica), *այսինքն Ս. Հարց մեկնողական գրութիւնները:*

3. Հայրաբանականք (patristica), *թէ ասորական եւ թէ յունական Հայրերու վարդապետական եւ բարոյագիտական գրուածները:*

4. Կանոնականք (canonica), *եկեղեցական*

---

[7] *Հ. Ց. Գաթըրճեան՝ Սրբ. Պատարագամատոյցք,* էջ 79—80:

ժողովներու եւ մասնաւոր հայրերու սահմանած եկեղեցական կանոնները։

5. Նուիրագործականք եւ Ծիսականք (liturgica), Ս. Պատարագամատոյց մը եւ Մաշտոցի մասերը։

6. Վկայաբանականք (martyrologica), սուրբերու եւ վկաներու գործերը, որոնք պիտի ներկայացնէին ժողովրդեան կրօնի արի նահատակները, վառելու զանոնք անոնց կրօնասիրութեամբ եւ աստուածսիրութեամբ։

7. Պատմականք (historica), որոնք խելամուտ պիտի պահէին հայ ժողովուրդը աշխարհական եւ եկեղեցական պատմութեան գլխաւոր անցքերուն։

Յատուկ իմաստով փիլիսոփայական գրութիւնները, ինչպէս են Արիստոտելի, Պղատոնի փիլիսոփայական երկասիրութիւնները, նոյնպէս գեղեցիկ գրականութիւնը՝ հեթանոս բանաստեղծներու երկերը, չեն հետաքրքրած թարգմանիչները, թէեւ մաքառած են հելլէն փիլիսոփաներու տեսութիւններու դէմ (հմմտ. Եզնիկ)։ Այս պակասը ուզած են լրացնել քրիստոնեայ ջատագովներու թարգմանութեամբ, որոնց թուին մէջ են Մեթոդիոս, Հիպողիտոս եւն։

Շատ բան հասած է մեզի այս թարգմանութիւններէն՝ ծանօթ արդէն տպագրութեամբ. բայց կայ մաս մ'ալ դեռ անտիպ եւ ուրիշ մեծ մաս մ'ալ ի սպառ կորսուած։ Ոչ միայն հարկ անհրաժեշտ է որ յառաջ լոյս հանել

*հայ ոսկեղէն մատենագրութեան մնացորդները Մատենադարաններու ծանօթ եւ անծանօթ խորշերէն, այլ եւ կարեւոր է մանր ուսումնասիրել արդէն հրատարակուածները մանրակրկիտ բաղդատութեամբ ձեռագիրներու եւ յոյն եւ ասորի սկզբնագիրներու հետ եւ այսպէս սրբել մաքրել դարերու աղճատումներէ :*

## ԴԱՍԱԿԱՆ ՀԱՅԵՐԷՆԻ ՆԿԱՐԱԳԻՐԸ

*Չի կրնար մարդ ըստ բաւականի հիանալ լեզուի այն բարձրութեան, գեղեցկութեան եւ կանոնաւորութեան վրայ, որով երեւան կու գայ հայերէնը Ե· դարու այս դասական մատենագրութեան մէջ։*

*Ամէն առաւելութիւն, որ կը պահանջուի դասական լեզուէ մը, գերագոյն կատարելութեամբ կը փայլի անոր վրայ· կանոնաւորութիւն, յստակութիւն, վայելչութիւն, վսեմութիւն, հնչականութիւն: Քերականութիւնը իւր հաստատուն, տրամաբանական օրէնքներով՝ ճոխ է եւ բազմաձեւ· հարուստ է բառապաշարը՝ հոմանիշներով, բարդաձեւերով· դիւրամէտ է կազմուածքը բայերու կերպ կերպ խնդրառութիւններով եւ առատութեամբ նախադիրներու· համաձայնութիւնը կանոնաւորութեամբ հանդերձ՝ ազատաձեռն, ընդունակ ճկուն դարձուածքներու, դիւրութեամբ մտքեր եւ սրտի շարժումներ արտայայտելու· Կ'իշխէ արտայայտութեան*

մէջ պերճութիւն եւ գգօնութիւն, հոսանքին մէջ մեղմութիւն եւ սաստկութիւն, ընթացքին մէջ մեղմական գնացք, արագութիւն եւ թռիչք միանգամայն:

Ըմբռնելու համար դասական մատենագրական լեզուի առաւելութիւնները պէտք է ապրիլ անոր մէջ. եւ նկարագրելու համար անոր գեղեցկութիւնը հարկ է նախ զգալ դասականին ճաշակը: Դասականին գոյնն ու երանգները նկարագրելու համար թոյլ կուտամ ինծ խօսքն անոր առաջարկել, որ երկար տարիներ վայելած է դասական մատենագրութեանս մէջ եւ այսպէս ամէնէն աւելի խորագոյնս թափանցած անոր առանձնայատկութիւններուն. խօսքը Հ. Մ. Գարագաշեանին[8] է. «Պայման ոճոյ սոցա, եթէ իբրեւ գեղեցիկ ուսումն նկատեսցուք, մարթ է ասել թէ կատարեալ է, ի պատմականս, ի վարդապետականս, ի վիպասանականս եւ յամենայն իսկ ազգս նիւթոց ճարտարախօսութեան քաջ զուգի ընդ այլոց վարեալ եւ զգեցեալ լեզուաց հնոց, յունականին եւ հռովմէականին եւս: Կանոնք օրինաւոր զպրութեան անվրէպ նշմարին ի գիրս նոցա, բանք եւ բարբառք հոյակապք, ընտիրք, անեղծք եւ բուն հայկականք, ամենայն փոփոխմունք անուանց եւ խոնարհմունք բանից միակերպ. վերադիրս (ածականք) բնականք եւ ճշգրիւ

[8] Նկարագիր ուսմանց, էջ 28:

յայտարարք զօրութեան եւ մտաց դոյականաց, ոչ ի քմաց հնարեալք եւ յօդեալք. նկարագիրք հզօրք, քաղցունք, յորդք եւ պերճք. կարգ յստակ եւ դիւրիմաց. ստացուածք դեղեցիկք, ոչ բռնադրօսեալք եւ ոչ կարի ճարտարամտեալք. զարդք վայելուչք, եւ ոչ սոփեստականք. եւ միանգամայն իսկ ասել յամենայն գործս նոցա արուական իմն ճարտարախօսութեան կերպարանք երեւին:

«Զարմանալի է տեսանել ի Թարգմանութեան Ոսկեբերանի, Գրոնիկոնին Եւսեբեայ, Սեբերիանու եւ ի գիրս քաջին Եզնկայ, զայնչափ բարձրութիւն խօսից եւ սեպհական յստակութիւնս, ի Թարգմանութիւնս Ագաթանգեղեայ, Բուզանդայ, Մեկնութեան Ոսկեբերանի ի Յովհաննէս, Բարսղի եւ ի գործս Կորեանն զանհնարին առատութիւն եւ զհոյակապ զարդարանս բանից, որ ոչ արկանին ձանձրոյթ ի լսօղսն»:

Միակ թերութիւնը, որ կը նշմարուի հոն, իմաստասիրական մտքեր արտայայտելու անվարժութիւնն է: Փիլիսոփայական ուսումները, ինչպէս բնական է մտածել, չէին կրնար զարգացում գտնել աշխարհի մը մէջ, ուր չկար գիր եւ գրականութիւն: Լեզուն, որ գուսաններու, վիպասաններու, թերեւս նաեւ հռետորներու եւ եկեղեցւոյ քարոզիչներու բերնին մէջ իր բարգաւաճանքը գտած էր, հեռու ճեմականներէ եւ ճեմարաններէ, չէր կրնար ունենալ իր ծոցը

բառեր, որոնք կարենային անդրադարձնել ճշգրիտ տրամաբանական եւ բնազանցական արտայայտութիւններ: Թարգմանիչները անշուշտ չուարեցան ի սկզբան, երբ բախեցան յոյն չափուած ձեւուած մտքերն հայացնելու այս դժուարութեան. գիտցան սակայն ճարտարութեամբ հայացնել զանոնք, եթէ ոչ նոյն ճշգրտութեամբ, գոնէ մերձաւոր միտքը յայտնելով: Այլազգ ալ անիմանալի պիտի մնային եթէ կերտէին արուեստական բառեր, քանի անոնք իմաստասիրութեան անծանօթ ժողովրդենէն պիտի կարդացուէին: Չէր հասունցած դեռ ժամանակը լրջօրէն իմաստասիրական հրահանգներով պարապելու. վաղաժամ էր իմաստասիրական արտայայտութիւններուն լեզուի սեպհական պաշարէն բառեր յատկացնելու եւ կամ նոր բարդութիւններով բառեր պատշաճեցնելու: Պէտք էր սպասել որ հասուն հասակի հասնէր երիտասարդ մատենագրութիւնը եւ այնպէս խօսք տանէր բարձրագոյն գիտութիւններու մասին: Դժբախտաբար դասական մատենագրութիւնը չապրեցաւ իր կատարեալ տարիքը: Դեռ նոր էր ոտք կոխած այս հասակը Եզնիկ երբ լռեց: Այս միտքը կ'արտայայտէ նաեւ Գարագաշեան երբ կը գրէ շարունակելով իր խօսքը. «Բայց բազում ուրեք ի սոսա, մանաւանդ յոմանս, փիլիսոփայական ճշգութիւն անուանց, մեկին եւ որիշ յայտարարութիւնք սակաւ են. մարթ է ասել թէ այս

միայն է թերակատարութիւն նշմարել յոհ ժամանակիս այսօրիկ, որ յայլոց կուսաց քան զամենայն ժամանակաց ոճս նախամեծար եւ ազնուագոյն է, որպէս վկայեալ է յամենեցունց: Արդարեւ այս թերակատարութիւն, որ ի չլինելոյ յայնժամ տակաւին լեզուին ծաղկեալ յուսմունս գիտութեանց ծագէ, ի նիւթս գեղեցիկ ուսմանց չէ ինչ բիծ. բայց ի փիլիսոփայականս եւ ի ճիշդ ուսումնականս ոչ բիծ միայն է, այլ եւ խոչընդոտն մեծ, մինչեւ գրեթէ յանդիմանին ճշգրիտ խօսս զայն ի կիր արկանել չէր հնար տանց յառաջագոյն արուեստական բանս եւ գիտնական յայտարարութիւնս որոշելոյ» (Անդ, 28—29):

Իմաստասիրական բառերու այս աղքատութիւնը չի հայիր ուղղակի լեզուի կատարելութեան, այլ միայն ժամանակի մանկութեան[9]: Լեզուն իւր շրջանակին մէջ կատա-

[9] «Լեզուին ժամանակագրական գիրքը, հին արեւելեան հեշտ ու ճապաղ անզորրութեամբ սնած ու զարգացած կեանքը, միայն իւր յափշտակիչ գեղեցկութեամբն սքանչելի՝ բայց բնազանցական դիէն ամուլ եւ աղքատ կազմակերպութիւնը, եւ ընդհանրապէս միակողմանի (արբազան) գրուածներու առաջնորդութեամբ յաջորդած ու սնուցուած ըլլալը, — այս ամէնը չի ներեր որ եւ ոչ հին դպրոցներու՝ թող թէ նոր ազգաց ճշգրտութեանը հետ կարենանք մրցիլ: Եւ ինչ զարմանք հին Հայաստանի համար, երբ հին Հռոմայեցւոց ալ՝ որոնց մատենագրութիւնը իրենց հանճարոյն եւ հմտութեանց առատութեանը նայելով՝ Յունաց հազիւ քրիստոնէական մատենագրութեանը քով կրնայ դրուիլ, — լեզուն ընաւ յարմարութիւն չունէր բուն բարձրագոյն փիլիսոփայութեան եւ ընա—

*րեալ էր եւ անթերի, քերականական զարգացման մէջ կատարելագործուած եւ բառական մթերքով ճոխացած: Բառականն ու համադրականն* (syntaxique) *ճոխ էր անբաւ խաղերով, որոնք զինքը բազմապատիկ կը զարդարէին եւ իրեն փարթամ վայելչութիւն մը կու տային: Եւ յատկապէս այս երկու կէտերու մէջ են դասական մատենագրութեան սեպհական, ինքնայատուկ առաւելութիւնները, որոնցմով կայ ինքը եւ կը զանազանուի յաջորդ ժամանակներու մատենագրութենէն: Երկար աշխատութիւն պիտի ըլլար ինձ, եթէ ուզէի հոս մի առ մի ներկայացնել դասական մատենագրութեան սեպ-*

---

*զանցութեան. որովհետեւ նոյն իսկ իր բնաւորութիւնն առր դէմ կ'ազդէր ինչպէս որ հաւաստապէս Կիկերոնի եւ Ս. Օգոստինոսի վրայ կը զգացուի. եւ հազիւ լատիներէնին կատարեալ մեկնութենէն ետքը կարելի եղաւ շատ մեծ ճգամբ եւ աշխատութեամբ լեզուին չափաւոր ընդունելութիւն մը տալ՝ Յունաց նրբութիւնները բացատրելու, որոնք ի բնէ տրամաբան էին եւ ի բնէ բնազանց: Նոյն սորին լատիներէնի բռնազբօսեալ կոչատութիւններն են՝ որ հիմայ նոր լեզուաց նրբութիւններն եղած են: Համայեցի լեզուին այս հանգամանքը ճշգրիտ պատկերն է հայերէնին անցքերուն, որն որ լեզուին անկմամբը սկսաւ փիլիսոփայել, կամ դուցէ փիլիսոփայելովն ընկաւ նոյն մեծ անկումը: Գրաբար հայերէնին ալ յունական դպրոցաբանութիւն տալու համար եղած բռնաբարութիւնները, որ միշտ օտար պատուաստ մնացին՝ վասն զի անոր կատարելութենէն ետքը վրայ եկած նորութիւններ էին, ըստ մասին մեր արդի լեզուին բուն ընտիր տարրերքն են այսօրուան օրս, վասն զի սար կերպաւորուելէն յառաջ էն»: Հ. Ա. Այտընեան, Քննական Քերականութիւն, Նախաշաւիղ, էջ 287—288:*

Հականութիւնները[10] . տեղւոյս համար բաւական է այս առանձնայատկութիւններուն քաջահմուտ մատենագրի կարճ բացատրութիւնը[11] . «Մեծ խաղ կը խաղան մեր ընիկ հին լեզուին մէջ համանուանք (ածականք, գոյականք, բայք եւ ամբողջ նախադասութիւնք իսկ) : Իւրաքանչիւր ոք ի հեղինակաց իր հանճարոյն համեմատ իրեն սիրական կամ ունակական եղած բառերն ու ձեւերը ընտրելով մասնաւոր nuance մը չինած է իրեն : Ընդհանրապէս մեր բուն հին լեզուին մէջ զանազանութիւնը գերագոյն զարդ ըմբռնուած է, անանկ որ իւրաքանչիւր ոք չէ թէ մինակ ուրիշներէն տարբեր իրեն բառեր կամ բառից նշանակութիւններ կ՚ընտրէ, հապա ինքն ալ կարծես թէ իրմէ յաղելով անոնց տեղ մերթ ընդ մերթ ուրիշ կը փոխանակէ : Ճառերուն քով՝ զանազանութեան իղձը տարբեր կերպով մը երեւան կ՚ելլէ, այսինքն՝ համանուանց կուտակութեամբ, գլխաւորաբար զանոնք երկու երկու զուգելով : Ընդ-

---

[10] Հմմտ. Հ. Ա. Վարդանեան, Դասական հայերէնի յատկութիւններէն : — Կրկնաւոր ածականներ. Հանդ. Ամս. 1923, էջ 36—48, 144—154 : — Ածականներ, որոնք իրենց գոյականներուն հոմանիշները կը կրկնեն. Անդ, էջ 421—432 : — Ածականներ «-խառն» վերջաւորութեամբ. Անդ, 1924, էջ 350—359 :

[11] Հ. Ց. Գաթըրճեան, Դասական հայերէնը. Հանդէս Ամսօրեայ, 1913, էջ 722 :

հանրապէս Ասիական Արեւելեանց ասորական եղած է իմաստ փոխելու, իմաստ բազմացընելու տեղ՝ բառ կամ խօսք փոխել»։

Այս ճոխ գրականութիւնը ուսումնասիրելու ժամանակ պէտք է զանազանել կրկին թարգմանչական դպրոց. Ասորական եւ Յունական։

Ասորականն ընագրէ, ինչպէս հաւանական է կարծել, կատարուեցան առաջին թարգմանութեան փորձերը։ Աշակերտները անէն արդէն հմուտ ըլլալով ասորերէն լեզուին, երբ Մաշտոցին հետ Եղեսիա ընկերացան, հոն տակաւին ոչ քաջավարժ թարգմանութեան արուեստին ձեռնարկեցին հայացնել Եփրեմի գրութիւնները, Եւսեբեայ Եկեղեցական Պատմութիւնն եւ այլն։ Ասով ենթարկուեցան կամայ եւ ակամայ ասորական ազդեցութեան. անոնք «մեր հասարակօրէն ենթադրածէն շատ աւելի՝ սեպհականեցին իրենց թարգմանութիւններուն մէջ ասորական ձեւեր»։ Այս ասորաբանութիւնը սակայն տարբեր էր այն ասորական տարրներէն, որոնք մուտ գտած էին լեզուին մէջ Ե. դարէն շատ յառաջ արդէն եւ «ընտածին» եղած էին, եւ կը տեսնուին առ հասարակ շատերուն քով. Ասորաբանութիւնը, որ երեւան կու գայ մասնաւորներու քով (Եփրեմ, Յակոբ Զգօն) «շատ տեղ արդէն խորթութիւն-

ներու կը դիմէ». եւ կը տկարացնէ հայերէնի հարազատ հնչիւնը, զգալի չափով:

Յունական տարրը ընդհակառակն շատ աւելի նուազ զգալի է, որովհետեւ աւելի վարժ գրչով ձեռնարկուեցան այս լեզուէ թարգմանութիւնները: Նաեւ յունական ազդեցութեան մէջ պէտք է զանազանել տարրեր, որոնց մուտքը նախընթաց է քան հայերէն գրականութիւնը, թերեւս քրիստոնէութեան հետ միաժամանակ մուտ գտած, եւ այսպէս «բնոտծին եղած հայերէն լեզուին[12]», եւ դարձեալ տարրներ, որոնք թարգմանութեան ժամանակ ապրդած մուտ գտած են բոլորովին պատահական կերպով: Անխուսափելի էին այսպիսի յոնաբանութիւններ[13], որոնք տեղի ունեցած են յաճախ բնագրին իմաստին աղէկ չթափանցելէն եւ կամ անմտադրութեամբ, բայց տեղ տեղ նաեւ թարգմանչին քմահաճոյքով: «Բայց երբեք յայամ միօրինակութիւն մը չի տեսնուիր, վասն զի խրօք ուրիշ բան չեն, բայց եթէ գրչին ընթացքին մէջ քիչ խորհրդածուած պատահմունք[14]»: Յատկապէս հելլենաբանութիւն չեն անոնք:

---

[12] Հմմտ. բարեպաշտ, εὐσεβής, աստուածասէր, θεόφιλος, ողջակէզ, ὁλόκαυστος:

[13] Օրինակի համար՝ Գործոց Առաք. Ա. 10. «եւ մինչ դեռ պշուցեալ հայէին ընդ երկինս երթալոյ նորա» (εἰς τὸν οὐρανὸν πορευομένου, ընդ նա որ յերկինսն երթայր):

[14] Հանդ. Ամս. 1913, էջ 721:

Պէտք է մասնաւորապէս շեշտել հոս, որ շատ մը խորթութիւններ, ժամանակի նկարագրին անհամապատասխան տարրներ, որոնք կը նշմարուին այս շրջանի մատենագրութեան մէջ, արդիւնքն են մի միայն անագանագոյն ժամանակի գրիչներուն, որոնք գիտմամբ կամ անուշադրութեամբ, նաեւ տգիտութեամբ թոյլ տուած են իրենց ներմուծել զանոնք: Ընտրելագոյն ձեռագիր օրինակներու համեմատութեամբ կը սրբագրուին անոնք:

Նկատի առնելով բանասիրութիւնը դասական մատենագրութեան լեզուի եւ ոճի այս յատկանիշները, կրցած է յաջողութեամբ մատնանիշ ընել յանուանէ այն մատեանները, որոնք թարգմանուած եւ կամ յօրինուած են հինգերորդ դարու առաջին կէսին:

Յաջորդ ցուցակը կ'ամփոփէ իր ծոցը այն բոլոր մեծ եւ փոքր գրութիւնները, որոնք բանասիրօրէն իբրեւ դասական մատենագրութեան հարազատ մնացորդներ ապացուցուած են: Մեծագոյն մասը ծանօթ է տպագրութեամբ. բայց կան նաեւ գրութիւններ, որոնք անտիպ են տակաւին: Աւելորդ համարեցայ առաջիկայ գրութեանս նպատակին համար մի առ մի նշանակել, թէ ո՞ւր հրատարակուած են անոնք եւ կամ ո՞ւր կը պահուին:

## ՊԱՏԿԵՐ ԴԱՍԱԿԱՆ ՀԱՅԵՐԷՆ ՄԱՏԵՆԱԳՐՈՒԹԵԱՆ

### Ա. ԱՍՏՈՒԱԾԱՇՈՒՆՉ ԳԻՐՔ ՀԻՆ ԵՒ ՆՈՐ ԿՏԱԿԱՐԱՆԱՑ

1. *Հնգամատեան*: 2. *Յեսու*, *Դատաւորք*, *Հռութ*, *Թագաւորութիւնք Ա.—Դ.*: 3. *Մնացորդք Ա. եւ Բ.* առաջին թարգմանութեամբ: 4. *Մնացորդք Ա.—Բ.* երկրորդ թարգմանութեամբ: 5. *Եզր Ա. եւ Բ. եւ Գ.*, *Նեեմի*: 6. *Եսթեր*, *Յուդիթ*: 7. *Տովբիթ*, *Յոբ*: 8. *Մակաբայեցիք Ա.—Գ.*: 9. *Սաղմոսք*, *Սողոմոնեանք՝ Առակք*, *Ժողովող*, *Երգ երգոց*, *Իմաստութիւն*: 10. *Իմաստութիւն Յեսուայ* (*ըստ տպ.* 1833): 11. *ԺԲ. Մարգարէք եւ Բարուք. Եսայի*, *Եզեկիէլ*, *Դանիէլ*, *Երեմիա՝ Մարգարէութիւն եւ Ողբք*: 12. *Երեմիա թուղթ առ գերեալսն*: 13. *Գործք Առաքելոց. Պաւղոսի ԺԴ. թուղթք. թուղթ Կորնթացւոց առ Պաւղոս եւ Գ. թուղթ Պաւղոսի առ Կորնթացիս*: 14. *Կաթողիկեայք Պետրոսի*: 15. *Կաթողիկեայք Յովհաննու Ա.—Գ.*, *Յակոբայ*: 16. *Աղօթք Մանասէի*: 17. *Հանգիստ երանելւոյն Յովհաննու*:

### Բ. ՆԻԹԱՂԵԱՑ

*Յառաջաբանք եւ Գլուխք այլովքն հանդերձ Գործոց Առաքելոց*, *Կաթողիկեայց եւ ԺԴ. թղթոյն Պաւղոսի*:

### Գ. ՅԵՐՈՆԻՄԵԱՑ

*Վասն ի ԻԲ. գիրս զատ ի Հեբրայեցւոց զպատմութիւնս բաժանելոյ*:

Դ. [ԵՊԻՓԱՆՈՒ]

Մահք մարգարէից ։

Ե. ՅՈՎՀԱՆՆՈՒ ՈՍԿԵԲԵՐԱՆԻ

1. Մեկնութիւն Եսայեայ ։

2. Մեկնութիւն Սաղմոսաց ։

3. Մեկնութիւն Մատթէի ։

4. Մեկնութիւն Յովհաննու (ճառք Ա—ԺԳ) ։

5. Մեկնութիւն ԺԴ. թղթոցն Պաւղոսի ։

6. Վասն Պահոց եւ Աղօթից. «Երեւելի եւ վայելուչ է տօնս» ։

7. Վասն Ապաշխարութեան. «Տեսէք յառաջնումն կիւրակէին» ։

8. Վճիռ Քանանացի կնոջն. «Յոյժ են խռովութիւնք» ։

9. Ի խաչելութիւն Տեառն. «Այսօր Տէրն մեր ի խաչին» ։

10. Ի Ղազարոսն եւ ի Մեծատունն. «Տեսէք զԱստուծոյ զօրութիւնն» ։

11. Ի Տատրակն. «Տատրակն ամուսնասէր» ։

12. ՅԱնդամալոյծն. «Յետ այսորիկ տօն էր Հրէից» ։

13. Խօսք վասն Հերովդիադայ. «Դարձեալ Հերովդիաս մոլեգնեալ» ։

14. Ի Ս. Խաչն Քրիստոսի. «Զինչ տասցից կամ զինչ խօսեցայց» ։

### Զ. ՍԵԲԵՐԻԱՆՈՍԻ ԳԱԲԱՂԱՑԻՈՅ ԵՊԻՍԿՈՊՈՍԻ ՃԱՌՔ

1. «Զորգիս լուսոյ լուսաւորեն լուսոյն ճառագայթք»։

2. Վասն Կրօնից եւ Մկրտութեան. «Երբեմն զմեզ կենարարին վերանալն»։

3. Վասն Առաքելոցն ի կրօնս. «Երեկի ճառն»։

4. Խօսք վասն զատկի կաթարոսաց. «Երբեմն յորժամ»։

5. Ի բանն թէ Դպրութիւնք բացան. «Ոչխարքն, ասէ կենարարն»։

6. Ի նոյն կրօնս. «Զարմացայ ընդ ձեզ»։

7. Ի վկայն Ակակ. «Զուարճանան երկինք»։

8. Ի բանն Աւետարանին որ ասէ. Հայր եթէ հնար ինչ իցէ... «Յորժամ մեզ եղբարք»։

9. Ի հրաւիրեալսն ի մկրտութիւն. «Ո՛, զի՛ իմաստուն էր Սողոմոն»։

### Է. ԵՒՍԵԲԵԱՅ ԵՊԻՍԿՈՊՈՍԻ ԵՄԵՍՈՒ ԽՕՍՔ

1. Ի սուրբ Առաքեալսն. «Որսորդովք իւրովք...»։

2. Վասն Չարչարանացն Քրիստոսի եւ չարչարելոյ զօրութեանն. «Զծարաւիս կոչէ Յիսուս»։

3. Վասն հաւատոց խօսեցեալ յԵրուսաղէմ. «Ի մէջ քրիստոսասիրաց»։

4. Վասն Փորձութեանցն. «Այսուհետեւ սկիզբն է ճգանց»:

5. Վասն Զարչարանացն. «Իսկ զչարչարանացն լսել ոչ պարտիմք»:

6. Վասն Յարութեան. «Այլ յայժմ է պատերազմ եւ ճգունք»:

7. Վասն Խաչին եւ Զարչարանաց. «Զխաչն յիմարութիւն համարին»:

8. Վասն Հաւատոյ:

9. Յարժանաւոր երկրպագութեան Երրորդութիւնն հանգիտապատիւ է եւ գի ամենակալ եւ Որդի եւ Մելքիսեդեկ:

10. Ի Փարաւոն եւ յԱռաքելոյ բանն, եթէ Որում կամի ողորմի…:

11. Վասն Հաւատոյ եւ գործոյ եւ թէ չիք առանձինն երեւք չարի իրիք:

12. ՅԱւանակն եւ ի Դաւիթ:

13. Առ որ ասենն եթէ ընդէր Քրիստոս մարմնովն երեւեալ. «Մի ոք ասիցէ եթէ ընդէ՞ր եկն Քրիստոս»:

14. Ի Խորհուրդ մատնութեան. «Փութասցուք ի խաչն Քրիստոսի»:

15. Թարգմանութիւն վասն Ս. Ստեփանոսի առաջին վկային. «Զյաղթող փառաւորեալ»:

## Ը. ԿԻՒՐՂԻ ԱՂԵՔՍԱՆԴՐԱՑԻՈՑ ՄԵԿՆՈՒԹԻՒՆՔ

1. Մեկնութիւնք սուրբ Գրոց՝ Ծննդոց — Թագաւորաց:

2· Մեկնութիւն Թղթոյն Պաւղոսի առ Եբրայեցիս։

3· Բան ի Ս· Երրորդութիւնն։

4· Թուղթ առ Նեստոր եւ ԺԲ· Նզովք· «Փրկչին մերոյ ասացեալ է»։

Թ· ԿԻՒՐՂԻ ԵՐՈՒՍԱՂԵՄԱՑԻՈՅ

Կոչումն ընծայութեան։

Ժ· ԲԱՐՍՂԻ ԿԵՍԱՐԱՑԻՈՅ

1· Ճառք վասն վեցօրեայ արարչութեան։

2· Պատարագամատոյց։

ԺԱ· ԵՒԱԳՐԵԱՅ ՊՈՆՏԱՑԻՈՅ ԲԱՆՔ

1· Նշանակ յեզեկիէլէ։ — 2· Եթէ ունիցիս ընդ քեզ եղբարս։ — 3· Հաւատք որ ի Նիկիա։ — 4· Վասն հանդերձից սուրբ հարցն։ — 5· Գիտնական եւ արդիւնաւոր։ — 6· Բանք Ա—ՃԲ («Քրիստոնէութիւնն է հրաման փրկչին»)։ — Վասն Ը· խորհրդոց եւն եւ Հանդիստ։ — 7· Առաջին լուսաւոր պատերազմացն։ — 8· Վասն ընդունելութեան։ — 9· Վասն պաշտաման։ — 10· Ժառանգորդք Աստուծոյ։ — 11· Ձեռեխայրիս կալոյ։ — 12· Ընդդէմ պատասխանի ի Գրոց սրբոց առ դեւսն։ — 13· Առ Մարտիրոսս։ — 14· Վասն Յարութեան։

ԺԲ· ԵՒՍԵԲԵԱՅ ԿԵՍԱՐԱՑԻՈՅ

1· Ժամանակագրութիւն եւ ժամանակական կանոնք՝ «Քրոնիկոն»։

2. Եկեղեցական Պատմութիւն։

3. Թուղթ առ Կարպիանոս եւ Համաբարբառք Աւետարանաց։

ԺԳ. ՀԻՊՈՂԻՏԵԱՅ ՔՈՍՏՐԱՑԻՈՑ

1. Ի սուրբ Երրորդութիւնն հարցումն եւ պատասխանի. «Վասն զի մի՞ երեւս պարտ է իմանալ սրբոյ Երրորդութեանն...»։

2. «Վասն եթէ անմահ եւ մահկանացու արար Աստուած զմարդն մարթացի՞ ասել» (հատուած, թուի մասն նախորդ գրութեան)։

3. Ժամանակագրութիւն։

ԺԴ. ԳՐԻԳՈՐԻ ՍՔԱՆՉԵԼԱԳՈՐԾԻ, ՆԷՕԿԵՍԱՐԻԱՑ ԵՊԻՍԿՈՊՈՍԻ

Խօսք ի Ծնունդն Քրիստոսի. «Խորհուրդ մեծ եւ սքանչելի տեսանեմք»։

ԺԵ. ՊՐՈԿՂԻ ԵՊԻՍԿՈՊՈՍԻ

Թուղթ ի Հայս առ Սահակ եւ Մաշտոց։

ԺԶ. ԱԿԱԿԱՅ ՄԵԼԻՏԻՆԱՑԻՈՑ ԵՊԻՍԿՈՊՈՍԻ

1. Թուղթ առ Սահակ Հայոց հայրապետ. «Որ ամենայնիւք աստուածասէր»։

2. Թուղթ ի Հայս. «Վասն դիմադարձացն»։

ԺԷ. ԱՐԻՍՏԻԴԵԱՅ ԱԹԵՆԱՑԻՈՑ

Ջատագովութիւն քրիստոնէական կրօնից։

ԺԸ. ԵՓՐԵՄԻ ԱՍՈՐԻՈՑ

1. Մեկնութիւն Հնգամատենին, Յե-

ռուայ, Դատաւորաց, Թագաւորաց եւ Մնացորդաց :

2. Համաբարբառ Աւետարանաց :

3. Թարգմանութիւն Աւետարանի :

4. Մեկնութիւն Գործոց Առաքելոց :

5. Մեկնութիւն ԺԴ. Թղթոցն Պաւղոսի :

6. Վեշտասան ասացուածք վասն Նիկոմեդիայ քաղաքին :

7. Կցուրդք :

8. Ճառ ի Նինուէացիսն. «Ահա հրաման հասեալ» :

9. ՅԱնհաստութիւնն. «Կամիմ մերձենալ եւ երկնչիմ» :

ԺԹ. ՀՐԱՀԱՏԱՅ ԶԳՕՆԻ ՊԱՐՍԿԻ («ՅԱԿՈԲԱՅ ՄԾԲՆԱՑԻՈՅ»)

Ճառք Ա.—ԺԹ :

Ի. ԶԵՆՈԲԱՅ ԱՄԹԱՑԻՈՅ ԵՊԻՍԿՈՊՈՍԻ

1. Ի Կաթուղիկէ Եկեղեցին ի ԽԴ. Սաղմոսէն. «Արդ եկ լո՛ւր դու» :

2. Ի Լուացումն ոտից աշակերտաց. «Յետ խօսելոյն Յուդայի» :

3. Ի Մատնութիւնն Տեառն. «Մինչդեռ անդէն իսկ ի խորհրդին էին» :

4. Վասն յիշատակի Մարտիրոսաց. «Որ է յիշատակի մարտիրոսաց» :

5. Ի Մելիտոս եպիսկոպոսապետն Անտիոքայ. «Օրհնեալ է այն» :

ԺԱ. ԱԹԵՂԱՀԱՅ (ԱՅԻԹԱԼԱՀ) ԵՊԻՍԿՈՊՈՍԻ ՈՒՌՀԱՅԻ

1. Ճառ. «Աւետարանիչք բարեաց, քարոզիչք խաղաղութեան»:

ԺԲ. ԱՆՎԱՒԵՐԱԿԱՆ ԱՌԱՔԵԼԱԿԱՆՔ

1. Վարդապետութիւն Առաքելոց:

2. Թուղթ Յակոբու առ Կոդրատոս:

3. Յիշատակարանք որք եղեն վասն Քրիստոսի առաջի Պոնտացւոյ Պիղատոսի:

4. Թուղթ Պիղատոսի առ Տիբերիոս:

5. Վարդապետութիւն Ադդէի (Թուղթ Աբգարու Թագաւորի Եդեսիայ քաղաքի):

ԺԳ. ԱԳԱԹԱՆԳԵՂԵԱՅ

Պատմութիւն դարձի Հայաստան աշխարհի:

ԺԴ. Փ. ԲՈՒԶԱՆԴԵԱՅ

Պատմութիւն Հայոց:

ԺԵ. ԿՈՐԻՒՆ ՎԱՐԴԱՊԵՏԻ

Պատմութիւն վարուց Մաշտոցայ վարդապետի:

ԺԶ. ԵԶՆԿԱՅ ԿՈՂԲԱՑԻՈՅ

Ընդդէմ Աղանդոց:

ԺԷ. ՍԱՀԱԿԱՅ ՄԵԾԻ ՀԱՅՈՑ ԿԱԹՈՂԻԿՈՍԻ

1. Պատասխանի թղթոյն Պրոկղի:

2. Պատասխանի թղթոյն Ակակայ:

3. Կանոնք:

## ԻԸ. ԿԱՆՈՆԱԳԻՐՔ

*1. Կանոնք ժողովոյն Անտիոքայ, Ա. եւ Բ., Գանգրայ, Կեսարիայ, Ղաւոդիկեայ, Նէոկեսարիայ, Նիկիայ:*

*2. Կանոնք ժողովոյն Ծահապիվանու:*

## ԻԹ. ՎԱՐՔ ՀԱՐԱՆՑ ԵԳԻՊՏԱՑԻՈՑ

*1. Վարք Պաւղոսի անապատականի. «Առ բազումս բազում անգամ խնդիր լինէր, եթէ յումմէ ումեքէ սկսաւ զառաջինն բնակել յանապատի»:*

*2. Ծառ Պաւղայ Միայնակեցի. «Պաւղ էր այր հողագործ եւ առաւել ամբիծ եւ անարատ եւ սուրբ վարուք եւ մօտաւոր կարգաց բարեաց»:*

*3. Վարք Յովհաննու Գրացւոյ. «Յերկրէն Փինիկեցւոց էր Յովհաննէս, ի քաղաքէն Կեսարու»:*

*4. Վարք աբբայ Մարկոսի միայնակեցի, որ բնակեալ էր ի լերինն Թարմակիա. զոր պատմեալ է Սերապիոնի սուրբ հօրն. «Պատմեաց երանելին Սերապիոն, մինչ էր նա ի Մեսեայ որ է ի միջագետս Եգիպտոսի»:*

*5. Պատմութիւն Հարանցն Եգիպտացւոց. «Օրհնեալ է տէր աստուած» (տեղ տեղ նոր խմբագրութեամբ աղաւաղուած):*

*6. Բանք եւ պատմութիւնք սուրբ հարանցն: Եհարց ոմն ցհայրն Անտոնիոսի եւ ասէ. զի՞նչ պահեցից զի հաճոյ եղէց Աստուծոյ (մանրագիրքն ի տպագրին):*

Ի· ՎԿԱՅՈՒԹԻՒՆՔ ՍՐԲՈՑ

1· Վկայից Արեւելից · ա · Վկայութիւնք բազմաց մարտիրոսաց որք ի Պարսս կատարեցան : — բ · Վկայութիւնք բազմաց սուրբ նահատակաց արեւելեայց : — գ · Վկայութիւն Ս · Շմաւոնի եպիսկոպոսի : — դ · Վկայութիւն քերց Շմաւոնի՝ Թերբուսայ եւ քեռն իւրոյ եւ աղախնոյն : — ե · Վկայութիւն Ս · Յեզանդխտոյ : — զ · Վկայութիւն Բարբաշմենայ եպիսկոպոսի : — է · Վկայութիւն վկայից որ սպանան ուրեք ուրեք ի ձեռաց մոգպետացն : — ը · Վկայութիւն Մելէսի եւ Սինէի սարկաւագի :

2· Ապողոմնեայ · «Որք գրարին խորհին» :

3· Բարեղայ եպիսկոպոսի · «Եկեալ ի քաղաքն Անտիոքացւոց» :

4· Բասսոսի · «Յետ վկայութեան սուրբ եպիսկոպոսին Թէոպոմպեայ» :

5· Յիշատակ պատմկնքաց Գուրեայ եւ Շմոնի վկայից · «Յամի ՈԺԵ · Թագաւորութեանն Աղեքսանդրի» :

6· Գէորգեայ զօրավարի · «Տեառն մերոյ եւ փրկչին» :

7· Երենիոսի եպիսկոպոսի Սերմենայ · «Յորժամ բարք բարիք» :

8· Թեկղեայ · «Իբրեւ ելեալ երթայր Պաւղոս» :

9· Թեկղի եւ Մարիամու եւ Մարթայի եւ Եմէլի · «Ի ժամանակին յայնմիկ չարախօս եղեն» :

10· *Թադէի եւ Սանդխտոյ* (*Նոր խմբագրութեամբ աղաւաղուած*):

11· *Թէոդորոսի*. «*Ընդ ժամանակս թագաւորութեանն Մաքսիմիանոսի*»:

12· *Թէոպոմպեայ եւ Թէոփնի*. «*Յամի ԺԹ·. Դէոկղետիանոսի*»:

13· *Թէոփիլոսի եւ Պատրոնիկէի*. «*Աստերիոս բդեշխին*»:

14· *Իգնատիոսի եպիսկոպոսի Անտիոքայ*. «*Այն ինչ գիշխանութիւնն Հռովմայեցւոց առեալ Տրայանոսի*»·

15· *Կաղիոպեայ*. «*Թէոկղիա էր կին ոմն իմաստուն*»:

16· *Կիպրիանոսի եպիսկոպոսի*. «*Այսու պատմի քաջութիւն*»:

17· *Կիւրղի Երուսաղեմացւոյ որ Յուդա անուանեալն էր յառաջ*. «*Միածին Որդին եւ Բանն Աստուած*»:

18· *Կոդրատիոսի*. «*Ի ժամանակս Դեկեայ կայսեր*»:

19· *Հիւպերիքեանց*. «*Մաքսիմիանոս թագաւոր յերկրորդում ամի...*»:

20· *Ղոնգիանոսի*. «*Երանելի այրս Ղ. էր յաւուրս Տեառն մերոյ Յիսուսի Քրիստոսի*»:

21· *Մամասայ*. «*Ի ժամանակս Աւրելիանոսի կայսեր*»:

22· *Ոնեսիմեայ*. «*Ուրախ է ծառայական ազգ*»:

23· *Պիոփնի*. «*Յիշատակաց սրբոց հաւատարել*»:

24. Պետրոսի Աղեքսանդրացւոյ. «Առաւել քան զպատմութիւնս են հանդէսք սրբոցն:

25. Ռոմանոսի եւ Մանկանն խոստովանողի եւ Հիւսիքոսի. «Ասկղեպեայ հագարապետի կամեցեալ մտանել»:

26. Վարոսեանցն. «Եւ եղեւ յաւուրս Մաքսիմինոսի»:

27. Փովկայ եպիսկոպոսին. «Բանդի բազում անգամ»:

28. Վասն Փովկայ եպիսկոպոսի Ծննդեան եւ վարուցն. «Ընդ ժամանակս բարեպաշտութեանն Զե. հաւատոյս հաստատութեան»:

29. Բառասնիցն Սեբաստեայ. «Ընդ ժամանակս Ղիկիանեայ թագաւորի»:

30. Քրիստոմենեայ կուսին. «Ընդ ժամանակս թագաւորութեանն Տրայանոսի էր այր ոմն անուն Ուրբանոս»:

## ԴԱՍԱԿԱՆԻՆ ՉՈՐՍ ԴԱՍԵՐԸ

Դասական Մատենագրութիւնս թէպէտ լեզուի գեղեցկութեամբը, պատուականութեամբն ու ճոխութեամբը թանկագին է իր բովանդակ մասերու մէջ, բայց եւ այնպէս իւրաքանչիւր թարգմանիչ կամ հեղինակ արտայայտուած է իւր ուրոյն ոճովը, անհատական նկարագրովը: Նկատի առնելով ոճի այս զանազանութիւնը փորձած են ոմանք դասաւորել մատենագրութեան մատուռքները այլ եւ այլ համախմբութեամբ, անուանելով ա. Բնական կամ պարզ ոճ, բ. Բաղցր ոճ,

գ. ծոխ ոճ եւ դ. Անզարդ ոճ: Պիտի յիշեմ հոս այսպիսի դասաւորութեան երեքպատիկ փորձ, առանց իւրաքանչիւր դասին առանձնայատկութիւններու վրայ ծանրանալ ուղելու[15]:

1. Գաթըրճեան:

Ա. դաս. Եզնիկ. այս դասին տակ կ՚երթան մեր ցանկին ԻՉ. ԻԷ. 3. Ե. 1, 3, 5. Ա. 1, 2, 11, 13. ԺԲ. 1:
Բ. » Կորիւն. ԻԳ. ԻԴ. ԻԵ:
Գ. » Եփրեմ. ԺԲ. 2. ԺԸ:
Դ. » Կիւրեղ. Ե. 4. Թ. ԺԱ.:

2. Սպենեան[16]:

Ա. դաս. Եզնիկ. այս ինքն Ա. 1—5, 7, 9, 11, 13, 17, 18. Բ. Գ. Դ. Ե. 1, 3, 5. Ձ. ԻԹ.:

---

[15] Ա.—Դ. դասերուս առանձնայատկութիւններու վրայ համառօտիւ խօսած է Հ. Ց. Գաթըրճեան (տե՛ս վարը). ընդարձակ եւ մանրակրկիտ զննութեան ենթարկած է զանոնք Հ. Ք. Սպենեան իւր Ուսումն հայերէն դասական լեզուի ընտիր աշխատութեան մէջ: Ա. դասի առաւելութիւններու մասին հմմտ. Հ. Թ. Թոռնեան, Հատընտիր ընթերցուածք ի Մատենագրութեանց Նախնեաց. Ա. հատոր, Վիեննա 1866, էջ *21—31 = Բ. տպ., էջ 15—21: Բ.—Դ. դասերու սեպհականութիւններու մասին տեսնել՝ նոյն մատենին Բ. հատորի Ցառաջաբանին մէջ (Վիեննա 1910, էջ 9—11): Դասական հայերէնի քերականութիւնն հանդերձ Համաձայնութեամբ տուած է Հ. Ա. Այտընեան, Քերականութիւն հայկազնեան լեզուի, Վիեննա 1885:

[16] Հմմտ. եւ Հ. Թ. Թոռնեան, Հատընտիր ընթերցուածք, Ա[1], էջ *16:

Բ. դաս. Կիւրեղ. Ա. 6, 16. Ե. 4. Թ. Ժ. ԺԱ.:
Գ. » Կորիւն. Ա. 8, 10, 12, 15. ԻԳ.—ԻԵ.:
Դ. » Եփրեմ. ԺԲ. 2. ԺԸ. ԺԹ.:

3. Նորայր Բիւզանդացի [17]:

Ա. դաս. Եզնիկ:
Բ. » Եփրեմ:
Գ. » Կիւրեղ:
Դ. » Կորիւն:

*Աւելի երկար մնալ դասական մատենագիրներուս քով, որչափ ալ ցանկալի էր, բայց չի ներեր տեղս: Կը հրաժարիմ այս ամենածաղիկ բուրաստանէս Հ. Յ. Գաթըրճեանին [18] տալով վերջին խօսքս, անգամ մ՚եւս վեր հանելու դասական մատենագրութեան վսեմութիւնը ըստ աստիճանաւորութեան.*

*«Առանց իրիք երկմտութեան է թէ վասն հայերէն լեզուի ամենայն գեղեցկութեան, յստակութեան եւ մեծութեան աղբիւր են մատեանք առաջին կիսոյ Ե. դարուն կամ բուն ոսկեղէն դարուն մերոյ: Սակայն եւ այնր եւս ծաղկեալ ժամանակի մատեանք*

---

[17] Ն. Բիւզանդացի, Կորիւն վարդապետ եւ նորին թարգմանութիւնք, Տփղիս 1900, էջ 16—35:

[18] Քաղուածոյք ի թարգմանութեանց նախնեաց, ազդարարութիւն, էջ 6—8:

Թէպէտ եւ հաւասարք գեղեցկութեամբ, պատուով եւ ճոխութեամբ, սակայն այլ եւ այլ իմն նկարագիրս յինքեանս երեւեցուցանեն, զորս ի դէպ է ի չորս իմն դասս ստորէն ամփոփել ըստ իւրաքանչիւր սեպհական բանից կամ ոճոյ՝ առանց զնշանակս այլակերպութեան նոցա ի միմեանց ցուցանելոյ, որ ապաքէն չէ իսկ տեղւոյս:

«Առաջին դաս է ընդհանրականագոյն իմն քան զամենայն եւ դիպող ոճ ի հայերէն մատենագրութեան բուն ոսկի դարու՝ վասն կանոնաւորն ընթացից, վասն ճիշդ բանից, առատ եւ ազգի ազգի ասացուածոցն եւ անուանց, վասն պարզն պարզուց եւ զօրեղ դարձուածոց, որովք է պատեհ ի զօրաւոր ճարտարախօսութիւն, ի գեղեցիկ պատմագրութիւն, ի լուսաւոր փիլիսոփայութիւն եւ յամենայն իսկ ճշգրտագոյն մտածութիւն»:

«Այլ սմին հակառակ՝ այլ եւս երեքին դասք ոճոյ բուն ոսկի դարուն, թէպէտ եւ ամենայն ուրեք եւ ամենայն մասամբք հանդիտապատիւք են առաջնումն այնմիկ, սակայն ստորաճանաւ իմն հեռանան տակաւ ի հանդամանաց անտի՝ որովք առաջինն այն ոճ յարմարագոյն ի մատենագրութիւն է եւ դիւրաւ թեքի եւ խոնարհի յամենայն: Այսպէս մի դաս յերիցունց անտի իբրեւ դիւանական իմն կամ արքունական բարձրագոչ հրամանաց բարբառս հնչեցուցանէ. եւ միւս եւս դաս բանաստեղծական իմն լեզուաւ բարբառի՝ ամե-

նեւին հատեալ ի զարդ եւ ի ծաղիկս. իսկ չորրորդն մեղմ, հանդարտ եւ քաղցրախօս եւ կանոնաւոր քան զերկու առաջինսն, սակայն եւ ոչ իբրեւ զառաջինն զայն դաս, յոր Եզնիկն եւ մեծ մասն մատենագրաց ժամանակին մատենագրեցին: Նմին իրի իւրովի իսկ յայտ է թէ ի նոյն առաջին ընդհանրականագոյն ոճ մանաւանդ նախ ի դէպ է կրթել մանկտւոյ եւ զնոյն սեպհականել իբրեւ առ ամենայն ինչ բաւական»:

Դասական մատենագրութեան յաճախակի ընթերցումը պիտի կրթէ մեր ճաշակը խօսելու մաքուր հայեցի բարբառով, նոյնին մանրակրկիտ ուսումնասիրութիւնը պիտի ընձեռէ հայ բանասիրութեան սքանչելի միջոց՝ ճանչնալու հայ մտքի զարգացման գագաթնակէտն եւ խելամուտ ըլլալու մատենագրութեան վայրէջքին եւ վերջապէս զանազանելու լեզուի աստիճանական փոփոխութիւնները դարերու երկայնաձիգ ճանապարհին վրայ:

Կարեւոր է հին լեզուին ուսումը հին մատենագրութենէն՝ նոր լեզուի զարգացման համար, որովհետեւ հոն է չտեմարանուած հայ բարբառին հարստութիւնը, հոն կը յայտնուի հայ ճաշակը իւր նրբութեամբ, հարազատութեամբ, բնիկ ժողովրդական նկարագրով: «Հոս է բառից ընտրութիւն եւ նշանակութեանց ճշդութիւն. հոս բացատրութեանց զօրութիւն ու փափկութիւն, եւ

*բովանդակ պիտոյից մթերքն ու զարդուց գանձարանը։ Աւտր ճիշդ կամ անճիշդ նմանողութիւնն է յաջորդ դարերու լեզուին ազնուութեանն ու հարազատութեան փորձաքարը, որոնք միայն ատոր ճշգրիտ օրինակութեամբը կրնան արժէք մ՚ունենալ»*[19]*։ Եթէ լեզուն յընթացս դարերու բախելով անհարթութիւններու ծեծուեցաւ եւ առաւ այսօրուան կերպարանքը, զոր աշխարհաբար կ՚անուանենք, չենք կրնար ուրանալ թէ իւր ակնաղբիւրը հին լեզուին մէջ ունի եւ պահելու համար իւր կենսունակութիւնը անկէ պէտք է ծծէ իւր հիւթը։ Իսկ եթէ մեր ճաշակը ախորժի հին բարբառով թոթովել, նմանութեան օրինակ հարկ է որ ընտիր, վսեմ, հարազատ լեզուն ծառայէ. իսկ այդ հարազատը, վսեմն եւ ընտիրը բարձրագոյն չափով պահպանուած է դասական մատենագրութեան մէջ, որով խօսեցան Սահակ եւ Մաշտոց։*

---

[19] Այտընեան՝ Քննական Քերականութիւն, Նախաշաւիղ, էջ 36։

*Ոսկեղէն դարու լուսապայծառ աշխարհէն մթագգած երկիր մը կը հանէ զմեզ յանկարծ ճանապարհը: Ե՞րբ թողուցինք դասականին սահմանը եւ ո՞ւր կոխեցինք նոր հողը, դժուար է խոստովանիլ: Ընդ խարխափ կ'ընթանան մեր քայլերը: Կորիւն կը պահէ լռութիւն. եւ Ղազար չի պատասխաներ մեր հարցումներուն: Ամէն ակնկալութիւն լոյսի նշոյլ մը ստանալու դասական մատենագրութենէն ժամանակի գաղտնիքին թափանցելու համար, ի դերեւ կ'ելլէ. նաեւ նոր շրջանը — զոր* արծաթի *կը կոչեմ, չ'ընծայեր ո եւ է ոտնկոխ իմանալու թէ ո՞ւր իւր սկիզբն ունի: Ապաստան ենթադրութեան ստիպուած ենք ընդունիլ, թէ հոն ուր կը լռէ Մաշտոցի երէց եւ կրտսեր աշակերտութիւնը՝ հոն մայրամուտքն է ոսկեղէն դարուն եւ սկիզբն արծաթի շրջանին: Ե. դարու երրորդ քառորդին մէջ ենք* (450—475): *Ամպամած է երկինքը, աղմկալից աշխարհը. խամրած է հայ արքունիքի փառքը, լռած են գուսանները. լռութիւնը կ'իշխէ նաեւ հայ տաճարներէն ներս:*

*Երբ նոր սկիզբ կ'ըլլար գրական շարժ-*

*ման (405), արքունական տունն էր որ իբրեւ ձեռնտու քաջալերիչ ընդառաջ կու գար Սահակի եւ Մաշտոցի խորհուրդներուն, արքայատուր ռոճիկներով կը բացուէին դպրոցներ, թագաւորական առատաձեռնութենէն նպաստաւորուած կ՚ուղեւորէին աշակերտներն Եդեսիա եւ Կ. Պոլիս համբարելու հմտութիւն եւ պարապելու թարգմանութեամբ։ Այսպէս ծլեցաւ ծաղկեցաւ գիտութեան ծառը Հայաստանի մէջ եւ զարգացաւ մրգաշատ։*

*Դժբախտաբար չկրցաւ երկար վայելել հայ գրականութիւնը արքայաշուք հովանին. հայ թագաւորութիւնը ապրեցաւ իւր օրհասականը (428). քիչ յետոյ խոնարհեցան ի մար հայ երկնակամարի երկու արեգակները (438, 439). եւ պղտորեցաւ քաղաքական եւ եկեղեցական կեանքը միանգամայն։ Տիզբոն չբաւականացաւ արքունական թագն միայն բառնալ հայ աշխարհէն, այլ եւ յանձն չառաւ հաստատել հայրապետական գահին վրայ նոր հովուապետ։ Քաղաքական եւ եկեղեցական ճնշումներուն յաջորդեց կրօնական հալածանք. եւ զգաց Ազգը հարկի տակ զէնք վեր առնել եւ պաշտպանել կրօնն ու ազատութիւնը (451)։ Անթիւ նահատակներ զինուորական կարգէն եւ եկեղեցական դասէն մնացին պատուոյ դաշտին վրայ. ու թէպէտ ընկճեցաւ ապստամբութիւնը, բայց մնացին սրտերը յուզուած։*

*Այսպէս ներքին եւ արտաքին պայման-*

ներն տակաւ առ տակաւ դանդաղեցուցին գրական շարժման արագ ընթացքը եւ ի վերջոյ ի սպառ կասեցուցին, ճշդելով բանաստեղծին խօսքը, թէ inter bella sillent musae։

Շատ տխուր է պատկերը, զոր կը գծէ Ղ. Փարպեցի դարուս վերջին քառորդի գրական կեանքէն։

Հայ դասական մատենագրութիւնը, որ իւր պայծառ վերելքը տեսած էր դարուս սկիզբը Այրարատեան դաշտին վրայ, տեսաւ հոն նաեւ իւր մայրամուտը՝ դարուս երկրորդ կէսի սեամքին։

Քաղաքական եւ քաղաքային պայմաններն աւելի նպաստաւոր էին այս միջոցին Հռովմէական Հայաստանի մէջ։ Եւ կան կռուաններ ենթադրելու թէ այն պահուն երբ դադար կ՚առնէր գրական շարժումը Պարսկական Հայաստանի մէջ, նոյնը հոս սկիզբ կ՚ընէր նոր թափով զարգանալու։

1. Հռովմէական Հայաստան, արեւմուտքի հետ ուղղակի յարաբերութեան մէջ ունէր ամէն դիւրութիւն պայծառանալու քաղաքակրթութեամբ եւ մշակելու սեպհական գրականութիւն։ Կը պատմէ Կորիւն, թէ Մաշտոց վարդապետ 422ին երբ այցելեց Կ. Պոլիս եւ ներկայացաւ Կայսեր, խնդրեց անկէ թոյլտուութիւն բանալու Հռովմէական Հայաստանի մէջ դպրոցներ. «վասն մանկտւոյն յաշակերտութիւնն առ ի կէս ազգէն Հայոց ժողովելոյ»։ Կայսերատուր հրամանը

կը ստանայ․ եւ կը ներկայացնէ Անտիոքի մեծ սպարապետին Անատոլիոսի․ «եւ նորա առեալ զամկերս կայսերական նշանօք՝ փութայր վաղվաղակի զհրամանն կատարել։ Եւ հրեշտակս արձակեալ այնուհետեւ ի գաւառս Կէս ազգին Հայոց յիշխանութեանն Կայսեր բազմութիւն մանկտւոյ ժողովել եւ նոցին ուսմունս կարգել ի պատեհագոյն տեղիս։ Յոր եւ երանելին զվարդապետութիւնն իւր ի գործ արկեալ եւ ժողովելոցն քաղցրացուցանէր»։ Կ'աւելցնէ ասոր վրայ պատմագիրը՝ «Առ որս թողեալ վերակացուս հաւատացելոցն՝ զերկուս ոմանս յիւրոց աշակերտացն․ որ(ոց) առաջնոյն Ենովք անուն էր եւ երկրորդին Դանան, արք կրօնաւորք եւ յառաջադէմք յաւետարանական սպասաւորութեանն․ զորս յանձն արարեալ շնորհացն Աստուծոյ՝ անդէն զետեղէր։ Եւ ինքն բազում աշակերտօք դայր անցանէր ի կողմանս Հայոց մեծաց[1]»։

Ճանապարհին իրեն հետ էր Դերջանի Գինթ եպիսկոպոսը․ հաւանօրէն ամէնէն յառաջ Դերջանի մէջ բացաւ Մաշտոց Հայկական Դպրոցը։ Դժբախտաբար ո՛չ Կորիւն եւ ո՛չ Ղազար ըրած են այս Դպրոցներու մասին անդրադոյն յիշատակութիւն։ Որչափ ալ կը լռեն այս նկատմամբ պատմագիրները, պէտք է յուսալ թէ ի տեղիս տեղիս բացուած Դպրոցներէն մին կամ միւսը զար–

---

[1] Կորիւն, էջ 28—30։

ղացաւ եւ տոււաւ գրական գործիչներ : Տայեցի Գիւտ կաթողիկոսը, «այր լի գիտութեամբ հայոյս եւ առաւելեալ յունին» (Փարպ. 110), երբ կը ջատագովէր իւր ընթացքը Պերոզի առջեւ, կ'ըսէր. «զդպրութիւն գիտութեանս մերոյ եւ զիմաստ բանաւոր ուսմանց յաշխարհին Հոռոմոց ուսեալ եմ, եւ են իմ անդ ծանօթք բազում(ք) եւ՛ ուսումնակիցք» (Փարպ. 114) : Ուստի կային «յաշխարհին Հոռոմոց» «ուսումնակից»ներ, որոնք կը դրադէին գիտութեամբ: Կարգ մը գրուածներ, որոնք լոյս տեսած են 500 թուականէն յառաջ, կը պահանջէին իրենց ծագումը յունահայ միջավայրի մը մէջ: Կը յիշեմ Ստոյն Կալլիսթենէսի Պատմութիւնն վարուց եւ գործոց Աղեքսանդրի, որուն ծանօթ եղած է Ղ. Փարպեցի[2]: Ինչպէս կ'երեւայ Ղազար կարդացած է նաեւ Գրիգոր Աստուածաբանի եւ ուրիշ Ս. Հայրերու գրութիւնները հայերէն թարգմանութեամբ. իր Թուղթին մէկ տեղիքը այսպէս մտածել կու տայ. կը գրէ Ղազար[3].

«Բայց իմ ըստ կարի պարապեալ յունական ուսմանցն, եւ ըստ զօրելոյ տկարամտութեանս իմոյ կարդացեալ զգիրս արանց սրբոց, որք վառեալք սուրբ Հոգւոյն զինու՝

---

[2] Հ. Յ. Տաշեան՝ Ուսումնասիրութիւնք Ստոյն-Կալլիսթենեայ վարուց Աղեքսանդրի: Վիեննա 1892, էջ 77:

[3] Ղ. Փարպեցի, Տփ. 1904, էջ 192:

զսուրբ հոգեփողոտս աղանդաւոր ուսմանցն դարձուցանէին անդրէն ի սիրտս նոցունց, եւ զաղեղունս նոցա փշրեցին, եւ զփրկագործ վարդապետութիւնն՝ իւրեանց գրով մեզ աւանդեցին, հոգացեալ իբրեւ զարդարեւ ոգեսէր հարս՝ զամենայն ազէտախորհուրդ մարդոց զօգուտն. զորոց յերկար ոք եւ ջերմ սիրով ընթերցեալ զգրեալս՝ անմնաս եւ դիւրագերծ կարէ լինել ի հրարձակ նետից չար ձգողացն. զորոցն ասեմ զԱթանասէ Աղեքսանդրացւոյ եւ զերկուց միանուն արանցն՝ զԿիւրղէ Երուսաղէմացւոյ (եւ զԱղեքսանդրացւոյ), եւ զԲարսղէ Կեսարացւոյ եւ զԳրիգորէ Նազազացւոյ, որ եւ յաղագս առաւելեալ ի նմա շնորհի ուղղափառ գիտութեան Աստուածաբան յորջորջեցաւ. եւ զմերոյին առաքելանման նահատակէն Գրիգորէ [4], զվարդապետէն Հայոց, եւ զնոցունց նմանեացն, որք զնոյն շաւիղ առողջմտութեանն հետեւեալ վարդապետեցին»:

Այս գրքերու մասին է անշուշտ նաեւ հետեւեալ խօսքերը, տրտունջով ուղղուած Վահանին. «Զի անգամ եւ զհոռոմ գրեանդ ոչ ետուն զկնի իմ, որք կան այդր ընկեցեալ ի կերակուր ցեցոյ. բայց արդեօք կարդացեալ լուսաւորեցի՞ն ի դոցանէ բնակեալքդ ի տեղւոջդ եւ կամ զայլս լուսաւորեցե՞ն [5]»: «Հո–

---

[4] Տպ. «Նահատակին Գրիգորի»:
[5] Ղ. Փարպեցի, էջ 196:

ռոմ գրեանք», զորոնք հաւաքած էր Ղազար Վաղարշապատ իր վանքին մէջ, ճշդիւ հոռոմերէն լեզուով չէին ապահովապէս. եւ կարդացած հայրաբանական գրուածքները հայերէն թարգմանութեամբ էին: Զայս կ՚ակնարկէ Ղազար երբ անոնց թուին մէջ կը դասէ նաեւ Հայոց մեծ նահատակին՝ Գրիգորի Վարդապետութիւնը եւ կ՚աւելցնէ հեգնօրէն թէ իցի՜ւ իր հակառակորդներն օգտուէին այդ Մատենադարանէն փոխանակ «ի կերակուր ցեցոյ» մատնելու զանոնք, ուստի անշուշտ հայերէն էին եւ դիւրամատչելի հայ մարդկան: Չեմ ուզեր ի հարկէ տալ ըսել թէ Ղազար, որ «ըստ վարդապետաց իմոց հրամանի ի Հոռոմս» ժամանակ մը ապրած էր[6], անծանօթ մըն էր յունարէն լեզուին. բայց «հոռոմ ուսումն» եւ «հոռոմ գրեանք» հոս ասացուածք մը կը թուի, որով կ՚իմանային ժամանակակիցները Յունաստանէն ներածուած հայ գրչագիրներն ու թարգմանութիւնները:

Այս թարգմանութիւններս ոչ միայն ըստ բովանդակութեան, այլ նաեւ ըստ լեզուին եւ թարգմանութեան արուեստին կը տարբերէին դասական շրջանի թարգմանութիւններէն: Չկան հոս լեզուի այն վայելչութիւնը, վսեմութիւնը եւ թարգմանելու ճարտարութիւնը, որոնք կը փայլէին դասական շրջանի մատե–

[6] Անդ, էջ 187:

նագրութիւններու մէջ: Թարգմանիչներս ստրուկ են յունարէն սկզբնագիրներուն, եւ թերավարժ թարգմանութեան արուեստին մէջ, տէր չեն մայրենի լեզուին բիւրապատիկ յարմարութիւններուն: Յայտնի կը տեսնուի թէ ապրած են հեռու հայ միջնաշխարհէն՝ զրկուած գուսանական կենդանի բարբառի հնչիւնէն. չեն ունեցած նաեւ Սահակ մը, որ հսկէր թարգմանութեանց վրայ, ու սեպհական գրչով ուղղէր թերութիւնները: Այսպէս թէեւ հայ ատաղձով բայց յունական կաղապարի վրայ ստեղծուած է հոն գրականութիւն մը: Ասոնք թէպէտ չունին այն յունաբան բարբառը, ուղղակի յունարէն քերականութեան եւ բառակերտութեան վրայ հիմնուած, ինչ որ դար մը յետոյ երեւան ելաւ, բայց երեւան կը բերեն նոր հոյլ մը բարդ բառերու, նոր ածանցներ ածականներ յօրինելու եւ չափազանց ծանր յունական շարադրութիւն (syntaxe):

Ուշադրութիւն կը գրաւէ նաեւ թարգմանութեանց բովանդակութիւնը. չեն սիրեր զուտ մեկնողական գրուածքներ, այլ աւելի հռետորական–փիլիսոփայական–դաւանաբանական ճառեր (Գրիգոր Աստուածաբան). քայլ մը աւելի յառաջ երթալով՝ անգամ հեթանոս վէպեր, որպիսի է Աղեքսանդրի վարքը, կը ձեռնարկեն հայացնել: Վերջին գրուածքս խորհել կու տայ, թէ չկայի՞ն ար-

դեօք այս նոր Թարգմանիչներու մէջ նաեւ աշխարհիկ մարդիկ:

Ղ. Փարպեցի այս Թարգմանիչներէն երկուքը կը յիշէ յանուանէ երբ կը գրէ [7]. «Երանելի փիլիսոփոսն Մովսէս, որ արդարեւ մինչդեռ էր ի մարմնի՝ ցանկ երկնային զօրացն էր քաղաքակից. ո՞չ ապաքէն ի տեղւոջէ ի տեղի արեղեանդ Հայոց հալածական արարին: Ո՞չ զԼուսաւորիչ[ն] եւ զագիտահալած զգրեանն նորա՝ առ անգիտութեան վաթաղիկէս կոչէին. եւ այլ բազում ինչ իրօք Թշնամանեալ՝ յետոյ ապա յաղագս այրեցման տօթոյ զխարէական զապուր թանի [8] նման դեղոց մահու արբուցեալ արբոյն հեղձուցին»: Եւ քիչ յետոյ Թէ «Անարատ եւ յամենեցունց յարգելի յոյսն տէր Խոսրովիկ չեւ եւս հասեալ ի սահմանս մեր, մինչդեռ դայր ի ճանապարհի եւ լուան՝ որպէս ի վերայ Թշնամւոյ ընդդէմ զինեցան ասելով. Ահա ո՞ւր գայ միւս եւս թարգմանն: Եւ օրհնելոյն ի հեռաստանէ լուեալ զդունչիւն մահածայն ալեղանցն՝ աղօթեաց առ Բարձեալն եւ վաղվաղակի ընկալաւ զխնդիրն, որում եւ տենչալի նշխարացն այլք, եւ ոչ մեք՝ արժանի եղեն ընդունակութեան»:

Ղազար որ ոչ Թէ «ի համբաւուց» տեղեկացած, այլ անձամբ ժամանակակից եղած է

---

[7] Ղ. Փարպ. Թուղթ, էջ 202:

[8] Այսպիսի իմաստ մը կը ստանուի հոս. տպագիրն ունի. «յաղագս այլոց ամօթոյ զխ. զեպխկոպոսութիւնս...»:

անձնաւորութիւններուս, գիտէր անշուշտ նաեւ անոնց գրական աշխատութիւնները: Ապահովապէս անոնցմէ մէկն էր Կալլիսթենէսի Աղեքսանդրի վարքը, որ հասած է մեր ձեռքն ալ: Այս գրուածքին շատ մանրակրկիտ եւ գեղեցիկ ուսումնասիրութիւնը տուած է Հ. Յ. Տաշեան, ուր նաեւ թարգմանութեան լեզուն մանր նկատի առնուած է[9]. «Լեզուի կողմանէ առանձին ուշադրութեան արժանի գործք մըն է Կալլիսթենէս: Ե. դարու վերջին կիսուն ա՛յն գրութեանց կարգէն է, որոնք թէեւ չեն պահած մեսրոպեան նախնական դպրոցին անխառն նկարագիրը, բայց որոնց քով լեզուն իր կորովը պահած է. ուստի այն գրքերէն՝ որոնց խումբն «արծաթի դարու» անուամբ կը յորջորջենք: Նաեւ ասոնց մէջ եթէ ոչ առաջին, գոնէ շատ կարեւոր տեղ կը բռնէ, եւ աւելի կանոնաւոր ու կորուկ լեզու մ'ունի: Բազմաթիւ նորանոր բառեր կը գտնենք գրութեանս մէջ: Մեծ ճարտարութեամբ յօրինուած են անթիւ ուսումնական բառեր, ի մասնաւորի անասնոց, անկոց եւ այլ այսպիսեաց, զոր օր. ռնգեղջիւր, գիշերաղուէս, եզնախոյ, զուարակափիղ, շնակաճու են, որոնք ամէն քայլափոխին կը հանդիպին: Քիչ կայ տեղ, ուր անյարմար բառեր դնելով՝ մթին կամ անյաջող

---

[9] Ուսումնասիրութիւնք Սուտ-Կալլիսթենեայ վարուց Աղեքսանդրի, էջ 199—209. յառաջբերութիւնս սեղմուած ձեւի մէջ է:

նախադասութիւն մը ծնած է։ Հին լեզուի (դասականի) կենդանութիւնը կ՚երեւայ գլխաւորաբար ասութեանց եւ այլ ձեւերու առատ պէսպիսութեան մէջ։ Այս կողմանէ ալ աննշանակ չէ մեր այս գիրքը, որ ճոխ է շատ մը հին ու բնիկ հայ դարձուածներով։ Ասոնց եթէ մաս մը չերեւայ այնչափ ըստ ճաշակի նախնական մեսրոպեան լեզուին եւ մաս մ՚ալ ոչ բոլորովին նոր, սակայն շատ մեծ թուով կը մնան տակաւին գրոցս յատուկ ասութիւնք, ինչպէս նաեւ այլ քերականական ոճք։ Լեզուի կանոնաւորութեան կողմանէ ունի թէեւ ոչ սակաւաթիւ խոտորումներ հնագոյն մեսրոպեան լեզուէն, բայց ընդհանրապէս կանոնաւոր է։ Ոչ-մեսրոպեան ոճեր ու բառեր, զոր օր. ըստ յունի յօրինուածներ («արտ, գեր[10], վեր[11]» եւ նման մաս-

[10] Ապահովապէս հոս ի նկատի ունի հեղինակը Կալիսթենէսի «գերախանց հպարտութիւն» (էջ 174) տարօրինակ բառը, որ երկու անգամ գործածուած է նաեւ Փիլոնի թարգմանութեան մէջ. «գերախանց բարերարութիւն». «իբրեւ թէ մեծ եւ գերախանց առասցեալ իցէ բարի» (Հմմտ. ՀԲ. Ա, էջ 544)։ Նոր Հայկազնեան Բառգիրք եւ Աճառեան՝ Արմատ. Բառագիրք («Գեր» բառին տակ) կը համարին բառս գեր («վեր, գերիվերոյ») եւ խանց արմատներէն ածանցուած. բայց շատ անճաշակ պիտի ըլլար այսպիսի բարդութիւն մը։ Ինձ կը թուի թէ հոս բառին իմաստն է «մեծահռչակ, գոչիւնաձայն», թերեւս սանսկ. gar «գոչել», եւ գնդ. gar «երգել» կամ հայ. գեր, «ողբ» բառէն կազմուած։ Վիեննայի Թ. 947 Կալիսթենէսը այս բառը կը կարդայ գերափանց, նոր սրբագրութեամբ՝ ինչպէս կը կարծեմ։ Աղեքսանդրի վարքը չունի յունարէն նախադիրներ։

[11] Հմմտ. վերագրութիւն, ἐπιγραφή, վերագալուստ, ἐπίβαση։

*նըկամրք բաղադրութիւնք են) պակաս չեն, բայց եւ ոչ բազմաթիւ: Քիչ մ'աւելի են մեսրոպեանց ոչ այնչափ հաճոյ դարձուածքներ, եւ երբեմն նաեւ անքերական կտորներ:* *Դժբախտաբար* յոյն լեզուի ազդեցութիւնը *բաւական կը զգացուի. ի մասնաւորի մտադրութիւն կը գրգռեն բազմաթիւ յոյն բառեր նաեւ հոն՝ ուր բոլորովին աւելորդ կ'երեւար: Աւելի դիւրաւ կը մեկնուին բազմաթիւ բառեր, որ ըստ յոյն կաղապարի յօրինուած են, թէեւ երբեմն անյաջող եղանակաւ*[12]: *Զափազանց առատութեամբ կը տեսնուին յոյն լեզուի քանի մը կանոնաց նմանողութիւնք, զոր օր. բացարձակ սեռական*[13], *Հայցական ենթակայ, յոդնակի ենթակայի եզակի բայ (ուր չէզոք է յունին մէջ) եւ վերջապէս նախադրութեանց հոլովառութեանց անկանոնութիւնք եւ այլ այսպիսիք»:*

*Ըստ ամենայնի նոյն արուեստով թարգմանուած են նաեւ Գրիգոր Աստուածաբանի գրութիւնները. որոնց եթէ թարգմանիչը նոյն չէ Աղեքսանդրի վարուց թարգմանչին հետ, բայց հաւանօրէն ժամանակակից է թարգմանութիւնը: Տեղւոյս չէ մանր քննել*

---

[12] *Հմմտ.* մշտայուշ *եւ* յարայիշելի, *ἀείμνηστος*, անպատերազմափորձ, *ἀπειροπολέμος*, մերկավերարկու, *γυμνοπεριβόλος*, մերկակրթութիւն *γυμναστική են:*

[13] *Այսպէս՝* հզօր կռուի եղելոյ, հզօր գլման եղելոյ, այսպէս պատասխանւոյ տուեցելոյ՝ կային սպաւէին իրացն *լինելոյ» են:*

*այս խնդիրը*[14]*· բայց կարեւոր է խմբաւորել այս եւ նման գրութիւններն եւ մանրախոյզ քննութեամբ ուսումնասիրել զանոնք եւ դասաւորել*:

2· Երուսաղէմեան Դպրոց: *Ե· դարու երկրորդ կէսէն ընդառաջ կ'ելլէ մեզի թարգմանութիւններու ուրիշ խումբ մը, մեկնողական, ճառական, վկայաբանական նաեւ ծիսական եւ կանոնական բովանդակութեամբ: Ասոնք լեզուական նկարագրով մերձաւոր խնամութիւն մ'ունին դասականին հետ· նոյն է քերականութիւնը, նոյն եւ բառամթերքը, բայց արտայայտութեամբ եւ ոճով կը խոտորին դասականէն: Կը պակսի անոնց դասական շունչը, շարադասութեան վայելչութիւնը եւ քերականական ձեւաշատութիւնը, նաեւ ցիր եւ ցան կը յայտնեն բառեր, որոնք խորթ են դասականներու* (աղօթեմ, անհանդուրժելի *են*)*: Այսպիսի գրուածքներէ են* Թուղթք Իգնատիոսի, Վարք Անտոնի եւ Մակարայ, Խրատք Նեղոսի *են*)*: Լեզուի զարգացման օրէնքին հետեւելով հարկ է այս գրութիւն–*

[14] *Բառամթերքէն կը յիշեմ՝* աղօթեմ, անախտութիւն, անփառութիւն, աստուածաբանութիւն, արուեստաւորեմ, բազմազան, գեղաղէշութիւն, դիւրայեղութիւն, զուգահաւասար, զուգամիտութիւն, կենցաղ, համամիտիմ, համամիտութիւն, համակամութիւն, համանգամայն, հարցաքննութիւն, հիւանդագործեմ, հրաշք, հրաշափառագոյն, ուրանօր, անդանօր, չարագործեմ, ողջախոհ, սխալակեմ, վեհագոյն, վերբերիմ, տարագրեմ *են: Յունաբան դպրոցի հնարած բայակերտ մասնիկները անծանօթ են հոս:*

*ներու ժամանակը գետեղել Ե. դարու երկրորդ կէսին: Ճշդիւ որոշելու համար առանց ժամանակագրութիւնը հարկ է դեռ կատարել մանրակրկիտ քննութիւն:*

*Յիշատակարան մը, որ պահուած է* 1403 *թուին գրուած Ոսկեփորիկի մը մէջ*[15], Անտոնի վարք*ին կից կը յայտնէ թէ Թարգմանութիւնը կատարուած է Երուսաղէմ* 450*ին.* «Թարգմանեցաւ գիրս այս ի սուրբ քաղաքին յԵրուսաղէմ յամի Նորդի Ծերորդի գալստեան Տեառն մերոյ Յիսուսի Քրիստոսի. յամին յորում հանգեաւ քաջընթաց երանելին Մաշտոց»:

*Նշանակուած թուականը սակայն ճշդիւ չի համապատասխաներ Մաշտոցի մահուան տարւոյն* († 17 *Փետր.* 439 *կամ* 440): *Եթէ թուականը կամ «Մաշտոց» անունը վրիպագրութիւն չէ, հարկ պիտի ըլլայ վերագրել թարգմանչին կոշտ սխալ մը, որ դժուարաւ մտածելի է: ՆԾ կարդալով ՆԾ կը ստացուի ճշդիւ Մաշտոցի մահուան տարին: Այլապէս պիտի առաջարկէի ընթեռնուլ ՄԱՇՏՈՑ = ԵՍԻՔՈՍ: Որովհետեւ գրութիւնը Երուսաղէմ կը թարգմանուէր, հաւանօրէն տեղւոյն հայ վանքերէն մէկուն մէջ, հնարաւոր է կարծել, թէ թարգմանիչը Անտոնի վարքին*

---

[15] *Ձեռագիրս* 1858*ին տեսած է Յովհ. Տէրոյենց Տատեան Յովհաննէս ամիրայի քով. հրտ. Երեւակ, Դ* (1858), *էջ* 43: *Հմմտ. նաեւ Նորայր Բիւզանդացի, «Կորիւն Վարդապետ», էջ* 28:

կից յիշատակած ըլլայ անոր հետեւող ուրիշ քաջընթաց երանելւոյ մը մահը, որ տեղի ունեցած է նոյն տարւոյն նոյն քաղաքին մէջ եւ ամէնուն ցաւի եւ խօսակցութեան առարկայ եղած: Կը պատմէ Յովհ. Մայրումեցի, թէ Քաղկեդոնի ժողովէն քիչ առաջ կամ գումարման օրերուն երկնքէն օղաքարեր ինկած են, զորոնք «Եսիքիոս Երուսաղէմի վարդապետը» հաւաքած եւ մաս մը Եւդոկիա թագուհւոյն ընծայած է: Այս տեղեկութեան հիման վրայ կ'իշխէ գիտնոց մէջ այն կարծիքը, թէ Եսիքիոս (Ἡσύχιος) 451էն քիչ յառաջ վախճանած ըլլայ, որուն համար յառաջ կը բերեն նաեւ Պեղագիոս սարկաւագի (ապա Պեղագիոս Ա. Քահանայապետի) մէկ ակնարկութիւնը[16]: Ուստի շատ հաւանական է որ Թարգմանիչը այս դէպքը ակնարկել ուզած ըլլայ իւր յիշատակագրութեան մէջ: Եսիքիոս իւր սրբակրօն եւ քաջընթաց քաղաքավարութեամբ եւ բարձրական վարդապետութեամբ, յատկապէս Ս. Գրոց գեղեցիկ մեկնութիւններով մեծ համբաւ կը վայելէր յաչս Երուսաղէմացւոց. անոր գործերէն մին՝ Յոբայ Մեկնութիւնը թարգմանած էին նախնիք նաեւ հայերէն, թերեւս հեղինակին մահուընէն ոչ շատ ետքը: Անոր վարքը, զոր մեզի հասած օրինակներու մէջ ըստ

[16] K. Jüssen, Die dogmatischen Anschauungen des Heschius von Jerusalem. Münster 1931, էջ 3—6:

բոլոր մասին դասական հայերէնի նկարագրով չէ։

Որչափ ալ խնդրական մնայ յիշատակարանիս այս կէտը, չի կորսնցներ այն իր կարեւոր նշանակութիւնը, որ ունի Երուսաղէմեան դպրոցի գոյութեան համար։ Ուրիշ, թէպէտ նուազ վստահելի աղբիւրէ ալ ծանօթ է թէ քաղաքիս մէջ կը գործէին հայ թարգմանիչները. Օրհնութիւնաբեր ցուցակին մէջ կը նշանակուի թէ Բարսղի Ջրօրհնէից կանոնը Խօսրով Թարգմանիչ բերած է Երուսաղէմէն՝ Ս. Սահակի հրամանաւ. դարձեալ թէ Ապաշխարող արգիլելու եւ արձակելու կանոնը նոյն տեղէն Արգեւան (Արձա՞ն) եւ Կորիւն թարգմանիչները բերած են Հայաստան[17]։ Զ. դարու ընթացքին շատ հայ վանքեր եւ հայ միանձունք ինչպէս նաեւ ուխտաւորներ կը յիշուին Երուսաղէմ։ Այս միջավայրէն եկած է Հայաստան Ճաշոց գիրքը, որ Երուսաղէմեան Եկեղեցւոյն համար յօրինուած էր։ Ուստի զուրկ չէ ամէն հաւանականութենէ, եթէ ընդունինք թէ շարք մը եկեղեցական, յատկապէս վանական կեանքի համար գրուածքներ, որոնք գոյութիւն ունին հայ հին մատենագրութեան մէջ ընտիր լեզուով, Երուսաղէմեան դպրոցի արտադրութիւնները կամ թարգմանութիւններն

[17] Zeitschrift für armenische Philologie, I (1903), էջ 218—219. եւ Հայապատում, § 153։

ըլլան : Խնդրոյս մանրամասն ուսումնասիրութիւնը կը մնայ կատարել բանասիրութեան :

3. Հայաստանի մէջ միանգամ սկիզբ կ՚առնէ մատենագրութիւնը Ե. դարու վերջերը, երբ Յովհաննէս Մանդակունի, Ղ. Փարպեցի եւ Բաբգէն Կաթողիկոս կը յայտնուին, ինքնագիր երկասիրութիւններով եւ Թղթերով : Առտնին բարբառ մը երեւան կու գայ այժմ նոր մատենագիրներուս գրչին տակ, որ ազդուած է ժողովրդական բարբառէն : Ունինք այս բարբառին ուսումնասիրութեան համար հաստատուն կռուաններ Ղ. Փարպեցւոյ Պատմութեան եւ Թղթին մէջ, որոնք գրուած են իբր 500—504ին եւ Բաբգէն Կաթողիկոսի 506ին առ «ուղղափառս ի Պարսս» ուղղած Ա. Թղթին մէջ : Լեզուի պարզութիւնը, յստակութիւնը, զուտ հայկական նկարագիրը՝ խառն ժողովրդական տարրներով երեւան կու գան նաեւ Ներսէս Բ., Յովհաննէս Բ. կաթողիկոսներու, ինչպէս նաեւ Աբդիշոյի, Մակար Երուսաղէմացւոյ, Յովհաննէս Երուսաղէմացւոյ թղթերու մէջ, որոնք գրուած են 548—570 տարիներուն : Այս բարբառը կ՚իշխէ նաեւ Է. դարուն Մովսէս Ցուրտաւի եպիսկոպոսի եւ Կիւրիոն Վրաց Կաթողիկոսի եւ ժամանակակից ուրիշ քանի մը առտնին Թղթակցութիւններու մէջ : Կան այս շրջանէն մանր Թարգմանութիւններ ալ, ասորերէնէ, ուր նոյնպէս պարզախօս հայերէնը կը բարբառի :

Լեզուին տարրները կը կազմեն Դասականին քերականութիւնն եւ բառամթերքը. բայց զգալի կ'ընէ ինք զինքը նաեւ ռամկօրէնը, որ կերտած է նոր պարզ ձեւեր, բառեր եւ բարդութիւններ. եւ գրականը խրացուցած է նախորդ դարու թարգմանութիւններէն նոր ասութիւններ:

Այսպէս Ղ. Փարպեցի իր Թուղթին մէջ.

| | |
|---|---|
| անխոյանաբէկ | հետեւիմ |
| անժամակերութիւն | հոգեփողոտ |
| անուանափոխեմ | ճգնափորձայից |
| անուանադրեմ | յառաջադրեալ |
| գեխասէր | ուշադրել |
| գրուցատրութիւն | չգոլ |
| ընդունակութիւն | վերաբերել |

Յունաբան չարադասութեամբ են՝ «յանմահական փոխեցաւ վիճակ» (190). «ի հողեղէնս վերացաւ ի կառս» (191) են:

Բաբգէն Կաթողիկոսի Թղթին ժամանակակից է Ակակ Կ. Պոլսոյ եւ Պետրոս Աղեքսանդրիայի հայրապետներու կեղծ Թղթակցութիւններու եւ Զենոնի Հենոտիկոնին (482) եւ Անաստաս Կայսեր Հրովարտակին (496°) թարգմանութիւնը ասորերէնէ: Ինչպէս գրութիւններուս վերջը պահուած յիշատակարան մը կը յայտնէ, ասոնք թարգմանուած են 506ին. կ'ըսուի. «Մինչդեռ գրեցաւ Թուղթս այս ցՄաւրկայ Գժ. ամն Թագաւորութեանն

(595) ՉԹ․ ամ է (595—89 = 506) եւ ի Քաղկեդոնի ժողովոյն ՃԽԴ ամ էր (451 + 144 = 595/6)։ Ի հայրապետութեան Հայոց Գէորգեայ եւ ի թուին ՅԻ (871) իշխանաց իշխ(անին) Ա(շոտոյ)․․․»։ (Գիրք Թղթոց, էջ 278)։ Միտքն է՝ թարգմանուեցաւ 506ին, արտագրուեցաւ 595ին․ վերստին օրինակուեցաւ 871ին։ Թղթերս 506ին Հայաստան բերած ըլլալու է Սիմէոն Բեթ-Արշամացի երէց․ եւ ինչպէս կ'երեւայ՝ թարգմանուած են ասորերէնէ նոյն տարւոյն ի Դուին, նոյն այն գրչէն, որ խմբագրած է Բաբգէնի Ա․ Թուղթը։

Արծաթի դարու բարբառը, ինչպէս յաճախ առիթ ունեցանք շեշտելու, ունի անձուկ խնամութիւն ոսկեղէն դարու բարբառին հետ․ բայց ունի իւր ինքնուրոյն առանձնայատկութիւնները, որոնցմով կը տարբերի դասական հայերէնէն։ Թէ՛ ատենին գրուածներու եւ թէ՛ թարգմանութիւններու մէջ երեւան կու գան նոր բառեր, ածականակերտ նոր ածանցներ, նաեւ նոր հիւսուածք նախադասութեան, որոնք անծանօթ են դասական մատենագրութեան։ Ասոնք մասամբ ժողովրդեան բերանը ընդհանրացած բառեր եւ բարդութիւններ են, եւ մասամբ գաւառական ձեւեր․ կայ բաժին մ'ալ, որ յունական ազդեցութեամբ գոյութիւն առած՝ ընդհանրացած է։

Տակաւին անծանօթ են այս շրջանին (450—572) յատկապէս յունաբան տարր-

ները, որոնք առաջին անգամ երեւան կու գան 572էն ետքը։

Այս պարագան կ՚ընձեռէ մեզի սքանչելի կռուան որոշելու ինքնուրոյն եւ Թարգմանածոյ գրական նշխարներու ժամանակի անադանդոյն եզրը, որ այնչափ կարեւոր է պատմական եւ մատենագրական հետազօտութիւններու համար։

Իբրեւ օրինակ կը յիշեմ հոս Բաբգէն Կաթողիկոսի Բ. թուղթը։ Այս գրուածքը Թէպէտ իբրեւ պատմական վաւերագիր Զ. դարու առաջին տասնեակին կը վերաբերի, բայց իբրեւ մատենագրական նշխարք կը պատկանի Է. դարու առաջին տասնեակին։ Այսպէս կը ստիպեն ընդունիլ կարգ մը պարագաներ, լեզուական եւ պատմական, որոնք ժամանակագրօրէն անհամապատասխան են Զ. դարու առաջին տասնեակին։

Թղթին սկզբնագիրը, ինչպէս կը հաստատէ Աբրահամ Կաթողիկոս 608ին [18], այրած ոչնչացած էր 572ին Դունայ Կաթողիկոսարանին հրկիզման ժամանակ։ 607/8ին, երբ պէտք զգացուած է ունենալ Թղթիս պատճէնը, հարկ տեսնուած է Ուրհա գտնուած յունարէն օրինակէ մը նոր Թարգմանել տալ։ Յունարէն բնագրէ Թարգմանութեան հետքերու մէջ նկատելի են նաեւ յունաբան դպրոցի

---

[18] Գիրք Թղթոց, էջ 182—183. հմմտ. նաեւ էջ 164, 177։

*ձեւած նոր բառերը, որոնք առաջին անգամ* 572*էն ետքը երեւցան հայ գրականութեան մէջ: Յունարէն բնագրին հետքերն են.*

1. Շմաւոն երէց *եղած հոս Սիմէոն, Սիմէոնն երէց:*

2. *Բարգէնի Ա. Թղթին «երիցանց» եւ «չինականաց» վերածուած է հոս վիճակաւորաց* (κληρικὸς) *եւ «ժողովրդականաց»* (λαϊκὸς):

3. *«Մերչապուհ Մամիկոնէից եպիսկոպոս» (Ա. Թուղթ) ստորագրած է հոս «Մ. եպ. Տարաւն գաւառի ի Հայս». այս ձեւը միայն յունարէն բնագրի մը մէջ կրնայ մտածուիլ, ուր բացատրուած է օտարներուն նաեւ թէ ո՛ւր կը գտնուի Տարօնը: Այսպէս նաեւ «Վարդ Մամիկոնեան» (Ա. Թուղթ, էջ* 42, 47) *հոս ներկայացուած է «Վարդ Մամիկոնից տէր եւ Հայոց մարզպան»* (48):

4. *«Մեծն Ամպեղիս եպիսկոպոս Քերսոն քաղաքի», «սուրբ քահանայապետն Քերսովնացւոց Ամպեղիս»: Խօսքը, ինչպէս կ'երեւայ Ամփիլոքիոս Սիդէի եպիսկոպոսի առ Լեւոն Կայսր Քաղկեդոնի ժողովոյն դէմ գրած թղթին մասին է*[19]. *անունները խանգարուած*

[19] *Բարգէնի Բ. Թղթին մէջ յիշուած այս անուան շուրջը երկար կանգ առած է* Н. Адонцъ, Ампелій, епископъ Херсоній. Христіанскій Востокъ, II, (1913), *էջ* 175—186. *«Ամպեղիս Քերսոնի եպիսկոպոսը» կը նոյնացնէ Տիմոթէոս Կուզի հետ: Հմմտ. առ այս նաեւ Կարապետ եպիսկոպոս, Կնիք Հաւատոյ, էջ* LXII—LXIII. *Ամփիլոքիոս, Սիդէի եպիսկոպոսի մասին տե՛ս* Dictionnaire d'histoire et de géographie,

կրած են հայերէնէ ասորերէնի վերածուելու եւ ասորերէնէ յունարէն եւ ապա յունարէնէ կրկին հայերէն թարգմանուելու ժամանակ։ Ամփիլոքիոս (Ἀμφιλόχιος) կը տառադարձուի ասորերէն Amphilokios, բայց նաեւ Amphilikos (Հմմտ. Միք. Ասորի Բ. 251 (բնագիր) = 145 (թարգմ.) եւ 315 = 254. կայ նաեւ Amphilosios գրչութեամբ (Բ. 202 = 66)։ Ինչպէս Ամփիլիկոս նոյնպէս Ամպեղիս նոյն անուան կրճատուած ձեւն է։ Ասորերէն ܦ կարող է կարդացուիլ ե՛ւ փ ե՛ւ պ։ Ամփիլոքիոս եպիսկոպոսի աթոռանիստ քաղաքն էր Սիդէ (Σίδη). անուան Քերսոնի փոփոխութիւնը կարելի է մեկնել Սիդէի ասորական գրչութեան աղճատ ընթերցումէն եւ Ամփիլոքիոս նախնական ձեւին վերջին գրին քաղաքի անուան միացումէն. այսպէս. ܐܡܦܝܠܟ(ܘ)ܣ ܕܣܝܕܐ կարդացուած է ܐܡܦܝܠܟܣ ܕܟܪܣܘܢ եւ իմացուած «Ամպեղիս Քերսոնի եպիսկոպոս». Նկատեցինք վերը թէ ասորական ܣ կը կարդացուի երբեմն շփոթմամբ ܒ. Նոյնպէս սովորական է շփոթել ܕ եւ ܪ։ Անունս Ամփիլոքիոս Հայոց համար առ հասարակ նկատուած է դժուարաւ արտասանելի. Կանոնագրքին մէջ առած է Անկիլիքոս, Ակղիոս, Ական եւ ձեւերը (Հմմտ.

---

II (1914), էջ 1348։ Առ Լեւոն Կայսր թուղթը ծանօթ է հատակտորներով միայն. Հմմտ. Միք. Ասորի՝ Ժամանակագրութիւն, Բ., էջ 145 եւ ծան. 6 (Հրտ. Chabot)։

Վիեննայի Թ. 58, 256,ւ 297 ձեռագիրները «Կանոնք Բարսղի)։ Անուններու կրած այս տարօրինակ փոփոխութիւնները կարելի է տեսնել նաեւ Վրաց եպիսկոպոսներու եւ եպիսկոպոսարաններու ցանկին մէջ եւ արդէն կը գանգատի Աբրահամ Կաթողիկոս, թէ անունները «ստոյգ եւ ուղիղ» չեն թարգմանուած»։ Բարգէնի Բ. թղթին մէջ շատ անուն «սրբուած» է այս խմբագրչէն (Վրթանէս)։

5. Հաբա տարական ձեւը, որ կը գտնուի Բարգէնի Ա. թղթին մէջ, հոս յունական տառադարձութեամբ է՝ Իբա(ս). այսպէս են նաեւ Աթանասիոս, Բաբսիլիոս, Յուլիոս, Ամպրոսիոս (-պ- կ'ենթադրէ տարբերէն Ֆ), Յովհաննէս, Ատտիկոս, Թէոփիլի(ո)ս, Կիւրղոս, Պրոկղոս են։

6. «Աստուածանշան արք» հաւանօրէն յուն. θεότυπος կ'ենթադրէ. «Իգնատիոս որ յառաքելոցն տունկ բարեպտուղ» (εὔχαρπος). համանունն, ὁμώνυμος (Փարպ. ունի «միանուն»), շարագրեմ, συγγράφω (առաջին անգամ գործածուած Փիլոնի մէջ), վերջանամ, ὑστερίζω (առաջին անգամ գործածուած Փիլոնի մէջ)։

7. «Եւ եպիսկոպոսաց Հայոց որք ըստ գաւառաց եւ ըստ տանց». կը սպասուէր հոս, որ նշանակուէին թղթին ստորագրող

եպիսկոպոսներու անունները. բայց որովհետեւ անոնք թարգմանութեան մէջ շատ եղծուած էին տառադարձութեամբ եւ անճանաչելի մնացած, նոր թարգմանութեանս մէջ դուրս ձգուած են. «Եւ զի պայման նամակն՝ որ Հայերէն գրով էր, յապստամբութեանն (572) կորեաւ, եւ թարգմանեցաւ այս յՈւրհայ քաղաքի ի հոռոմ գրոյ. քանզի եւ նոքա ունէին ի մէնջ. եւ ստոյգ եւ սուրբ, որպէս արժան էր, չկարացին թարգմանել...: Բայց թէ կամիք անուամբք եպիսկոպոսացդ՝ որպէս գրեալ են, կարէք գստոյգ անուանս եպիսկոպոսարանացն գտանել. եւ զայլոցն եւս, քանզի եւ մեք զմերս այդ տարադումարթացաք գտանել» [20]:

Մեր ձեռքը հասած այս Բ. թղթին մէջ այժմ կը պակսի անուանացանկը, բայց այն անշուշտ յէականս նոյն ըլլալու է այն ցանկին հետ, որ պահուած է Ա. թղթին մէջ. վերջինս կ'երեւայ թէ չունէր Աբրահամ աչքի առջեւ:

Տեղը չէ հոս չեշտելու թէ Աբրահամ բոլորովին սխալ կարծիք ունի Ա. եւ Բ. թղթերու յառաջադայութեան եւ Վրաց եւ Աղուանից եկեղեցիներու տուած «պայմաննամակի»

[20] Գիրք թղթոց, էջ 183: Տես եւ վարը, էջ 102—103:

*մասին : Բաւական ըլլայ ըսել, որ իւրաքանչիւր երկիր առանձին առանձին, եւ ոչ ի մի ժողով հաւաքուած տուած են Սիմէոն Բեթ Արշամացւոյ իրենց դաւանութեանց մասին «պայման նամակ» : Այս մասին առիթ պիտի ունենանք խօսելու այլուր :*

*Արծաթի դարը, որ իւր վերելքն ունէր սկսեալ 450էն եւ մայրամուտը 572ին, տարածեց անշուշտ իւր վերջալոյսը նաեւ այս գծուած սահմանէն անդին : Ուր չէր հասած Յունարան Դպրոցի ազդեցութիւնը, հոն կ՚ապրէր հին Դպրոցը հաւատարիմ աւանդական ուղղութեան : Հեղինակներ, որոնք ծլած եւ զարգացած էին 572էն յառաջ, շարունակեցին իրենց գրական գործունէութիւնը նաեւ այնուհետեւ անվրդով : Թէպէտ իբրեւ ուսումնասէրներ չարհամարհեցին հրապարակի վրայ դրուած նոր գրականութիւնը, բայց եւ այնպէս չենթարկուեցան անոր նորասիրութեան : Ասոնց թուին մէջ են Եղիշէ, Վիրոյ Կաթողիկոս Աղուանից, Վրթանէս Քերթող (մինչեւ 607), Կիւրիոն Կաթողիկոս Վրաց են :*

*Արծաթի լեզուն իւր պաղպաջուն փայլով երեւան կու գայ մանաւորապէս Եղիշէի եւ Վիրոյ Կաթողիկոսի պատմական եւ ճառական գրուածներու մէջ : Երկուքն ալ հայ Դպրոցի աշակերտներ են, մարզուած դասական հեղինակներու յաճախակի ըն-*

*թերցմամբ, ունին ճգնում նմանելու դասա-կաններուն, բայց կը յայտնեն ակամայ թէ արծաթի դարուն զաւակներն են: Ունին ա-րուեստը ոսկեզօծելու արծաթը, բայց իրենց ճարտարութիւնը չի թափանցեր մանր ծալ-քերն ու խորշերն ալ, ուսկից արծաթն է որ կը փայլատակէ:*

*Եղիշէի Հայոց պատերազմի Պատմու-թիւնը իր անաղարտ ձեւի մէջ չէ հասած մեր ձեռքը. դժուար է հետեւաբար ստուգու-թեամբ ընել, թէ յանդարանութեան հետ-քերը, որոնք կը նշմարուին հոն, ի՞նչ չա-փով հարազատ են իր գրչին: Ինչպէս ալ մեկ-նենք այս կէտը, կը մնայ ստոյգ, թէ յանձին Եղիշէի եւ Վիրոյի կը լուսաւորէ արծաթի դարն իր մայրամուտքի ճառագայթներով երկու դէմքեր, որոնք մատենագրական ար-տադրութեամբ ա՛յնպէս աղքատ շրջանին պիտի մնան դարուն պարծանքը:*

Նկատմամբ Յունաբան Դպրոցի ծագման եւ ժամանակի մշուշի մէջ էր ցայսօր հայ բանասիրութիւնը։ Հրապարակի վրայ շրջող հոյլ մը կեղծ գրութիւններու կը մթագնէին աչքերը, կը կաշկանդէին մտքերը տեսնելու եւ զատելու հայերէն լեզուի պատմական զարգացումն այնպէս, ինչպէս կատարուած է իրականութեան ծոցը։ Երկու խաչընդոտներ մանաւորապէս արգելք կը հանդիսանային ուղիղ դատողութեան. Եղիշէ եւ Մովսէս Խորենացի։ Երկու պատմագիրներս ալ առաւել կամ նուազ չափով մարզուած Յունաբան Դպրոցի մէջ, կը ներկայանային Ե. դարու երկրորդ կէսի մատենագիրներ։ Քանի անխախտ էին անոնք իրենց դիրքերու մէջ, չէր համարձակեր բանասիրութիւնը վճռականօրէն յայտնել իր հետազօտութիւններուն արդիւնքը։ Կը զգար թէ կանուխ է Դպրոցիս հիմնարկութիւնը զետեղել Ե. դարու երկրորդ կէսին. հայերէն լեզուի մեծ յեղաշրջութիւնը, զոր յառաջ բերաւ Յունաբան Դպրոցը, Զ. դարու վերջին քառորդէն, ճշդագոյն եւս Է. դարէն սկսեալ ցոյց կու

տար իր հետքը հայ մատենագրութեան մէջ: Բայց Եղիշէ եւ Մովսէս Խորենացի, որոնք ըստ աւանդութեան Ե. դարու երկրորդ կէսին կը վերաբերէին, կը թուլացնէին գրիչը արտայայտուելու ազատ:

Այսօր բարեբախտաբար բարձուած են հրապարակէն այս խափանարար խոչընդոտները. Եղիշէ իր պատշաճաւոր տեղն ունի Զ. դարու վերջին եւ Մովսէս Խորենացի Թ. դարու առաջին քառորդին: Կարող է այժմ բանասիրութիւնը արտայայտուիլ համարձակ եւ հանել իր եզրակացութիւնները յեցած մատենագրական եւ լեզուագիտական ապացոյցներու վրայ:

Արդէն ժամանակ առ ժամանակ լսելի ըրած էին բանասէրներէն ոմանք այն միտքը, թէ անձուկ իմաստով Յունաբան Դպրոցը կամ յունաբան լեզուով թարգմանութիւնները Է. դարու սկիզբը միայն տեղ ունին հայ մատենագրութեան մէջ. ուրիշներ կը միտէին Ե. դարու ընթացքին ենթադրել այդ դպրոցի հիմնարկութիւնը: Կարող ենք այժմ խակական ժամանակը ամփոփել 572—603 երեսնամեայ ժամանակամիջոցի մէջ:

Յունաբան Դպրոցի ծագման, ուղղութեան եւ արտադրած թարգմանութիւններու մասին դասական աշխատութիւն մը տուաւ վերջերս ուսուցչապետ Յ ա կ ո բ Մ ա ն ա ն-

*դեան*[1]*: Մանրակրկիտ եւ խղճամիտ ուսումնասիրութիւն մը, ուր կը տարրալուծուին Յունաբան Դպրոցին արտադրութիւնները մատենագրական եւ լեզուագիտական հայեցակէտներով:*

*Մանանդեան Թարգմանութիւններուս լեզուական յատկարանութիւնները նկատի առնելով կը զանազանէ երեք տարբեր խումբեր: Ասոնք են.*

Ա. խումբ. *կ'ամփոփէ իր մէջ՝*

ա. Դիոնեսիոս Թրակացւոյ Արուեստ քերականութեան:

բ. Գիրք Պիտոյից:

գ. Փիլոն Եբրայեցւոյ գրութիւնները:

դ. Իրենէոսի գրութիւնները:

*Լեզուական ուսումնասիրութեամբ ձեռք բերած եզրակացութիւններս, կը գրէ Մանանդեան, «համարձակութիւն են տալիս ինձ պնդելու, որ վերոյիշեալ թարգմանութիւնները՝ իրանց բառամթերքով եւ լեզուական առանձնայատկութիւններով, կազմում են յունաբան թարգմանութիւնների յատուկ մի խումբ եւ նրանց ժամանակը պէտք է դնել Տիմոթէոս Կուզի Հակաճառութեան թարգմանութիւնից առաջ, ուրեմն ոչ ուշ քան Զ. դարի առաջին կէսը»* (էջ 107):

*Դիոնեսիոս Թրակացւոյ Քերականու-*

---

[1] Յ. Մանանդեան, *Յունաբան Դպրոցն եւ նրա զարգացման շրջանները. քննական ուսումնասիրութիւն: Վիեննա* 1928:

թիւնը[2], որ ըստ Մանանդեանի այս խմբին մէջ առաջնութիւնն ունի, հրապարակի վրայ դրաւ լեզուական այնպիսի նորաձեւութիւններ, որոնք ոչ միայն չէին լսուած նախընթաց ոսկի եւ արծաթի դարերուն, այլ եւ ժամանակակիցներու համար խորթ էին եւ անլուր: Թարգմանիչը նպատակ ունենալով հայացնել յունարէն լեզուի քերականութիւն մը՝ հետեւած է բառ առ բառ յունարէն ասութիւններու եւ փորձած յունական բառակազմութեան տառացի նմանելով կերտել համապատասխան բառակազմիկ նախադիրներ եւ անոնց օժանդակութեամբ հնարել բարդաձեւեր: Եւ այս ոչ միայն ուր ի բնէ աղքատ էր հայ լեզուն, մանաւորապէս քերականական-գիտական բառերու մէջ, այլ եւ հոն, ուր ունէր հայերէնը առատութիւն անչափ անդրադարձնելու յունական մտքերը[3]: Նաեւ թարգմանիչը ունէր բաւականէն աւելի հմտութիւն մայրենի լեզուին մէջ: Այս յան-

---

[2] Հրտ. Ն. Ադոնց՝ Діонисій Өракійскій и армянскіе толкователи. Петроградъ, 1915: Ընդարձակ ներածութեան մէջ քննութեան առնուած են նաեւ նորաձեւ յունաբանութիւնները, որոնք յընթացս դարերու հասարակաց ստացուածքը կ՚ըլլան:

[3] Այսպէս՝ ἀναγιγνώσκω հայացուցած է վերծանեմ (հմմտ. ծան-եայ) փոխանակ ընթեռնում, կարդամ, բայց ἀναλογία համեմատութիւն փոխ. վերաբանութիւն, ինչպէս ունին ուրիշները. σύμφωνοι, բաղ-ա-ձայն, շար-ա-ձայն, բայց նաեւ դատական ոճով՝ ձայնակից, ձայնորդ. ἀποτέλεω բաց-ա-կատարել, բայց նաեւ անպակաս իլուզանել, կատարել: ἐντριβής ներ-կուռ:

*դուզն ձեռնարկութիւնը ի սկզբան անշուշտ գիտնական փորձ մըն էր եւ նպատակ կը հետապնդէր հայ մտքին մերձենալի ընել յոյն լեզուին բառակազմութեան օրէնքը եւ այսու դիւրացնել նոյնին ուսումը* [4]*: Եւ արդէն յոյն լեզուի համար պատրաստուած քերականութեան մը տառացի թարգմանութիւնը, առանց որ եւ է փորձի՝ համաձայնցնելու հայերէն լեզուի սեպհականութիւններու իբրեւ հայերէնի քերականութիւն, չէր կրնար ուրիշ նպատակի ծառայած ըլլալ:*

*Այս առաջին փորձն էր նոյնասեռ գրականութեան մէջ: Յունարէն նախադիրներու փոխարէն ճարտարութեամբ յարմարցուած են հայկականներ. առ այս առատ մատակարարած է հայ բառամթերքը, ինչ ինչ կէտերու մէջ թերեւս նաեւ գաւառաբարբառները: Ուր քաջահնչիւն չեն երեւցած կերտուած նախադիրները՝ փոխանակուած են ուրիշներով: Այսպէս՝*

| | |
|---|---|
| *չար—* | *չար-եմ* |
| *չաղ—* | *չաղ-եմ* |
| *մատ—* | *մատ-չիմ* |
| *յար—* | *յար-եմ* |
| *պար—* | *պար առնում* |

---

[4] *Օրինակի համար դիւրացուցած չէր կրնար ըլլալ հայ ըմբռնման իմաստը յունարէն բառին՝* παρα-συν-απτικοί տար-բաղ-մատք *թարգմանութեամբ, կամ* ἐπι-συν-δέουσιν *մակչաղկապեն* (35), ἐμπεριλαμβάνω, Ներպարառնել (4) Ներքակառնել (14) *եւն:*

բակ— բակ առնում
ստոր— ստոր–ին
ընթ— ընդ–ունիմ, ընդ–մտանեմ
վեր— ի վեր
ներ— ի ներքս
արտ— արտաքս
գեր— գերիվերոյ
անդր— անդր–էն դառնամ եւն
բաց— ի բաց եւն

Այս եւ նման արմատներէն յօրինուած են նախադիրներս[5].

| | | | |
|---|---|---|---|
| առ— | πρός | պար—, բակ— | περί |
| ապ—, բաց— | ἀπό | ընթ—, ստոր— | ὑπό |
| արտ— | ἐκ | մակ— | ἐπί |
| ներ— | ἐν | վեր— | ἀνά |
| բաղ—, փաղ—, շաղ—, շար—, ջոկ— | σύν | նախ— | πρό |
| մատ—, յար— | παρά մօտ | գեր— | ὑπερ |
| տրամ | διά | դեր—, փոխ— | ἀντά |

Ինչ որ հոս իբրեւ փորձ կը ներկայացուէր թարգմանիչէն, նոյնը կը գտնէր ժամանակակից հելլենասէրներու քով կատարեալ հաճոյութիւն: Միանգամ յերիւրուած նախադիրներն ու անոնց զօրութեամբ կազմուած գի–

[5] Հմմտ. Ն. Ադոնց, անդ, էջ CLXXXIV:

*տակին բառերը նորուս աշակերտներու մըտքին մէջ կը չինէին տեղ. անոնք ապա յունագէտ նոր սերունդի գրչի տակ, անոնց նոր արտադրութիւններու մէջ անփոփոխ պիտի կիրարկուէին: Յունաբան Դպրոցի հիմը դրուած էր Դիոնեսիոս Թրակացւոյ Քերականութեան Թարգմանութեամբ:*

*Առանց տարակուսի այն բոլոր գործերը, զորոնք Մանանդեան կը դասէ Ա. խումբին տակ, հայ Դիոնեսիոսի առաջին աշակերտներու արտադրութիւններն են, լոյս տեսած ուսուցչին անմիջական հսկողութեան տակ:*

*Յունաբան Դպրոցի* Երկրորդ խումբը *կը կազմեն հետեւեալ գրութիւնները.*

ա. Տիմոթէոս Կուզի Հակաճառութիւն:

բ. Արիստոտելի Յաղագս մեկնութեան կամ Պերիարմենիաս:

գ. Արիստոտէլի Ստորոգութիւնք:

դ. Պորփիւրի Ներածութիւն:

ե. Յամբլիքոսի Մեկնութիւնն Յաղագս մեկնութեան գրոցն Արիստոտելի:

զ. Յամբլիքոսի Մեկնութիւն Ստորոգութեանցն Արիստոտելի:

*«Թէ Ստորոգութեանց եւ Յաղագս մեկնութեան գրոց հայերէն բնագրում եւ թէ Յամբլիքոսի մեկնութիւններում՝ յունաբան պաշարն եւ լեզուական առանձնայատկութիւններն այնքան մօտ են ու նման իրար, որ առանց վարանման ու վճռականօրէն կարելի*

*է այդ թարգմանութիւնները համարել մի եւ նոյն թարգմանչի աշխատութիւն»*, *կը գրէ Մանանդեան*: *Անոնք ունին հազուագիւտ ու առանձնայատուկ բառեր*, *որոնք առաջին անգամ այս գրուածներու մէջ երեւան կու գան* [6]: *Այս Խումբին միայն յատուկ է* փար– *բայակերտ նախադիրը*՝ Փարաքարձեմ, Փարադրեմ, Հետեւանամ (*փոխ. հետեւիմ*): *Կը հետեւի ընդհանրապէս Ա. Խումբի ուղղութեան եւ անոր ձեւակերպած բառերուն. բայց ունի սեպհականնորութիւններ ալ. այսպէս*՝ Մակացու, մակացելի, մակացութիւն (ἐπιστημή *գիտութիւն*). Ներհակ (ἐνάντιος). նեհակութիւն. Տարբեր (διάφερος), տարբերեմ, տարբերութիւն (*փոխարէն Ա. խումբն ունի*՝ զարմանազան, առանձնանամ, զանազանութիւն *եւն*):

*Ուշադրաւ է Բ. խումբիս առանձնայատկութիւններէն*՝ Նախերգան (προοίμιον) *բառը* [7]. *Ա. խումբը* (*Պիտոյից գիրքը*) *կը հայացնէ զայն* Նախաշաւիղ *բառով*, *ճշգիւ ըմբռնելով յունարէնի իմաստը*՝ πρὸ = նախ *եւ* οἶμος = շաւիղ: *Բ. խումբի թարգմանիչը հասկցած է* προ = նախ *եւ* οἴμη = երգ *եւ այսպէս կազմած է* նախերգան:

---

[6] *Հմմտ.* Թուելութիւն, Կարութիւն (δύναμις), իրակութիւն, իրակեմ, իրաւորեմ, Ապուսեմ, Արտաքնորդական, Առնշանակեմ, Բացերեւացեմ, Հետեւութիւն, Հակաճառեմ, Ներանձնաւոր *եւն*:

[7] *Հմմտ. Մ ա ն ա ն դ ե ա ն*՝ *անդ*, *էջ* 133:

*Այս խումբին ինքնայատուկ է նաեւ* շար- (*փոխ.* շաղ-) *նախադրին գործածութիւնը. համմտ.* Շար-առեմ (*συλλαμβανώ = Ա. Խումբ՝ շաղառակ*), Շարամանեմ (*συμπλέχω = Ա. Խումբը՝ շաղապատեմ*)*. թէեւ ծանօթ է իրեն Ա. խումբէն* Շաղկապը:

Գ. խումբը *կը կազմեն՝*

ա. Դաւթի Սահմանք Իմաստութեան:

բ. Դաւթի Վերլուծութիւն Ներածութեան Պորփիւրի:

գ. Դաւթի Առածք հինգ եւ Վասն Բաժանման:

դ. Մեկնութիւն ԺԴ. գլխոց Արիստոտելի ի Վերլուծականն:

ե. Մեկնութիւն Ստորոգութեանցն Արիստոտելի (*ընծայեալ Էլիասայ իմաստասէրի*):

զ. Հատուած ինչ Մեկնութեան Ստորոգութեանցն Արիստոտելի:

*Այս խումբի Թարգմանիչները «մեծ չափով օգտուել են յունաբան նախկին երկու խմբի թարգմանութիւններից. ուստի եւ նրանց մէջ թէ յունաբան լեզուն աւելի մշակուած է ու կաղապարուած եւ թէ յունաբան բառապաշարը շատ աւելի հարուստ է ու ճոխ, քան նախորդ թարգմանութիւններում[8]». Դիոն. Թրակացւոյ Քերականութեան յատուկ գիտական բառերը, յաճախ նոյնութեամբ կը գործածուին հոս. կան նաեւ կարգ*

[8] *Մանանդեան՝ անդ, էջ* 144:

*մը Բ. Խումբին սեպհական իմաստասիրական բառեր, որոնք հոս ալ կը կիրարկուին*[9]:

*Բայց այս խումբն ալ ունի իր առանձնայատուկ բառերը, որոնցմէ յիշուին հոս.* Անհատել (*ἀτομοῦν*), Բացագործեմ, Բացալինիմ, Բնաբանել (*φυσιολογεῖν*), Բնաբանական, բնաբանութիւն (*Ա. Խումբ*՝ Բնախօս, բնախօսութիւն). Եզրակացութիւն (Եզրակութիւն), եզերակացութիւն, *նաեւ* Բաղեզերումն, բաղեզերութիւն (*συμπέρασμα*). Երեւակայեմ, երեւակայութիւն (*φαντασία*). Համալսարան (*ἀκροατήριον*), Հանուր, հանրական, Մակամտածութիւն (*ἐπίνοια*). Յարածեմ, Յարակացութիւն, հակայարակացութիւն, հակայարսաստութիւն, *նաեւ* ընդդիմայարակացութիւն (*ἀντιπαράστασις*). Յարատրեմ, Յարաքարշեմ. Ներշնչական, ներշնչաւոր, շնչական (*ἔμψυχος. Ա. եւ Բ. խումբերն*՝ Ներանձնաւոր. *Գ. խումբն անգամ մը միայն*՝ Ներանձնական). Շարամերձիմ (*συνάπτω. Ա. եւ Բ. խումբերը*՝ Շարամօտիմ. *Բ. նաեւ* Շարայարիմ). Վերաբանութիւն (*ἀναλογία. Ա. խումբը*՝ Համեմատութիւն). Տեսակարարեմ, տեսակարար (*Ա. եւ Բ. խումբերը*՝ Տեսակագործեմ):

*Նկատմամբ թարգմանիչներու ուշադիր կ'ընէ Մանանդեան* (*էջ* 161 *եւ շար.*), *թէ* ա *եւ* բ *թերեւս նաեւ* դ *միեւնոյն թարգման–*

[9] *Անդ*, *էջ* 154:

*չէն կ՚երեւան. բայց ուրիշ է գ. իսկ Ե աւելի ուշ ժամանակէ:*

*Յունաբան Դպրոցի* Դ. խումբ *կարելի է համարել՝*

ա. Նոննոսի Մեկնութիւնն Առասպելաց:

բ. Արիստոտելի Յաղագս Աշխարհի:

*Մանանդեան (էջ* 236—246) *այս երկու գրը-ուածներու թարգմանութիւնը կը համարի կատարուած Բ. եւ Գ. խումբերէն ետքը:*

*Նկատմամբ յիշեալ խումբերու թարգ-մանութեան ժամանակի՝ իրաւամբ կը հաս-տատէ Մանանդեան, թէ Ա.—Գ. խումբերը թարգմանուած են Ը. նաեւ Է. դարերէն յա-ռաջ, քանի որ անոնք ծանօթ եղած են Ը. դա-րուն Խոսրով վարդապետին եւ Է. դարու սկիզբը Վրթանէս Քերթողին: Ժամանակի յետնագոյն եզրը աւելի անձկացնելով Մա-նանդեան, կը համարի թէ գոնէ Տիմոթէոս Կուզի Հակաճառութեան թարգմանութիւնը կարելի է ապահովութեամբ զետեղել* 552—564 *տարիներու մէջ (էջ* 97—101)*: Մանան-դեանի կռուանն է Դիոսկորոս Աղեքսանդրաց-ւոյ մահուան տարին, զոր կը յիշէ Տիմոթէոս՝ «Թովմ Ն. Սեպտեմբեր Բ. Հոռի Զ.»: Յի-շեալ ամիսներու օրաթուերը սակայն տոմա-րագիտական հաշուով զիրար չեն բռներ: Մանանդեան կ՚առաջարկէ կամ «ՀՈՌԻ Զ.» ուղղել «ՀՈՌԻ ԻԶ.» որուն համաձայնու-թիւնը «Թովմ Ն. եւ Սեպտ. Բ.» ամիսներուն հնարաւոր է միայն* 552—556 *տարիներուն,*

եւ կամ կարդալ «Թուղթ Է. Սեպտ. Դ. Հուլի ԻՋ.», որով կը ստացուին 560—564 տարիները։ Ժամանակագրօրէն կը համապատասխանեն ստացուած տարիներուն de rebus Armeniae գրուածքին եւ Փոտ պատրիարքի հաղորդած տեղեկութիւնները նկատմամբ Հականառութեան թարգմանութեան։

Որչափ ալ սրամիտ է Մանանդեանի սրբագրութիւնը եւ ժամանակի մերձաւորութիւնը հաւանական, բայց ամենայնիւ ճիշդ չէ ժամանակի եզրը, եւ ինչպէս ինծ կը թուի՝ իրր 40 տարւով կանուխ։

Տիմոթէոս Կուզի Հականառութիւնը դժուարաւ թէ է. դարէն յառաջ Հայոց մատչելի եղած ըլլայ։ Առաջին անգամ 606ին յիշատակութիւն կ'ըլլայ անոր մասին հայ մատենագրութեան մէջ, եւ այն այնպիսի արտայայտութեամբ մը, որ անոր նոր հրապարակ ելած ըլլալը զգալ կու տայ։ 606ին կը գրէր Մովսէս Ցուրտաւի եպիսկոպոսը Կարբիէն առ Վրթանէս Քերդող. «Զգիրս երանելւոյն Տիմոթէոսի բովանդակ ստացայ [10]»։ Հրապարակին անծանօթ էր տակաւին Հականառութիւնը. Վրթանէս Քերդողն է, որ կը բազմացնէ զայն եւ կը տարածէ։

Նկատի առնելով այս պարագան՝ պիտի առաջարկէի Դիոսկորոսի մահուան տարին, որ առանց տարակուսի սխալագրութեամբ

[10] Գիրք Թղթոց, էջ 140. հմմտ. նաեւ 118, 126։

*աւանդուած է Տիմոթէոս Կուզի Հակաճառութեան այժմեան օրինակներու մէջ, ճշդել նոր սրբագրութեամբ:*

*Յիշեալ տեղիքը այսպէս աւանդուած է ինձ ծանօթ օրինակներու մէջ.*

*Հակաճառութիւն՝*

*էջ* 335. «Թուղթ է.երդ. Սեպտեմբերի Բ. Հոռի վեցերորդն»:

*էջ* 277. «Թուղթ իւթներորդ. Սեպտեմբերի երկրորդ. Հոռի վեցերորդ»:

*Կնիք Հաւատոյ՝*

*էջ* 112. «Թուղթ իւթներորդ. Սեպտեմբերի Բ. Հոռի վեցերորդն»:

*էջ* 357. «ԹՈՎԹ Ե. Սեպտեմբեր Բ. Հոռի Զ.»:

ԹՈԽՂԹ *երիցս այսպէս գրուած՝ առանց տարակուսի գրչի վրիպակ է. ուղիղն է* ԹՈՎԹ (*θώθ*)*. սկզբնագրին մէջ կարող էր նաեւ* ԹՈՎԻԹ (*θωύθ*) *եղած ըլլալ, որմէ անհմուտ գրչի տակ դիւրաւ կրնար ծագիլ* ԹՈԽՂԹ *ընթերցուածը:*

ԵԽԹՆԵՐՈՐԴ *երկիցս այսպէս եւ անգամ մը Է. գրչութեամբ աւանդուած է: Կը տեսնուի անգամ մըն ալ Ե. տարբերակը, որ կրնար Է.ի սխալագրութիւնը համարուիլ, եթէ պատահարար տօմարական հաշուով «Սեպտեմբեր երկրորդի» հետ չհամաձայնէր:*

ՍԵՊՏԵՄԲԵՐ *անգամ մը միայն այսպէս*

*պահպանուած է. միւս երեք դէպքերուն «Սեպտեմբերի» է, անշուշտ սխալագրութեամբ: Աստրին ունի «Սեպտ. Զ.»:*

ԵՐԿՐՈՐԴ *երիցս գրուած է Բ:*

ՀՈՌԻ *բոլոր դէպքերուն անփոփոխ:*

ՎԵՑԵՐՈՐԴՆ *անգամ մը միայն Զ. համառօտագրութեամբ:*

*Այս պատկերէն կը տեսնուի թէ օրինակողները բաւական ազատ ընթացած են օրինակութեան մէջ, ըստ կամի համառօտելով եւ ընդարձակելով, նաեւ մանր փոփոխութիւններ մուծելով:*

*Եթէ ընդունինք թէ ուղղագոյն ընթերցուածն է* Թովթ ութներորդ, *հարկ պիտի ըլլայ տօմարագիտական զուգակցութիւն մը գտնելու համար կա՛մ Սեպտեմբեր* երկրորդը *ուղղել* չորրորդ. *եւ կա՛մ իբրեւ ուղիղ՝ նախամեծար համարիլ* Թովթ Ե. Սեպտեմբեր Բ: *Բայց այսպէս կը ստանանք հակաժամանակագրական արդիւնք մը այնու, որ Դիոսկորոսի մահուան օրը արտաքին աղբիւրներէ կը նշանակուի 454, Սեպտեմբեր 4ին, այն է* Թովթ Է. Սեպտեմբեր Դ[11]:

[11] *Թէոփիստեայ 455ին յունարէն գրած եւ այժմ ասորերէն խմբագրութեամբ պահուած Դիոսկորոսի վարքին մէջ* (F. Nau, Histoire de Dioscore, patriarche d'Alexandrie, écrite par son disciple Théopiste. Journal Asiatique, 1903, p. 5—108, 241—310) *մահուան օրը կը նշանակուի* «Ելուլ (*= Սեպտ.*) ամսոյն 4ին, գիշերուան ժամը 11ին» (*Հմմտ.* Die sogenannte Kirchengeschichte des Zacharias Rhetor, in deutscher Übersetzung herausgegeben von K.

*Հայ ձեռագիրներու վրիպակը ըստ ամենայն հաւանականութեան պէտք է փնտռել ոչ թէ* Թովթ Է·, *այլ* «Սեպտեմբեր Բ» *ընթերցուածին մէջ: Վրիպակը սպրդած ըլլալու է շատ կանուխ ժամանակ մը, այնպէս որ այժմեան ծանօթ օրինակները իրենց գաղափարօրինակին մէջ արդէն գտած են նոյնը:* «Սեպտեմբեր Դ» *ընթերցուածին* «Սեպտեմբեր Բ» *փոփոխութեան ժամանակ, ինչպէս կ'երեւայ, նաեւ մերձաւոր Հայկական ամսանունը կրած է աղճատում:*

*Սկզբնագիր օրինակը կ'ենթադրեմ եղած ըլլալ՝*

ԹՈՎԹ Է· ՍԵՊՏԵՄԲԵՐ Դ· ՍԱՀՄԻ Զ·

*Կարդացուած է օրինակողէն՝*

---

Ahrens und G. Krüger, Leipzig 1899, *էջ* 304): *Իսկ Պետրոս Վրացւոյ վարքին մէջ կ'ըսուի թէ վախճանած ըլլայ* Յլուլ (= *Սեպտ., Հոս Թո՞վթ) ամսոյն եօթնին* (R. Raabe, Petrus der Iberer, Leipzig 1895, *էջ* 63):

*Հակաճառութեան վերյիշեալ տեղիքը, «ի գրեցելոյ առ Սեկունդինոն թղթոյ ի Գանդրայ յեքսորաց· ուր (Դիոսկորոս) զընթացսն կատարեաց ի Քրիստոս· Թուղթ եւթներորդ, Սեպտեմբերի երկրորդ, Հոռի վեցերորդ»* (*էջ* 277) *ասորերէն թարգմանութեան մէջ* (British Museum, Add. 12156 *գրուած* 562*էն յառաջ*) *աւանդուած է պարզապէս «...ուր զընթացսն կատարեաց ի Քրիստոս,* Սեպտեմբերի ամսոյ Զ» (E. Schwarz, Codex Vaticanus gr. 1431, eine antichalkedonische Sammlung aus der Zeit Kaiser Zenos, München 1927, *էջ* 125 = Abhandlungen der Bayerischen Akademie der Wissenschaften, phil.-hist. Klasse, XXXII. Band, 6. Abh.)- *Շվարց նկատելով որ Հայերէն Ձեռագրին մէջ* Թուղթ (*փոխ.* Թովթ) *ըսուած է, համարած է թէ «Սեպտեմբերի Զ» թղթոյն գրութեան թուականն ըլլայ:*

ԹՈՎԹ Է. ՍԵՊՏԵՄ. ԲԵՐՈՐԴ ՀՄԻ Զ.
*եւ ուղղուած՝*

Թովթ ութներորդ Սեպտեմբեր երկրորդ
Հոռի վեցերորդ:

*Այս սրբագրութեամբ կը ստանանք ճըշդիւ Դիոսկորոսի մահուան օրը՝ «Թովթ Է. Սեպտեմբեր Դ.» այս օրուան ուղիղ կը համապատասխանէ տոմարագիտական հաշուով «Սահմի Զ.»* 601—603 *տարիներուն: Ուստի Տիմոթէոս Կուզի Հակաճառութեան թարգմանութիւնը կատարուած է* 601—603 *տարիներուն:*

*Ստացուած արդիւնքը քան ամենայնի համաձայն է ժամանակակից պարագաներուն: Ժամանակ մը, երբ «բազում գիրք մեծարանաց անօրէն ժողովոյն (Քաղկեդոնի) հասեալ են ի տեղիս տեղիս, ուղղափառ ուսուցանելով զչարափառութիւնն Մարկիանոսի եւ ժողովոյն Քաղկեդոնի*[12]*», հարկ տեսնուած է հրապարակ հանել այս հոսանքին դէմ հակաճառական եւ միաբնեայ վարդապետութեան ջատագով գրութիւններ. եւ այս մտքով է, որ կը գրէ Վրթանէս նոյն թղթին մէջ, թէ «ետու բերել զՊատճառս ժողովոյն (այ. ժողովոցն) եւ այլ հաւաստարս հաւատոյ զերանելի վարդապետացն եւ զընդդիմակ(ց)աց*

[12] *Թուղթ շրջագայական Վրթանէս Քերթողի առ Եկեղեցին Յուրտաց, յանուն Մովսէս եպիսկոպոսի* (606). *Գիրք Թղթոց, էջ* 124. *հմմտ. Հանդ. Ամս.* 1910, էջ 39—41:

Հերձուածողացն, զյոլովագոյնն այսր տեղեկացիք» (էջ 118)․ «Եւ որ յանդիմանեն եւ նզովեն զԺողովն (Քաղկեդոնի) եւ զՏումարն՝ են Թուղթն Զենոնի ուղղափառ թագաւորի որ կոչի Հենոտիկոն եւ Թուղթն երանելոյ Անաստասայ թագաւորի եւ Գիրք Տիմոթէոսի Աղեքսանդրացւոյ եւ Թուղթ Յովհաննու եպիսկոպոսապետի եւ Թուղթ Պետրոսի Անտիոքացւոյ եւ Պատճառն խիկ եւ այլ բազում թուղթք ուղղափառաց։ Եւ մի զարմանար, սիրելի, թէ զի՞ ծաւալեցաւ ստութիւն եւ նուաղեաց ճշմարտութիւն...» (էջ 126)։

Այս գրութիւններէն մաս մը՝ ինչպէս Հենոտիկոնի եւ Անաստասի եւ Պետրոս Անտիոքացւոյ թղթերու թարգմանութիւնը հին է, բայց նոր են միւսները, որոնց թուին մէջ նաեւ Գիրքն Տիմոթէոսի։ Այս գրոց մասին է նաեւ Սորմէնի ակնարկութիւնը, որ պատասխանելով Վրթանէսի հրաւէրին գալ եւ վիճաբանել, կը գրէ․ «Իմացաք եւ զասացեալդ ձեր զինուորական կարգի ... եթէ Առաքեցէ(ք) զոր կամիք, թող գան, զհարցն հաւատ կարգեալ տեսանեն։ Եթէ զԴիոսկորոսին ասէք, զՏիմոթէոսին զԱղեքսանդրացւոյ որ ընդդէմ բարեպաշտութեան հոգեկիր հարցն յանդգնեցան ասել, ուստի եւ մերժեցան ի սրբոց Եկեղեցւոյ ... զայդ եւ մեք քաջ գիտեմք, եւ ունիմք ի կապարճս հաւատոյ մերոյ ճշմարտի՝ որպէս զսուր եւ զօ-

տար եւ զանգործ նետս. այլ ինչ եթէ ունիք զոր ոչ գիտեմք, որ ոչ է հասեալ առ մեզ, տուք բերել»[13]: Ինչպէս կ՚երեւայ խօսքերէս, նաեւ Սոմէն գիտէ թէ Տիմոթէոսի գիրքը թարգմանուած է եւ հասած Հայաստան թղթին գրութենէն ոչ շատ առաջ:

Ընդունելով թարգմանութեան տարին 601—603 շրջանին, կարելի պիտի ըլլայ վեր հանել նաեւ թարգմանութեան միջավայրը:

607ին Աբրահամ Կաթողիկոսի առ Կիւրիոն Կաթողիկոս Վրաց գրած մէկ թղթէն կ՚երեւայ թէ տեղապահն Վրթանէս ունէր իրեն գործակիցներ Ուռհայի (Եդեսիայի) մէջ: Անոնք ի հարկաւորութեան կը մատակարարեն Վրթանիսի կրօնական-դաւանաբանական վէճերու համար նիւթեր: Ինչ որ մանական դէպքի մը մասին պատմուած է, պէտք է — ինչպէս ինծ կը թուի, մերձեցնել Տիմոթէոսի գրուածքին թարգմանութեան ալ: Աբրահամ Կաթողիկոս (հաւանօրէն Վրթանիսի թելադրութեամբ) կը գրէ. «Եւ զի պայման նամակն որ հայերէն գրով էր, յապըստամբութեանն (572) կորեաւ եւ թարգմանեցաւ այս յՈւռհայ քաղաքի ի հոռոմ գրոյ. քանզի եւ նոքա ունէին ի մէնջ: Եւ ստոյգ եւ սուրբ, որպէս արժան էր, չկարացին թարգմանել. զի են որ քաջ յայտնի են եպիսկոպոսարանացն անուանք, եւ են որ կարի ի

---

[13] Գիրք Թղթոց, էջ 91:

ծածուկ եւ այլաձեւք: Բայց թէ կամիք անուամբք եպիսկոպոսացն եւ յաջորդաւք տեղեացն եւ այլաձեւ անուամբք եպիսկոպոսացդ՝ որպէս գրեալ են, կարէք զատոյդ անուանս եպիսկոպոսարանացն գտանել եւ զայլոցն եւս. քանզի եւ մեք զմերս այդ տարազու մարթացաք գտանել»․ Գիրք Թղթոց, էջ 183. հմմտ. եւ վերը՝ էջ 80:

Խօսքը 506/507ին Բաբգէն Կաթողիկոսի օրով Սիմէոն Բեթ-Արշամացւոյ տրուած հաւատոյ հաստատութեան մասին է, զոր երեք եկեղեցիները՝ Հայոց, Վրաց եւ Աղուանից առանձին առանձին բազմատորագիր յանձնած էին սորի երէցին: Այդ թղթերու պատճենները պահուած էին խուրաքանչիւր եկեղեցեաց դիւաններու մէջ: Բաբգէնի թղթին պատճէնը այրած էր 572ին Դուինոյ կաթողիկոսարանի հրդեհման ժամանակ: 607ին, երբ Կիւրիոն մերժեց քաղկեդոնական դաւանութեան, հարկ տեսնուեցաւ գնել անոր առջեւ Գաբրիէլ Կաթողիկոսի թուղթը տրուած Բեթ-Արշամացւոյ, որ կը համարուէր միարնեայ վարդապետութեան ջատագով: Ինչպէս Բաբգէն Կաթողիկոսի Բ. թուղթը, նոյնպէս Գաբրիէլ Կաթողիկոսին թուղթը թարգմանուեցան յունարէն օրինակէն, որ պահուած էր Եդեսիա:

Թարգմանիչը, որ չէր կրցած ուղիղ դուրս բերել Հայաստանի եւ Վրաստանի եպիսկոպոսարաններու անունները, հաւանօ-

*րէն ծագումով ըլլալ Հայաստանցի չէր եւ անտեղեակ էր Հայաստանի, ինչպէս նաեւ գրացի Վրաստանի գաւառական բարբառներուն։*

*Տեսանք վերագոյն թէ Բարգէնի Բ. Թուղթը՝ թէեւ կրած է նոր խմբագրութիւն, բայց պահած է հետքեր առաջին թարգմանութենէն, որոնց թուին մէջ է* Շարագրեմ *բայը, որ յայտնի նշան մըն է թէ թարգմանիչը ունի Տիմոթէոսի Հակաճառութեան թարգմանչին հետ անձուկ խնամութիւն։*

*Ասկէ կրնանք հետեւցնել թէ Յունարան Դպրոցի Բ. խումբը իւր կենդրոնն ունէր Ուռհա։ Անոնց համար ալ կ՚արժէ Աբրահամ Կաթողիկոսի վճիռը, թէ «սոտյգ եւ սուրբ, որպէս արժան էր, չկարացին թարգմանել»։ Յունարան Դպրոցի երեք խումբերէն յատկապէս Երկրորդը երեւելի է իւր անսրբութեամբը, որ բառ առ բառ, քայլ առ քայլ հետեւած է յունարէնի ընթացքին թէ՛ շարադասութեան եւ թէ՛ բառակազմութեան մէջ։*

*Առանձին ուշադրութիւն կը գրաւէ նաեւ այն պարագան, որ Բ. խումբին բոլոր արտադրութիւնները միարնեայ ուղղութեամբ են*[14]*։ Եւ եթէ նկատի առնենք որ սկսեալ Զ. դարու առաջին քառորդէն Եդեսիա միաբնեայ վարդապետութեան հետեւողներու գլխաւոր կենդրոնն էր եղած, ուր Յակոբ*

---

[14] *Մանանդեան, անդ, էջ* 202—209։

Ծանծաղոս իր ուսուցչական աթոռն էր հաստատած, դիւրին պիտի ըլլայ ըմբռնել, թէ ինչո՞ւ Վրթանէս Քերդող այնպէս սերտ բարեկամական յարաբերութիւն կը մշակէր այս միաբանեայ կեդրոնին հետ:

Անհամաձայն չեն այս եզրակացութիւններուն արտաքին աղբիւրներու տեղեկութիւնները: De rebus Armeniae գրութեան հեղինակը եւ Փոտ թէպէտ Փիլոքսենիոսի եւ Տիմոթէոսի գրութիւններու հայերէն թարգմանութիւնը եւ Հայաստան մուտքը Աբդիշոյի կը վերագրեն, ուստի իբր 550—556, բայց այս երկու հեղինակներու գրութիւնները լեզուական տեսակէտով այնպէս անմիաբանական են, որ անհնար է անոնց թարգմանութիւնը մէկ ժամանակի եւ մէկ թարգմանչի վերագրել: Հաւանական է որ Աբդիշոյ բերած ըլլայ Հայաստան Փիլոքսենիոսի գրութիւնները. կան նոյն իսկ Աբդիշոյի առ Ներսէս Աշտարակեցի թղթին մէջ հետքեր Փիլոքսենիոսի գրութիւններէն: Ասորի հեղինակիս գրուածները թարգմանուած են յետակ, ընիկ հայ նկարագրով, առանց Յունաբան Դպրոցի ամենաթեթեւ ազդեցութեան: Հակաժամանակագրական է Փիլոքսենիոսի եւ Տիմոթէոսի գրուածներու թարգմանութիւնը համարիլ ժամանակակից: Անոնք երկու ուրոյն դպրոցներու արտադրութիւններ են, որոնցմէ մին երէց է, ասորական ազդեցութեան են-

թակայ եւ երկրորդը կրտսեր՝ յունական ուղղութեան ծառայ:

Տիմոթէոսի Հակաճառութեան Թարգմանութիւնն ընդունելով կատարուած 601—603 տարիներուն Եղեսիայի մէջ, կ՚ունենանք կռուան ճշդելու գոնէ մերձաւորապէս միւս խումբերու ալ գործունէութեան շրջանը:

Ինչպէս նկատեցինք վերագոյն՝ Յունաբան Դպրոցի հնագոյն շերտը կը ներկայացնէ Ա. խումբը: Այս խումբի արտադրութիւններէն յանուանէ Փիլոն Եբրայեցւոյ գրութիւնները ծանօթ եղած են Եղիշէի՝ Հայոց պատերազմի պատմութեան մէջ: Թարգմանութեան յետնագոյն եզրը հարկ կ՚ըլլայ ասով ճանչնալ 590 թուականը, երբ յօրինած է Եղիշէ իւր Պատմութիւնը: Եղիշէ կը պատմագրէր Կ. Պոլիս. այս տեղ ունէր նա աչքի առաջ Փիլոնի գործերը: Հաւանօրէն հոս պէտք է փնտռել նաեւ Ա. խումբի գործունէութեան միջավայրը:

Գրական նո՛ր ոճ եւ նո՛ր ճաշակ կը դնէր Յունաբան Դպրոցը հրապարակ: Նոր շարժումս նոր միջավայր կը պահանջէր. եւ յանդուգն փորձը յունաբան լեզուով, յունական ճաշակով գրականութիւն ստեղծելու կ՚ենթադրէ ժամանակի հասունութիւն, միջավայրի փոփոխութիւն:

Ի՞նչ փոփոխութիւն կամ ո՞ր միջավայրը կարող էր գրգիռ եւ շարժում տուած ըլլալ այս նոր գրականութեան, քան 572ի Հայոց պա–

տերազմը, որ ամբողջ երկիրը ոտք հանեց, հայ ազնուականութիւնը, եկեղեցականութիւնն եւ մտաւորականութիւնը տարաշխարհիկ ըրաւ եւ հեռաւոր կայսերանիստ մայրաքաղաքի մէջ միասնգամ ի մի հաւաքեց: Կաթողիկոսին հետ եկեղեցականութիւնը եւ Սպարապետին հետ ազնուականութիւնը ապաստան գտաւ Կ. Պոլիս. ուր ստիպուեցաւ աւելի քան 20 տարի պանդխտիլ: Օրուան ստիպմունքն էր կայսերանիստ մայրաքաղաքին մէջ ապրիլ քաղաքակիրթ աշխարհին հետ անձուկ յարաբերութեան մէջ. ունենալ շօշափում ժամանակակից իմաստասէրներու հետ. եւ կամայ եւ ակամայ միջամուխ ըլլալ կրօնական-դաւանաբանական հարցերու մէջ, որոնցմով այնպէս հարուստ էր ժամանակը:

Հայ ազնուականութեան երիտասարդ սերունդը պէտք ունէր կրթութեան. եւ պիտի յաճախէր պետական դպրոցներ, ուր Նորպղատոնական իմաստասիրութիւնը կը տիրէր մտքերու, եւ ճարտարախօսութեամբ կը մարզուէր երիտասարդութիւնը: Դիոնեսիոսի Արուեստ Քերականութեան եւ Գիրք Պիտոյից առաջին հրահանգի դասագրքերն էին, եւ աշակերտութիւնը կ'առաջնորդուէր աստուածածանօթութեան ոչ թէ Սուրբ Հարց մեկնողական-վարդապետական տեսութիւններով, այլ յունական փիլիսոփայութեան յեցած Փիլոնի լուծումներով եւ հելլէն իմաստասէր-

ներու հեթանոս աստուածխօսութեան դէմ մաքարող Իրենէոսի մը ուղեցոյցով։

Զարմանալի չէ հետեւաբար եթէ Ա. խումբի արտադրութիւնները դուտ լեզուաբանական – ճարտասանական – իմաստասիրական բովանդակութեամբ են, նոյն իսկ Փիլոն Եբրայեցի եւ Իրենէոսի Ընդդէմ Հերձուածոց գիրքը հետաքրքրութիւն դարթուցած են այնպիսի յառաջացած դարու մէջ։ Թարգմանչական Նոր Դպրոցս առաջնորդուած է բոլորովին տարբեր հայեցակէտներով քան որ ուղղութիւնն եղած էր նախորդներուն։ Եկեղեցականներ դժուար է ենթադրել այս խումբին մէջ. բացարձակապէս աշխարհիկ գործիչներ գլուխ անցած են նոր շարժման, որոնք փիլիսոփայութիւնը նախամեծար նկատած են աստուածաբանութենէն։

Նաեւ գործելու կերպը խստօրնակ կ՚ընթանայ նախորդ ուղղութեան։ Ի՞նչ նպատակ կարող էր հետապնդած ըլլալ թարգմանիչը, երբ Դիոնեսիոս Թրակացւոյ Քերականութիւնը կը շրջէր հայերէնի բառ առ բառ։ Հայերէն քերականութի՞ւն մը յօրինել։ Այս դէպքին պէտք էր յունարէն լեզուին սեպհական օրէնքները մերժեցնել հայերէնի. բայց այս չէ կատարուած։ Ընդհակառակը ճշգրիտ եւ հաւատարմօրէն ներկայացնելու համար յունարէն բնագիրը, ամէն ջանք տարուած է յերիւրել նոր խոնարհման ձեւեր պատկերելու համար յունարէնի այն եղանա–

կառուցումները որոնք կը պակսէին հայերէ-նին։

Նկատի առնելով այս հանգամանքը, պէտի կրկնեմ. Թարգմանչին ջանքն եղած է հայ ու-սանողին ըմբռնելի ընելու համար յունարէն լեզուի խոնարհման եւ բառակազմութեան սեպհականութիւնները, բառացի եւ տառացի չրջել սկզբնագիրը հայերէնի։ Ուր խօսքը օրէնքներու մասին է, եղած է բնագրին ստրուկը, իսկ ուր օրէնքներու բացատրու-թիւնն է, եղած է ազատ, օրինակները նոյն իսկ բնաշխարհիկ պայմաններէն վերցնելով։ Հայերէն լեզուի յատկութեանց անհմուտ մը չէ թարգմանիչը, բայց կամաւ յանձն առած է երեւալ բնագրին ստրուկը, որովհետեւ այսպէս կը պահանջէր հարկը։

Թարգմանչի անձին մասին ուշագրաւ է ինչ որ կը խորհրդածէ Ն. Ադոնցեան[15]. Նկատի առնելով թէ Թրակացւոյ Քերակա-նութեան թարգմանիչը յունարէն բնագրի բացատրական օրինակներու փոխարէն յա-ճախ հայ միջավայրէն օրինակներ կը դնէ, կ՚եզրակացնէ Ադոնցեան թէ թարգմանիչը ապրած է միջավայրի մը մէջ, ուր կայ ձիւնի

[15] Արարատ, 1919, էջ 70—71։ Հմմտ. նաեւ Հ. Ա. Վ ա ր դ ա ն ե ա ն՝ Արտաւազդահաւ, Հայկ, Հայկաչափ, Վահագն. Հ ա ն դ. Ա մ ս օ ր ե ա յ, 1920, էջ 281—283։ «Փիլոնի գործոց թարգմանիչը ինչպէս հելլէն եւ հայ լեզուի, նոյնպէս յոյն եւ ազգային դի-ցաբանութեան հաւատարապէս քաջ հմուտ է» (անդ, էջ 281)։

հիւս, որթ, ընկուզենի, այգիներ եւն. իբրեւ օրինակ կը յիշուին նաեւ Տարօնը, Ցրօնքը եւ այլ եւ այլ անուններ որոնք Մամիկոնեան տան յատուկ են: Աղբալեան կը մխի մինչեւ անգամ հաստատելու թէ Թարգմանիչը Տարօնեցի մ'եղած, նոյն իսկ Տարօնի մէջ գործած ըլլայ: «Այս սրամիտ ենթադրութիւնը, որ թւում է ինձ բաւականաչափ հիմնաւորուած, կը գրէ Մանանդեան (էջ 227), կարեւոր եւ հետաքրքիր է այն տեսակէտից, որ թարգմանութեան տեղի որոշմամբ որոշւում է նաեւ թարգմանութեան բարբառախօսական բնոյթ կրող լեզուական առանձնայատկութիւնների միջավայրը: Ի նկատի ունենալով, որ վերոյիշեալ վկայութիւնները եւս յունաբան հնագոյն հեղինակների ծննդավայրը կամ գործունէութեան միջավայրը որոշում են Բագրեւանդում, Տարօնում եւ Կարինում, կարելի է թերեւս ենթադրել, որ Յունաբան Դպրոցի գլխաւոր կենդրոնները եղել են, հաւանաբար, Հայաստանի արեւմտեան կողմերում, որոնք գտնուել են յունական մշակոյթի անմիջական ազդեցութեան տակ: Ըստ երեւոյթին, արեւմտահայեր պէտք է լինին նաեւ այն քաղկեդոնականները, որոնց շրջանում թարգմանուած պիտի լինին, ինչպէս ենթադրեցինք, Դաւիթ–Ոլոմպիոդորոսի երկերը[16]» (= Գ. Խումբ):

[16] Մանանդեան, անդ, էջ 227—228:

Աղբալեանի եւ Մանանդեանի յայնմ միայն կարող եմ համակարծիք ըլլալ, որ թարգմանիչը ծագմամբ Մեծ Հայաստանցի, թերեւս նաեւ Տարօնցի, նոյն իսկ Մամիկոնեան տնէն եղած ըլլայ։ Այսպիսի ծագումով շատեր կային 572էն ետքը Կ. Պոլիս, անոնց թուին մէջ նաեւ Վարդան Մամիկոնեան, Հայոց սպարապետը։ Հայոց պատերազմէն ետքը Բիւզանդիոն ապաւինող փախստական-ներէն շատերը միտեցան քաղկեդոնականու-թեան։ Անոնցմէ մէկն էր նոյն ինքն Վարդան Մամիկոնեան, որուն համար կ՚ըսուի առ Սոր-մէն պատասխանական թղթին մէջ. «Ներին սպնջական եւ առաջնորդ եւ կարապետ զնա պարտ է ասել (տպ. պատրաստել), որ ազգի միոյ ապստամբութեան եղեալ պատճառ եւ զարս ի կանանց վարատելոյ... եւ մանաւանդ յիւր բնակ եւ յուղղափառ վարդապետաց կարգէ սրանալով է փախուցեալ, որպէս զամ-պարիշտ[ն] առանց ուրուք հալածելոյ, եւ տարագիր եղեալ յամբիծ եւ հռչակաւոր եւ կեցուցանող նոցին հաւատոց[17]»։ Այս այն Վարդանն է, որուն խնդրանքով գրեց Եղիշէ իւր Պատմութիւնը եւ զոր «ով մեծ ի դիտու-թեանն Աստուծոյ» կը կոչէ եւ կը համարի մին անոնցմէ, «որ դեգերիցին յիմաստու-թիւն»[18]։

---

[17] Գիրք Թղթոց, էջ 93։

[18] Եղիշէ, էջ 7։ Հմմտ. Հանդ. Ամս., 1931, էջ 175—177։

*Բոլորովին անհնարին չէ մտածել թէ Վարդան Մամիկոնեան 572—575 տարիներու կռիւներէն ետքը երբ հաստատուեցաւ ի Կ. Պոլիս, նուիրուած ըլլայ իմաստասիրութեան եւ ձեռնարկած Քերականութեան, Պիտոյից Գրքի, Փիլոնի գրուածոց եւն թարգմանութեան:*

*Սպարապետի խիզախ ձեռներէցութեամբ միայն կարող էր գոյութիւն առնել Յունաբան Դպրոցն եւ անոր պաշտպանութեան տակ պահպանել գոյութիւնը: Առանց այսպիսի անուանի դէմքի մը նախաձեռնութեան պիտի չկարենար ձեւ եւ կերպարանք առնել լեզուի տարերային փոփոխութիւնը եւ արմատ ձգել եւ ընդհանրանալ: Եղիշէ առաջին մատենագիրն է որ կարդացած է Փիլոնի գործերը եւ անոր՝ այն «քաջ պատմագրին» խօսքերով զարդարած է իր Ընծայականին էջերը, ձօնուած Մեծ Սպարապետին, Փիլոնի հաւանական թարգմանչին:*

*Այս եւ նման պատճառներ կը բռնադատեն զիս Յունաբան Դպրոցի հիմնարկութիւնը ենթադրելու ի Կ. Պոլիս 572—575 տարիներուն:*

*Այս թուականէն ետքը հայ կեանքին հետ նաեւ հայ գրականութիւնը կրեց հզօր փոփոխութիւն: Այս շրջանին կ՚իյնայ նաեւ Ագաթանգեղոսի յունարէն թարգմանութիւնը:*

*Այս մտքի մէջ կ՚ամրապնդէ զիս ոչ միայն այն հանգամանքը, որ մինչեւ 572 չկայ հայ*

մատենագրութեան մէջ Յունաբան Դպրոցին հետքը, այլ եւ ընդառաջ կու գայ խօսուն փաստ մ՚ևս, Եւտիքէս Կ. Պոլսոյ հայրապետին մէկ գրութեան թարգմանութիւնը, որուն ժամանակն ըստ ամենայն հաւանականութեան 577 տարին է եւ միջավայրը նոյնպէս Կ. Պոլիս:

Կը պատմէ Յովհ. Եփեսացի[19] թէ 577ին երբ Եւտիքէս աքսորէն կրկին անգամ Կ. Պոլսոյ հայրապետական աթոռը հրաւիրուեցաւ, դրաւ հրապարակի վրայ երկու բնութեանց մասին գրուածք մը, որ անհապին յուզում պատճառեց. բայց եպիսկոպոսներու ատխմունքի վրայ հարկադրուեցաւ չուտով յետս կոչել: Եւտիքէս իւր այս գրուածքը բազմաթիւ օրինակներով ուղարկած էր «առ մեծամեծս քաղաքին եւ առ տիկնայս», մանաւորապէս անոնց որոնք կը հակառակէին ի Քրիստոս երկու բնութեանց վարդապետութեան: Առանց տարակուսի այս գրուածքէն օրինակներ ուղարկուած էին նաեւ Հայ նախարարներու եւ բարձրաստիճան եկեղեցականներու. որոնք ծանօթանալու համար հայրապետին նոր մտքերուն փութացած էին թարգմանել տալ, գրութեան յետս կոչուելէն յառաջ:

Եւտիքէսի այս գրուածքին բնագիրը յունարէն լեզուաւ կորսուած է: Կայ բարեբախ-

[19] Եկեղ. Պատմ. Բ. 25 եւ 51:

տարբար անոր հայերէն թարգմանութիւնը, որ իբրեւ հազուագիւտ մնացորդ մը քաղկեդոնական դրականութեան կրնայ այլ եւ այլ տեսակէտներէ հետաքրքրական նկատուիլ: Զմեզ կը հետաքրքրէ հոս անոր լեզուն, որ յունաբան է:

Ունիմ աչքիս առջեւ Նետիքէսի այս գրութիւնը Վիեննայի Մխիթարեան Մատենադարանի Թ. 623, թղ. 268 բ—276 բ (ի վերջաւորութեան պակասաւոր) եւ Էջմիածնի Պետական Ձեռագրատան Թ. 500, 323 բ—339 բ ձեռագիրներու մէջ (վերջինս օրինակութեամբ):

Խորագիրն է՝ «Նետիքի եպիսկոպոսի Կոստանդինուպոլսեցւոյ Յաղագս զանազանութեան բնութեան եւ առանձնաւորութեան»: Կը սկսի՝ «Որ զարտաքին իմաստութեանցն վարժեցան մեծամտել նովաւ յաղագս բնութեան եւ առանձնաւորութեան անուղղաբար չարագրելով»:

Թարգմանութեան հնութեան վկայ են ոչ միայն «Խոսրովիկ Թարգմանիչ» եւ Յովհ. Մայրագոմեցի, որոնք Է. եւ Ը. դարերուն կարդացած են գրուածքս, այլ եւ Վրթանէս Քերթող ծանօթ եղած կը թուի անոր, արդէն 606ին. հետեւեալ տողերը յայտնապէս ուղղուած են Նետիքիսի դէմ, թէեւ լռուած է անունը: Կը գրէ Վրթանէս[20]. «Զորոց

---

[20] Գիրք Թղթոց, էջ 116:

(Գրադկեղոնականաց) զկեղծաւորութիւն նոցին խակ գրեալքն յայտ առնեն. զի յետ հրաժարելի խառնմանն եւ ճշմարիտ միաւորութեանն՝ երկուս բնութիւնս սահմանեցին ի վերայ միոյ Քրիստոսի՝ բաժանելս եւ անջատելս ի միմեանց: Եւ վրիպեցուցանելով մերթ ասեն. Մի է եւ միադէմ եւ նոյն Քրիստոսն որդի Աստուծոյ եւ տէր եւ միածին. եւ անդրէն դարձեալ ասեն. Եւ յերկուց բնութեանցն անխառնելի է. եւ որք խառնեալ[21] համարին, ասեն, զերկուս բնութիւնսն Քրիստոսի, այսինքն զմարդկութիւն իւր բովանդակ ընդ իւրում աստուածութեանն՝ գնոսա նզովեմք, ասեն: Վասն որոյ խակ եւ յերկուս դէմս եւ յերկուս զօրութիւնս բաժանեն զբանս գրոց սրբոց. եւ որք խոնարհագոյնք ասացեալ (են)՝ միում բնութեանն առանձինն որոշեն, եւ զբարձրագոյնսն՝ միւս եւս բնութեանն առանձինն դատուցանեն»:

Եւտիքէսի գրուածքիս թարգմանութեան տեղւոյն եւ ժամանակին քաջ կը համաձայնի կաց գրքի Յիշատակարանը, ուր, ինչպէս Մանանդեան եւս կ'իմանայ, իմաստասիրական գրքերու թարգմանութեան մասին է խօսքը: Յիշատակարանս է ըստ Էջմիածնի Ձեռագրաց[22]. «Եւ արդ յետ բազում ժամա-

[21] Տպ. խառնել:

[22] Ձեռագիրք Էջմիածնի Ձեռագրատան թ. 270 (ԺԷ), 580 (1618), 859 (ԺԷ), 1754 (1637), 2018 (1621), 2607 (1300):

*նակաց գրեաց զգիրս զայս* (= գրեցաւ գիրս այս?) *իբրեւ Աստուած հասոյց զմեզ ի ժամանակս յայս, յորում Հ. եւ Չ. էր Թուական Հայոց* (627)։ *Ես Գուրգէն քարտուղարս Հայոց մեծաց եւ սուրբ Թագաւորացն պռոտոսպաթար ստացող եղէ գրոցս այսմ*։ *Բայց զարմանալի է ի Նախկի յիշատակի գրոցս այսմիկ եթէ* Գրեցաւ գիրքս այս էակէս հրամանաւ թարգմանեալ ի Յունաց ի հայս (*հրամանաւ*) տեառն Յովհաննիսի Հայոց կաթուղիկոսի Գաբեղինացւոյ ի ԻԵ. թուականութեանն Հայոց. վկայէ այսմիկ Սարգիս Արաբացի եպիսկոպոս ճշմարիտ վկայութեամբ»։

*Հայոց Թուականը՝* ԻԵ. *կը համապատասխանէ փրկչական* 576 *Յուլիս*—577 *Յուլիս տարւոյն*։ *Ժամանակակից կաթողիկոսն էր ճշդիւ Յովհաննէս Գաբեղինեցի, որուն մահուան Թուականը սովորաբար կը նշանակուի* 574։ *Յովհաննէս Եփեսացի, որ ժամանակակից մըն է Գաբեղինեցւոյն կը գրէ պարզապէս, թէ կաթողիկոսը* 572*ին Կ. Պոլիս ժամանելէն քանի մը տարի յետոյ վախճանեցաւ*։ *«Սարգիս Արաբացի եպիսկոպոս», որ վկայած է Թարգմանութեան մասին, հաւանօրէն ասորի Սարգիս եպիսկոպոսն է, որ յայտնի է իբրեւ վանահայր «Արաբացւոց վանքին»* [23]։

*Դժուար է առ այժմ ճշդութեամբ նոյնա–*

[23] A. Baumstark, Geschichte der syrischen Literatur, Bonn 1922, *էջ* 185։

ցընել «Խակաց գիրքը»․ Մանանդեան (էջ 136—142) կ՚ուզէ յորջորջմանս տակ Արիստոտելի գրուածներն (= Բ. խումբ) իմանալ։ Ինձ անհաւանական կ՚երեւայ այս նոյնացումը։ Վերադոյն այս խումբի թարգմանութեան միջավայրը մատնացոյց եղաւ Ուռհա–Եդեսիա։ Որովհետեւ Ցիչատակարանս ամփոփուբար յանուն Դաւիթ Անյաղթի հասած իմաստասիրական հարց ու պատասխաններու եաեւ կը գտնուի, եւ այս հատուածը էակաց գիրք յորջորջումը կը կրէ, աւելի հաւանական կը տեսնեմ իմանալ «Էակաց գիրք» անուան տակ այն իմաստասիրական մանր գրուածներու հաւաքածոյքը, որ պահպանուած է չական մասով Էջմիածնի Ձեռագրատան Նոր Ժող. Թ. 528 ձեռագրին մէջ, յամէ 1280։

Ետոփքէսի Ցղ. դանադանութեան գրքի եւ Էակաց գրքի Թարգմանութեանց միջավայրը Կ. Պոլիս երեւան գալով, անտարակուսելի կ՚ըլլայ Յունաբան Դպրոցի Ա. եւ Գ. խումբերու գործունէութեան կենդրոնը ընդունիլ կայսերանիստ մայրաքաղաքը։

Ետոփքէսի «Յաղագս դանադանութեան» գրուածքին լեզուն կը մնայ առաւելապէս Գ. խումբիս. ունի նաեւ Ա. եւ Բ. խումբերու հետ աղերս. մինչ Ա. խումբէն ուղղակի կախում մը ցոյց կու տայ, Բ. խումբին հանդէպ աւելի ներգործական քան կրաւորական դերի մէջ է։ Գ. խումբին ա–

ունենայատուկ Տարամերժիմ, Ներշնչանամ, Առադրեմ, Յարակացեալ են ունի նաև Եւտիքէս: Ըստ մասին իրեն յատուկ են՝ Արտակայիմ, Արտաձայնեմ, Բացադասեմ, Համաչարչարական, Հերձուածեմ, Մակատեսեալ (հմմտ. մակատեսուչ, Նոննոս), Մակարկութիւն, Միջամխիմ, Յեղականութիւն, Ներանկեալ, Ներդոյանամ, Ներհայիմ, Ներհանդիպիմ, Ներմտութիւն, Տարադիմել, Տարակայացեալ, Տարամաքառիմ, Որչափանամ, Պարբերանեալ, Ստորապիտակութիւն, Վերանիմ, Վերափայլիմ, Քանակիմ են:

Յունարան Դպրոցի նորաձեւութիւնները, հայերէն դասական եւ առոնին լեզուներու յախուռն եւ խիզախ յեղաշրջումը թէ ի՞նչ աչքով նկատուեցան ժամանակակիցներէն, յատկապէս Մեծ-Հայաստանցիներէն, կարելի է զգալ Վրթանէս Քերդողի հետեւեալ տողերէն[24]. Վրթանէս կը գրէ Ցուրտաւ քաղաքի հայերուն 606ին. «Իսկ այժմ առաւել եւս յայտնապէս գրեալ տեսանեմք զաղանդն Նեստորի յեւս առաւել նորաձեւ գրեալս նոցա[25], զոր եւ տեսի եւ կարդացի նոցին իսկ գրով[26],

---

[24] Գիրք Թղթոց, էջ 116:

[25] Հետաքրքրական է ասութեանս ձեւը, որով կ'ակնարկուի նորաձեւ նորանշան հայերէն լեզուն, որ կը կիրարկուէր Յունարան Դպրոցէն:

[26] Անշուշտ ոչ յունարէն, այլ Յունարան Դպրոցի չնաշխարհիկ ոճով:

որ թարգմանի ի մեր լեզուս[27] այսպէս. Ասէ. Զոր օրինակ ադնիւ հիւսան...»։

Թէպէտ ի սկզբան եպերելի երեւցաւ յունաբան հայերէնը, բայց յընթացս ժամանակի անհրաժեշտ տեսնուեցաւ նոր Դպրոցին կարեւոր արտադրութիւններուն ծանօթութիւնը. յաճախակի ընթերցումը ընտելացուց ինչպէս մտքերը բովանդակութեան, նոյնպէս լեզուն նորաձեւ հայերէնին։ Յաջորդ շրջանի գրականութեան վրայ տարաւ Յունաբան Դպրոցը յաղթանակ։ 628ին Գուրգէն պրոտոսպաթար «զարմանայլ» կը գտնէր, որ «խակաց գիրքը» իւր անմարսելի հայերէնով թարգմանուած է «հրամանաւ» Յովհ. Գաբեղինեցի կաթողիկոսին։ Անշուշտ գրասէր կաթողիկոսին փափագն էր, որ թարգմանուէին օգտակար գրքերը հայերէնի, բայց ոչ կամքը՝ որ յունաբան նորաձեւ լեզուով հայացուէին։ Յունարէն լեզուին հմուտները պատուաստած էին անգամ մը իրենց ճաշակը, եւ փիլիսոփայական–աստուածաբանական մտքերը ճշգրիտ անդրադարձնելու փոյթը տիրած էր ակամայ մեղանչել տոհմային լեզուի յատկութեան դէմ։

Այս բռուածներէն ինքնին կը հետեւի թէ

[27] Հարկ կը տեսնէ Վրթանէս Յունաբան Դպրոցի շատերուն անմատչելի հայերէնը ծանօթ հայերէնի վերածել, ինչպէս այսօր «նոր ուղղագրութիւնը» հարկ կը զգանք հասարակաց մատչելի «հին ուղղագրութեան» վերածել։

որքան միամիտ դտնուած է Մովսէս Խորենացւոյ Պատմութեան խմբագրիչը, որ մուծելով Պատմութեան Գ. 61 գլխուն վերջին տողերը՝ «բայց քանզի տղէտք էին մերումս արուեստի...» եւ 61րդ գլուխն ամբողջ, հաւատացնել ուզած է թէ Յունաբան Դպրոցի հիմնադիրը Մովսէս Խորենացի եղած է եւ իր առաքումն Աղեքսանդրիա Սահակի եւ Մաշտոցի հրամանով կատարուած։ Թ. դարու երկրորդ քառորդին մուծուած այս յաւելուածը[28] առիթ տուած է յետագաներուն ամբողջ երամ մը կրտսեր աշակերտներու երեւան հանելու, որոնց թուին մէջ ամփոփուած են Ե.—ԺԱ. դարերէ ծանօթ եւ անծանօթ ամենազգի անուններ։

Յունաբան Դպրոցի արտադրութիւններու նկատմամբ 25 տարի յառաջ տուած արդիւնքներս[29], որոնց հակառակեցաւ ժամանակին Կարապետ եպ. Տէր–Մկրտչեան[30], կ՚արդարանան այժմ։ Իսկ Դպրոցիս հիմնարկութեան կանխադոյն եզրը, զոր գծեցինք, պիտի բանայ մեր աչքերը ճշդագոյնս ճանչնալու եւ գնահատելու բնիկ հայ լեզուն եւ անոր դասական մատենագրութիւնը։

---

[28] Հմմտ. P. N. Akinian, Moses Khorenatzi ի թերթին WZKM, 37 (1930), էջ 209—210։

[29] Հ. Ն. Ակինեան, Տիմոթէոս Կուզ հայ մատենագրութեան մէջ. Վիեննա 1909։

[30] Կնիք հաւատոյ. Վաղարշապատ 1914, էջ ԾԹ—Կ եւն։

## ՎԱՅՐԷՋՔ ԵՒ ՎԵՐԵԼՔ

Հայերէն լեզուն, որ այնպէս պերճ, դասական նկարագրով գրի առնուեցաւ Ե. դարու առաջին կէսին Սահակի եւ Մաշտոցի եւ անոնց աշակերտներու ձեռքով, սկսեալ դարուն երկրորդ կէսէն ապրեցաւ իւր արծաթի, պղնձի երկաթի եւ ցեխի շրջանները: Երկար դարեր ենթարկուեցաւ յունական ազդեցութեան: Յոյն լեզուէ թարգմանութիւններ ընելու հարկին տակ գտնուեցաւ Մատենագրութիւնն իւր զարգացման համար նաեւ ոսկի դարէն ետքը: Մինչ Մաշտոցեան Դպրոցը գիտակից իւր պաշտօնին եւ ժողովրդեան պահանջին ձեռնարկեց գործին կատարեալ հմտութեամբ յոյն եւ մայրենի լեզուներուն, եւ ի գլուխ հանեց թարգմանութիւններն արուեստին բարձրագոյն կատարելութեամբը, պակսեցաւ այս հմտութիւնը եւ գիտակցութիւնը յաջորդ շրջաններու թարգմանիչներուն: Անոնք ցոյց տուին հաւատարապէս եռանդ ճոխացնելու մայրենի գրականութիւնը օտար մատենագիրներու թարգմանութեամբ, բայց չունեցան առաջիններու յաջողութիւնը կա՛մ անհմտութեամբ օտար լեզուի գաղտնիքներուն, կա՛մ ոչ շատ քաջ մարզուած ըլ-

լալով մայրենի լեզուին մէջ, եւ կա՛մ աչքի առաջ չունենալով ժողովուրդը, որուն պէտք էր ընծայել օտար գրականութիւնը հասկանալի բարբառով:

Յետ դասական շրջանի առաջին Թարգմանական Դպրոցը՝ հիմնուած Երուսաղէմի մէջ, համեմատութեամբ իր քոյր դպրոցին աւելի հասկանալի էր, վասն զի ուսեալ էին թարգմանիչները վանական շրջանակի մէջ եւ կը խօսէին հասարակաց՝ պարզախօս եւ անսեթեւեթ: Բայց ոչ այսպէս միւս Դպրոցը, Հռովմէական Հայաստանի մէջ, ուր, ինչպէս կ՚երեւայ, աշխարհիկներն էին թարգմանիչները, անընդել ե՛ւ հայերէնի ե՛ւ յունարէնի. եւ կը թարգմանէին յոյն լեզուի համաձայնութեամբ կաշկանդելով մայրենի լեզուի ազատութիւնը: Թէեւ յունական չարադասութեան հաւատարիմ, բայց եւ այնպէս հայ տարրն էր խօսքին արտայայտիչը:

Յաջորդեց այս կրկին Դպրոցներուն անձուկ իմաստով Յունարան Դպրոցը, իւր երեքպատիկ շերտերովը (572—603), հիմնուած ի Կ. Պոլիս եւ յԵդեսիա, որ արհամարհելով ամէն ակնածանք դէպի հինէն ժառանգուած մատենագրական լեզուն, ընթացաւ իւր սեպհական ճանապարհը՝ ինքնատեղծ լեզուով եւ թարգմանական ինքնագիտ արուեստով: Գործին գլուխը, ինչպէս հաւանական է կարծել, աշխարհիկ եւ դրականութեան նորավարժ թարգմանիչներ

կանգնած էին։ Անոնք ուզեցին յունարէն սկզբնագիրները ոչ միայն բառ առ բառ հայացնել ըստ կարելւոյն, այլ եւ յունարէն բառակազմութիւնը ճշդիւ անդրադարձնել, ուրիշ խօսքով՝ յունարէն նախադիրներով կազմուած բառերուն հանդէպ համանման նախդիրներով եւ ածանցներով բառեր կերտել։ Այսպէս երեւան եկան բազմաթիւ նախդիրներ եւ ածանցներ, բառեր եւ բայեր, սեպհական խնդրառութեամբ, որոնք կերպարանափոխեցին հայերէն լեզուի նկարագիրը։ Եւ որովհետեւ գիտական՝ քերականական, ճարտասանական եւ փիլիսոփայական, նաեւ վիճական–դաւանաբանական գրութիւններ էին, որոնք հրապարակ ելան այս լեզուով, եթէ լեզուն զգուանք պատճառեց ի սկզբան իր խրթութեամբը, բայց նիւթը չահագրգռական երեւցաւ եւ գրաւեց ուշադրութիւն։ Առաջին անգամ քերդողներուն մատչելի եղան անոնք, ապա հանուեցան իբրեւ դասագիրք դպրոցական սեղաններու վրայ եւ այսպէս յաճախակի ընթերցմամբ մուտ գտան բառերը գործնական կեանքին մէջ եւ սիրուեցան իբրեւ միակ յարմար գիտական լեզու՝ փիլիսոփայական–գիտական մտքեր արտայայտելու։ Երէկուան խրթը դարձաւ այսօր հարազատ եւ նկատուեցաւ լեզուին անբաժին տարրը։

Ստեփանոս Սիւնեցի (Ը. դար), Գրիգոր Մագիստրոս (ԺԱ.), Գրիգոր Վկայասէր

(ԺԱ.) ժառանգեցին իրենց թարգմանութիւններու մէջ թարգմանական այս արուեստն եւ լեզուն, եւ պակասը լրացուցին նորանոր ստեղծագործութիւններով: Հարստացաւ ճոխացաւ հայ գիտական բարբառը յունաբան տարրներով, բայց տուժեց ընիկ լեզուն իր պարզութիւնն եւ յստակութիւնը: Այս բարբառին ազդեցութեան տակ ապրեցան Է.— ԺԴ. դարերը. անով խօսեցան հայ փիլիսոփաները, աստուածաբանները եւ ճարտարախօսները:

Քանի յոյն լեզուի ազդեցութեան տակ կ՚ապրէր մատենագրութիւնը, նկատուած էր յունաբան բարբառը ամենաբաւ ե՛ւ կորովի ե՛ւ ճոխութեամբը:

Է. դարուն երկրորդ կէսին ենթարկուեցաւ Հայաստան արաբական գերիշխանութեան: Կեանքը արքունիքի մէջ, նախարարներու ապարանքներու մէջ, հրապարակի վրայ կրեց անշուշտ ազդեցութիւն արաբական կենցաղէն. բայց հայ եկեղեցին, հայ գրականութիւնը ապրեցաւ ինչպէս յառաջ, որովհետեւ չունէր շփում ո՛չ արաբ հոգեւորականութեան եւ ո՛չ ալ արաբ իմաստասէրներու հետ: Պահանջեց սակայն պիտոյքը, կարեւոր դէպքերուն դիմել արաբ բժիշկներուն, որոնք համբաւ վայելեցին մանաւանդ Թ. դարէն սկսեալ: Եւ բժշկութիւնը գիտութեան այն ճիւղն էր, որուն այնպէս նուազ ուշադրութիւն նուիրուած էր անցեալին մէջ:

*ԺԱ. դարու վերջերը կը կազմուի Կարսի մէջ՝ Գագիկ Թագաւորի արքունիքը՝ ակումբ մը, ուր պարսիկ, արաբ, հրեայ եւ քրիստոնեայ բժիշկներ մուտք եւ ելք ունին, եւ կը ձեռնարկուի թարգմանել հայերէն երկրագործական եւ բժշկական մատեաններ պարսկերէնէ եւ արաբերէնէ: Քիչ յետոյ կը յայտնուի նաեւ Մխիթար Հերացի, պարսիկ եւ արաբ բժշկական Դպրոցէ, եւ կը գրէ իւր* Ջերմանց մխիթարութիւնը: *Գիտութեան նոր ճիւղերս կը պահանջեն գիտական նոր լեզու եւ արաբ գրականութիւնը կը մատակարարէ բառապաշար:*

*Այս այն շրջանն է, երբ արաբական տիրապետութիւնը ծուէն ծուէն եղած, պարսիկ-թուրք եւ թաթար ժողովուրդներու փոփոխակի ազդեցութեան կ'ենթարկուէին արեւելեան աշխարհները: Եւ կեանքի պարագաներու հետ նաեւ քաղաքակրթական պէսպէս հոսանքներ կը բերէին յեղաշրջութիւն ժողովրդեան մտածելակերպի վրայ. եւ ժողովրդական բարբառը կ'իւրացնէր նոր նոր եկամուտ տարրներ: ԺԴ.—ԺԷ. դարերուն, երբ սկիզբ ըրաւ ժողովուրդը խօսիլ իւր բարբառով, զարմանալի չնկատուեցաւ այն մեծ թիւը օտար բառերու, որոնք իբրեւ լեզուի ընդոծին տարրներ կը կիրարկուէին բանաստեղծներէն, թէ աւելի հասկանալի եւ թէ աւելի նուրբ արտայայտուած ըլլալու համար:*

Մինչ այս մինչ այն կը հասնէր նոր հոսանք արեւմուտքէն, այս անգամ ոչ դրացի Յունաստանէն, այլ հեռաւոր լատինախօս երկիրներէն: Խաչակիրները կը մօտենային Կիլիկիայի. եւ արեւմտեան առաքեալները կտրելով Հայաստանը կը ձգտէին հասնիլ Պարսկաստան, Չինաստան, նոր առաքելութիւններ բանալու մահմետական եւ հեթանոս աշխարհներու մէջ: Ճանապարհին հիմնուեցան հանդրուաններ: Արտազի Ս. Թադէոս, Երնջակի Ս. Յովհաննէս վանքերու մէջ հաստատուեցան լատինախօս վարդապետներ եւ գրգիռ եղան Հայոց Թարգմանական նոր Դպրոցներ հիմնելու (1345): Իրենց առաջին շրջանին բեղուն եղան այս Դպրոցները, եւ տուին մեծահատոր երկասիրութիւններ, թարգմանուած լատին լեզուէ, պարզախօս հայերէնով, որոնք այնպէս նպաստամատոյց եղան դարուն գրական զարգացման: Միաբանող Եղբարք չշարունակեցին սակայն գործել նոյն թափով եւ նոյն սկզբունքներով ծառայել հայ մատենագրութեան: ԺԵ. եւ ԺԶ. դարերուն մխտեցաւ անոնց լեզուն լատինաբանութեան: Բայլ մը պէտք էր զայն կատարելագործելու, զոր յանձն առաւ Հռոմի Ուրբանեան Վարժարանը՝ Բարսեղ եւ Յովհաննէս վարդապետներու առաջնորդութեամբ, որոնք մրցակից Յունաբան Դպրոցի նորասիրութեան, այս անգամ լատին լեզուի քերականութեամբ եւ բառակազմութեամբ

*ջանք տարին կերպաձեւել հայերէն գրական լեզուն: Վարդան Յունանեան, Խաչատուր Կարնեցի, Պետրոս Թիֆլիսեցի եւ ուրիշներ պարծանք համարեցան փայլիլ չնաշխարհիկ բարբառովս: Դիոնեսիոս Թրակացւոյ Քերականութեան փոխարէն ունինք այժմ Յակոբ Հոլովի* Ջտութիւնն հայկաբանութեան (1674): *Դժբախտաբար գրականութեամբ աղքատ այս դարերուն ա՛յս գրականութիւնն էր որ պիտի կարդացուէր Կ. Պոլիս եւ գաւառները: Ցաւալի էր եւ այն որ այս հայկաբաններուն յանձնուած էր Եւրոպայի տպարաններէն լոյս տեսնող հրատարակութիւններու գրաքննութիւնը, որոնց ոչ բովանդակութիւնը միայն այլ եւ լեզուն կ'ենթարկուէր խիստ քննութեան:*

*Հակառակ այս հոսանքին կար բարեբախտաբար Մայր երկրին մէջ կենդանի Աւանդապահ Դպրոցը, ուր կը մշակուէր հին բարբառը, հին մատեաններն էին դասագրքերը: Էջմիածնի Դպրոցն էր, հիմնուած Մովսէս Կաթողիկոսէն եւ փայփայուած Փիլիպպոս եւ Յակոբ Կաթողիկոսներէն, ուր Սիմէոն Ջուղայեցի (Գառնեցի) կը դասախօսէր եւ Ստեփանոս Լեհացի կը պարապէր թարգմանութիւններով: Այս Դպրոցէն կ'ելլէր Առաքել Դաւրիժեցի, որուն յատակ, ժողովրդական լեզուն ախորժելի եւ իմանալի էր իմաստնոյն ալ, գեղջուկին ալ:*

*Այս էր լեզուի պատկերը ԺԷ. դարու վերջը, երբ Մխիթար Սեբաստացի կը հեռանար արեւելքէն եւ իրեն բոյն կը փնտռէր արեւմուտք։*

## Ս. ՂԱԶԱՐԻ ՄԽԻԹԱՐԵԱՆ ԴՊՐՈՑԸ

*Մխիթար, որ կոչուած էր նոր ուղղութիւն տալ հայ մշակոյթին, չէր կրնար անտես ընել լեզուի հարցը։ Կանգնած էին սակայն իր առաջ դժուարութիւններ, որոնց կուրծք պէտք է տար։ Լատինաբանութիւնը իր բոլոր անհեթեթութեամբը լեզուն էր արեւմտեան հայ վարդապետներուն, որոնց ընդդիմահարութեան պիտի բախէր, եթէ յախուռն եւ համարձակ դիրք բռնէր անոր դէմ։ Ամէն համարձակ փորձ կարող էր վիժեցնել իր մեծ ծրագիրը չարաչար հետեւութիւններով։ Այս մտատանջութեան մէջ զգաց ինք զինքը Մխիթար յատկապէս, երբ որոշեց հրատարակ հանել* «Քերականութիւնն գրաբառի լեզուի հայկազեան սեռի» (1730)․ *ընդունի՞լ լատինաբան նորաձեւութիւնները թէ մերժել. այս երկընտրանքի մէջ խոհեմութեան ձայնն եղաւ տեղի տալ փափուկ ժամանակին եւ լեզուին հիմնական գոյութիւնը ապաստան ընել նոր սերունդին։ Հարկաւ պիտի ուժաւորէր իր Դպրոցը եւ պիտի տիրանար իր հեղինակութեամբ հրապարակին։ Արդեամբք ալ ու տակաւ տակաւ թէ Մխիթար ինքնին եւ թէ իր աշակերտները վտարեցին այդ նորա-*

ձեւութիւնները եւ տեսաւ հայերէնն իր առաջին Նորոգութիւնը կամ Յետաշրջութիւնը:

Այս մեծ գործն ի գլուխ եկաւ՝ 1. վտարելով լեզուէն լատինաբանութեան ամէն նշմարները. 2. ռամկօրէն լեզուի տարրները, որոնք սկսած էին երեւալ գրաբարի մէջ, ջնջելով. 3. կենդանացնելով հին լեզուն որ կը խօսէր ընտիր հեղինակներու՝ Եզնիկի, Եղիշէի, Մ. Խորենացւոյ, Գրիգոր Նարեկացւոյ եւ Ներսիսեանց գրչին տակ:

Աստուածաշնչի նոր հրատարակութիւնը (1733) մեծապէս նպաստեց այս քայլին. եւ Հայկազեան լեզուի բառագիրքը (1750) շահեցաւ Մխիթարեան Դպրոցին հեղինակութիւն: Նորոգեալ հայերէնի համար մեծ վաստակ ունի Հ. Վրթանէս Ասկէրեան, որ նուրբ ճաշակի տէր եւ ընտիր ոճի սիրահար իւրացուց Աստուածաշունչի թարգմանութեան լեզուն եւ անով բարբառեցաւ Կոլգնոյի Փիլիսոփայութեան չորս հատորներու մէջ (1751), որուն ճակատը կը դրոշմէր «Թարգմանեալ զգուշութեամբ ըստ հայկազնեան լեզուիս ոճոյ»: Նորալուր էր իր բարբառը, բայց լուեցաւ քաղցրահնչիւն, դիւրիմաց եւ գտաւ ամէնուն հաճութիւնը: Քիչ յետոյ հանեց հրապարակ «Յաղագս նմանող լինելոյ Քրիստոսի... նորոգ թարգմանութեամբ ի լոյս ընծայեալ», որ պիտի փոխանակէր վաղուց ծանօթ թարգմանութիւնը՝ «Յաղագս համահետեւման Քրիստոսի...

թարգմանեցեալ ի Յովհաննէս Վ. Կ. Պօլսեցւոյ» :

Ասկէրեանի ցոյց տուած ճանապարհով ընթացան, առաւել կամ նուազ յաջողութեամբ Մխիթարեան նոր սերունդի աշակերտները : Նոյն պարզախօս եւ յստակ բարբառով կը յօրինէր Չամչեան իր Պատմութիւնը եւ Քերականութիւնը :

Մխիթարեանք ոչ միայն ընտիր լեզուն ընտրեցին իրենց մտքի արտայայտութեան գործիք, այլ եւ հանեցին հրապարակ Նախնեաց ընտիր մատենագիրներու մեծ թիւ մը գեղեցիկ տպագրութեամբ, որոնք պիտի նպաստէին Ազգին աւելի խորանալու լեզուի ուսման մէջ եւ ջուրն ակնաղբիւրէն խմելու հնարաւորութիւնը տային : Բնականաբար Նախնեաց լեզուական գանձերու այս յայտնութիւնը պիտի ազդէր նաեւ գրական լեզուի ազնուացման եւ ոճի եւ բառապաշարի ճոխութեան : Աւետիքեան տուաւ նոր Քերականութիւն մը, Չախչախեան՝ Հայերէնի ճոխ Բառագիրք իտալերէն մեկնութեամբ, եւ քիչ յետոյ աշխատակցութեամբ Մխիթարեան երից Հարց լոյս տեսաւ երկհատոր Նոր Բառգիրք հայկազեան լեզուի, որ կ'ամփոփէր իր ծոցը Նախնեաց լեզուի ամենաճոխ բառամթերքը : Համընթաց այս հրատարակութիւններու կը պայծառանային ինքնագիր եւ թարգմանածոյ երկասիրութիւններով՝ Աւետիքեան, Աւգերեան եղբարք, Չախչախեան,

Թովմաճեան, Բագրատունի, Հիւրմիւզեան եղբարք, որոնք Մխիթարեան Դպրոցի պարծանքները կը հանդիսանային եւ Հայ լեզուի տածիչներն եւ բազմավաստակ մշակները։ Սերմանեցին գրական անդաստանին վրայ լիառատ եւ հնձեցին առատապտուղ։

Գրաբար հին լեզուն հասած էր արդէն իր զարգացման գագաթնակէտին. ոչ միայն արձակ մատենագրութեան համար ներկայացաւ այն՝ ճկուն, ամենաբաւ, այլ եւ երեւցաւ դիւրաթեք բանաստեղծական հրաշակերտներ յօրինելու։ Հայ Մատենագրութեան արտորայն բուսցուց դարուս առաջին կէսին բազմերանգ հունձք, եւ արեւու ճառագայթներու տակ կազմուեցան ատոք հասկեր, որոնք ուրախութիւն պատճառեցին ինչպէս Մշակին, նոյնպէս հունձքի տիրոջ, եւ այն ամէնուն, որոնք վայելողը պիտի ըլլային արդիւնքին։

Հունձքը շեղջ շեղջ եղաւ հրապարակ, գնահատուեցաւ բարձր. վայելքը պատճառեց հաճոյք, հիացմունքը զուարթացուց դէմքերը։ Այս էր վաստակաւորներու վարձքը. եւ նոյնը ազգին գոհունակութեան ցոյցը։ Մխիթարեանց հրատարակութիւնները չահապետած էին հրապարակին. նոր հեղինակներու գովութիւնը շրջան կ'ընէր բերնէ բերան։

Գրական լեզուն հասած էր իր բարձրագոյն կատարելութեան. նման բարձրութեան

վրայ չէր տեսնուած այն յընթացս մատենագրական ինը դարերուն: Նոր մատենագիրները ոչ միայն նուաճած էին մատենագրական լեզուին ինը նահանգները, այլ եւ իբրեւ միահեծան տէրեր կարող էին տալ համարձակ հրամաններ: Եւ ո՞վ կարող էր ընդդիմանալ: Տէրն էին լեզուին. պէտք էր այն հնազանդէր տիրոջ քմահաճոյքին: Ու կը յերիւրուէին լեզուի ճոխութեան համար բարդութիւններ, կը ճոխանային բառերը նոր իմաստներով, կը կառուցուէին նոր ասացուածքներ, եւ մատենագրին քմահաճոյքին համաձայն կը խոնարհէին եւ կը կանգնէին նախադասութիւնները: Նոր չէին անշուշտ լեզուին օրէնքները, ինքնագիտ չէին բառերը. անոնք ի կիրառութեան էին նուաճուած ինը աշխարհներու այս կամ այն գաւառամասին մէջ. եւ կարող էին տիրոջ կամքի համաձայն արժել ամբողջ պետութեան համար: Սովորութիւն մը, որ Եզնիկին անծանօթ էր, կարող էր Մ. Խորենացւոյ սիրելի ըլլալ, եւ ինչ որ Եղիշէի համար խորթ էր, կարող էր Գր. Նարեկացւոյ համար ընտանի ըլլալ եւ վերջապէս ինչ որ միջնաշխարհին համար օտար էր, ծայրագաւառներուն (Յունարան Դպրոց) համար անդրէնածին ըլլալ:

Լեզուն իր այս բարձրութեան վրայ գոյացութեամբ հին էր, բայց նոր էին պատահարները, նոր հանդերձանքը. Ժ-Թ. դարու ինքնուրոյն հայերէն մը կը հնչէր հոն,

*տեսքովն ու ձայնովն աննման նախորդ դարերուն :*

*Նոր Մատենագիրները մոռցած էին թէ մեռեալ լեզուի մը հետ էր իրենց գործը*[1]*. եւ թէ մատենագրական իւրաքանչիւր նահանգ իւր սեպհական բարքերն ունի եւ եկամուտ տարրները, որոնք միջնաշխարհին չեն պատշաճիր եւ անհարազատ են բնիկ ոգւոյն. եւ վերջապէս թէ բնիկ եւ օտար տարրներու բռնի համաձուլումը կարող է լեզուին հա–*

[1] *Երբ կենդանի լեզուն լաւ անշնչացած է, Մեռեալ լեզու է. «գրել ուզողին հարկ կ՚ըլլայ գըրոցական միջոցներու օգնականութեանն ապաւինիլ՝ որպէս զի նոյն հին լեզուն ըստ օրինի խօսի: Եթէ միջոցները բաւական են, եթէ հանճարը սուր է, եթէ ճաշակը կիրթ ու զգացողականն արթուն է, կը յաջողի շատերէն քիչերուն. եւ ընդհանրապէս խօսելով՝ կը մնայ միշտ պատուաստ եւ ոչ բնական լեզու. միայն անհատական հանճար մը կրնայ այնպիսի դարերու մէջ իւր ժամանակէն վեր ելլել եւ նախնեաց հաւասարիլ: Ալ հոս Բնականն ու Արուեստականը որոշ կերպով մը դէմ առ դէմ կեցած են: Կրնայ մէկը միեւնոյն ատեն իրեն բնական ժամանակակից լեզուաւը գրել, կրնայ դարձեալ իւր հին գրաւորը գործածել (թէպէտ լեզուական տարբերութիւնները դեռ կերպական անջատման մը հասած չըլլան). սակայն այս էական տարբերութեամբ որ ուր որ արուեստականը յաջողած չէ, բնականը՝ թէեւ անպաճոյճ, շատ աւելի արժէք ունի քան եղծ արուեստականը: Կենդանի կամ ժամանակակից լեզուի հետ գործ ունեցողն իւր ժամանակէն կ՚ազդուի սկզբնաբար, եւ երկրորդաբար իւր անձնական ջանքէն. իսկ մեռեալ լեզու գործածողը՝ միայն իւր անձնական ջանքէն կ՚առաջնորդուի, այսինքն քայլը քայլին ճիշդ հետեւողութեամբ, վասն զի ալ իրեն համար անգործունեայ է ժամանակը, որուն նաեւ չարաչար ազդեցութեանցը հետ անդադար կռուոյ մէջ ըլլալու է»: Այտընեան, Քննական Քերականութիւն, Նախաչաւիղ, էջ 39—40:*

բաղդատ նկարագիրն այլափոխել, վայելուչ դէմքն այլանդակել։

Եթէ Վիրգիլիոսին մրցակից մը եւ համահաւասար չէ Ովրատիոս իր լեզուի նկարագրով եւ ոչ Քսենոփոնի մը՝ Բարսեղ Կեսարացի, այսպէս նաեւ Եզնիկի զուգակից մը չէ Գրիգոր Նարեկացի եւ ոչ ալ Փաւստոսի՝ Մովսէս Խորենացի։ Ամէնն ալ ընտիր են իբրեւ մատենագիր, թէեւս արտայայտութեան ոճով մին քան զմիւսն երեւելի, բայց տարբեր են ժամանակները, տարբեր լեզուի նկարագիրները։ Անոնք չեն կրնար հանդուրժել տեսնել զիրար, զիրկընդխառնուիլ իրարու հետ։

Բանասիրութիւնը կը պակսէր ԺԹ. դարու Հին Դպրոցի մեծ հայկաբաններուն։

## ՎԻԵՆՆԱՅԻ ՄԽԻԹԱՐԵԱՆ ԴՊՐՈՑԸ

Տակաւին լուռ էր Վիեննայի Մխիթարեան Դպրոցը։ Չէր հանած անիկա հրապարակ մեծանուն մատենագիր մը կամ ականաւոր հեղինակութիւն մը, որ ընորոշէր իր անսակէտները գրական հայերէնի նորոգութեան հարցին մէջ։ Կը հետեւէր ի լաւութեան այն ուղղութեան, զոր ժառանգութեամբ բերած էր իր հետ Մխիթարայ Մեծ Դպրոցէն (1773—1840)։

Դեռ նոր էր հասած Միաբանութիւնը Վիեննա՝ տարագիր Տրիեստէն (1810), եւ ամփոփուած հինաւուրց լքեալ մենաստանի մը յարկին ներքեւ՝ կ՚ապրէր գոյութեան կռիւը։ Ելաւ յաղթական, այս երկրորդ անգամ, իւր դժուարին կացութենէն եւ սկսաւ ուժաւորիլ, ուռճանալ եւ մագլցել գիտութեան աստիճանները։ Սքանչելի էր միջավայրը, գերման հորիզոնին տակ։ Գեր. Արիստակէս Ազարեանի (1836—1855) աչալուրջ ղեկավարութեամբ կը նուէր Միաբանութիւնը դէպի խաղաղ նաւահանգիստ։ 1838ին, երբ Ե. Բորէ կը վայելէր Մխիթարեան Միաբանութեան հիւրասիրութիւնը, կը նշմարէր հոն երիտասարդութեան մէջ նոր

խանդավառութիւն եւ ձգտում դէպի հայրենի ուսմանց մշակութիւն ։ Արդեամբք ալ 1832ին լոյս տեսած էր Մխիթարեան մամուլէն կարեւոր գործ մը նախնեաց մատենագրութենէն՝ Կիւրղի Երուսաղէմացւոյ Կոչումն Ընծայութեան. եւ կը յօրինուէին նոր ծրագիրներ ի նպաստ տոհմային պատմութեան եւ գրականութեան ։

Նոյն խանդավառութիւնը կ՚իշխէր նաեւ Մխիթարեան Կղերանոցէն ներս, ուր կ՚ուսանէին Գարագաշեան, Գաթրրճեան, Յովնանեան եւ ընկերները ։ Ընտիր եւ ուսեալ եկեղեցական մը աշխարհական կղերէ կու գար աւանդելու ճարտարախօսութեան եւ լատիներէնի դասեր ։ Վիրգիլիոս եւ լատին դասականներ առօրեայ ընթերցանութեան նիւթն էր անոնց. եւ ուսուցիչը կը բացատրէր դասական լեզուի առաւելութիւնները ։ Մայրենի լեզուին դասագիրքն էր Հ. Վ. Զայրխեանի Քերականութիւնը եւ առձեռն ընթերցարանը Կիւրղի Կոչումն Ընծայութեան, նաեւ Վենետիկ նոր լոյս տեսած նախնեաց մատենագրութիւնը՝ Ոսկեբերան, Սեբերիանոս եւն, անոնց թուին մէջ նաեւ Մովսէս Խորենացի եւն ։

Հ. Յակոբոս Պօղաճեան, որ կարգուած էր Վարժարանին օգնական վերակացու, ունէր բարի սովորութիւնը, գիտակ պահել աշակերտները գրական շարժման, որ կու գար Վենետիկէն. եւ կը կարդար անոնց նոյն

Դպրոցի նոր եւ նորագոյն հրատարակութիւնները, կրթելու երիտասարդ սերունդին ճաշակը գրաբարի մէջ։ Ռոլէնի Հնախօսութիւնը Հիւրմիւզեան եղբարց թարգմանութեամբ, Սուաւիէի Արուեստ բանական եւ Թէոփրաստի Նկարագիրք Հ. Ա. Բագրատունւոյ թարգմանութեամբ հաճոյքով կ՚ունկնդրուէին պատանի Գաթըրճեանէ, որ նոր սկիզբ առած էր զգալ գրաբարի ճաշակը։

Պատանւոյն սուր ականջը շուտով վերահասու կ՚ըլլայ թէ տարբեր կը հնչէ լեզուն նոր գրուածներու մէջ եւ տարբեր նախնեաց մատենագրութեան մէջ։ Ուր քաջահնչիւն են բառերը, քաղցրախօս դարձուածքները, հոն աչքի կը զարնէ նմանութիւնը հին մատենագրութեան։ Աւելի մանրաքննին զննութեան ենթարկելով իր տպաւորութիւնները եւ աւելի ուշադիր ընթերցմամբ հետեւելով լեզուի նրբութիւններուն Աստուածաշունչի, Ոսկեբերանի, Կիւրղի եւ Եզնիկի մատեաններուն մէջ, կը յանգի այն եզրակացութեան թէ հնագոյն հեղինակներու քով լեզուն թէ՛ աւելի բարաշատ եւ ոճազարդ է, եւ թէ՛ աւելի քաջահնչիւն եւ փափուկ, քան ամենայնի համապատասխան լատին դասականներու բարբառին, որուն գովութիւնը կ՚ընէր իրեն լատին լեզուի ուսուցիչը։ Ա՛յս է այն ակնաղբիւրն ուսկից նաեւ Բագրատունի եւ Հիւրմիւզեան եղբարք ջուր կը կրեն իրենց գրուածներու

*համար*․ անոնց գրչին տակ կայ «լեզու լեզուի մէջ»։

*Համոզումս կազմելէ յետոյ չի վարանիր Գաթըրճեան զեկուցանել իւր յայտնութեան մասին ընկերներուն, որոնց թուին մէջ ամէնէն խելահաս ճանչցուած էր Գարագաշեան։ Երկար վիճաբանութեան դուռ կը բանայ Գաթըրճեանի անդրադարձութիւնը։ Այս նոր տեսութեան դէմ առաջին ոտքը կը ծառանայ Գարագաշեան, որուն ճաշակը, ինչպէս ցոյց կու տար* 1835 *թուի իր անդրանիկ տաղը, խանդավառուած էր արդէն դարուն խառնածայն հայերէնի ժխորէն։ Կը պատմուի, թէ վիճաբանութիւններու այս առաջին շրջանին մեծ քրքիջ պատճառած է ընդդիմակաց կողման Գաթըրճեանի յայտարարութիւնը, թէ կրկին լեզուներէս առաջնոյն անծանօթ են* աղօթել, երկրպագել, պատասխանել *եւ նման կարգ մը բառեր, որոնք այնպէս սովորական գործածութիւն ունէին երկրորդին մէջ։ Իրօք ալ ուշադիր քննութեամբ կը համոզուին թէ Հին եւ Նոր Կտակարանի գրքերու եւ նոյն ոճի միւս մատենագիրներու լեզուն շատ գծերու մէջ տարբեր է սովորականէն։ Կը խոստովանի իւր պարտութիւնը Գարագաշեան, որ այնուհետեւ դասական հայերէնի ամենաջերմ ջատագովը կ'ըլլայ։ Գարագաշեանով շահուած էին նաեւ միւս ընկերները։*

*Մեքանական ոյժով կը սկսին այժմ երի–*

տասարդ բացուկները պեղել «ոսկեդարեան հայերէնի» բովը: Կարեւոր էր մանրադէտ քննութեամբ ճշդել ոսկեդարեան մատենագրութեան սահմանները, թզով եւ քլով չափել, լարաբաժին ընել հողը, կշռել ճշդիւ քերականական օրէնքները, համաձայնութեան կանոններն եւ բառամթերքին բովանդակութիւնը: Իւրաքանչիւր բառ եւ մասնիկ ինկաւ կշիռքի ներքեւ, քննուեցաւ ըստ ձեւին եւ ըստ իմաստին: Յանուանէ մատնացոյց ըրին ոսկեդարեան մատենագրութեան մասունքը. եւ անջրպետեցին Ոսկի դարն Արծաթի դարէն: Զգեղեւեցան կանխակալ կարծիքի առջեւ. մերժեցին իբրեւ խառն ոսկեդարեան հայերէնի սահմանէն ամէն նշմար, որ չէր կրեր նոյն լեզուի նկարագիրը, առանց խնայելու անգամ Եղիշէի եւ Մովսէս Խորենացւոյ:

Մխիթարեան Վարժարանը վերածուած էր հայկական ճեմարանի. ուր երիտասարդ ճեմականները կը ճեմէին անդադար բանավիճելով դասական մատենագրութեան բառերու, մասնիկներու շուրջը, կը ծափահարէին ընտիրը, կ՚անգոսնէին խոտանը. կը հիանային դասականին առաւելութիւններուն վրայ, կը գտէին ընտրելագոյնը ընտիրէն: Խաղ, զուարճութիւն, դատարկախօս ժամավաճառութիւն տեղի տուած էր լուրջ աշխատանքներու, բանասիրական պարապմունքներու. որովհետեւ կը կոփուէր, կը կռա–

նուէր բանասիրութեան սալի վրայ դասական, ոսկեդարեան հայերէնի գլուխը, որով հպարտ էին։

Գեր. Արսէն Այտընեան, որ տակաւին ճիղմ հասակի մէջ հանդիսատես էր այս վէճերուն, կը պատմէր թէ նոյն տարիներուն Վիեննա կը հանէր Գեր. Ազարեանի աշակերտները՝ մին Ա. Ա., պատանեկական տարիքի մէջ, եւ կը հիւրասիրուէր Մխիթարեան վանքը։ Որպէս զի ձանձրոյթի չմատնուէր պատանեակը, կ'արտօնէր Ազարեան, որ խառնուի հանգստեան ժամերուն Վարժարանի աշակերտաց հետ, անոնց քով ժամանց վայելելու։ Քանի մ'օր ետքը կը դիմէ պատանեակը Գեր. Ազարեանին, որ աղատէ զինքը այս շրջանակէն, որովհետեւ այն աւելի ձանձրանալի է իրեն. «բոլոր ժամերուն բառերու շուրջը կը վիճաբանին աշակերտները. իրարու գլուխը կ'ուտեն բառի մը կամ մասնիկի մը համար, որոնց իմաստն անգամ անիմանալի է ինծի»։ Եւ իրօք ի՞նչ ախորժէր այն բանասիրական վէճերէն պատանին, որ թերեւս մայրենի լեզուին առաջին սիգօրաներն իսկ չէր սկսած թոթովել։

1837—1839 տարիները սահեցան այսպէս։

Ապշած, հիացած էր Հ. Յ. Պօղաճեան այս տարօրինակ ոգեւորութեան վրայ, որ կ'իշխէր Վարժարանին մէջ։ Մայրենի լեզուի ուսումը մոզած էր երիտասարդներու ուշն եւ ուրուշը. դասական հայերէնի

հմայքը արբեցուցած էր անոնց միտքը: Ան-
դուլ անդադար կը դեգերէին նախնեաց մա-
տենագրութեան մէջ. կը համեմատէին զա-
նոնք յոյն սկզբնագիրներու հետ դուրս կոր-
զելու բառերու թաքուն իմաստները, բնա-
կան առումները. ըմբռնելու թարգմանական
արուեստը եւ թափանցելու խորհուրդներուն
խորքը: Կը յաճախէին յամել խուզաքանչիւր
գրուածքի քով, խուզելու համար խորհե-
լակերպը, ասացուածները, բառերն ու դո-
դիչները: Կ'ըսուի թէ Գաթըրճեան 15 ան-
գամ կարդացած որոճած է միայն Եզնիկի
ոսկեմատեանը: Գիտակցութիւնը, թէ դա-
րակազմիկ գիւտի մ'առջեւ կը գտնուէին, որ
իրենց ձեռքով պիտի քարոզուէր հրապարա-
կին, հրդեհած էր տունկն ու մացառը. հե-
ռապատկերը, թէ դասականներու պատմու-
ճանով պիտի երեւան աշխարհի, բաշխած էր
իրենց ջանասիրութիւն եւ յարատեւութիւն:
Մուսատոյի, Պետրարքայի, Բոկկաչիոյի ոգին
արծարծած էր հայ երիտասարդ հումանիստ-
ներու մէջ:

Եւ Պօղաճեան հոգւով ուրախ կ'իջնար
Վիեննա զեկուցանելու Գեր. Ա. Ազարեանի
երիտասարդ հայկաբաններու նորագիւտ
հայերէնի եւ պարծենկոտ յաւակնութիւննե-
րու մասին:

Ի սկզբան երիտասարդական մեծարա-
նութիւն կը հնչէն զեկուցմանս խօսքերը
Գեր. Ա. Ազարեանի ականջին. կը պատաս-

խանէ հենդնօրէն. «Ինչ որ Մեծն Աւգերեան, Բագրատունի եւ Հիւրմիւզեանք չեն նկատած, պատանեակներո՞ւդ վիճակեցաւ վեր հանել»: Բայց կը գովէ երիտասարդներու բուռն նուիրումը հայրենի ուսմանց. կը յանձնարարէ Պօղաճեանի, որ հսկէ անոնց վրայ անխոնջ յառաջ մղելու աշխատանքները. եւ թէ կը բաղձայ ինքը տեսնել երիտասարդներու գրչէն փորձ մը այս նոր հայերէնով:

Այս արդէն քաջալերիչ էր:

Բովանդակ Վարժարանը մէկ շունչ կտրած կը կարդէ կը յօրինէ «ոսկեդարեան» հայերէնով իր անդրանիկ ճառը: Ա՛յն պիտի որոշէր նոր գիտին ճակատագիրը: Ինչպէս կը հաւաստէր Այտընեան, այս առաջին փորձին մէջ կուտակած, խճողած էին նոր դասականներն ընտիր ասացուածքներ, բարձր բառեր, բայերու յաճախութիւն... ամէնն ալ քաղուած հանուած դասական հեղինակներէ եւ խնամով առընթերագրուած:

Կ՚արտասանուի ճառը յստակ եւ շեշտաւոր, զգալ տալու համար արդար Դատաւորին դասական լեզուի առաւելութիւնները: Եւ Ազարեան կ՚ունկնդրէ ուշակալ: Ի զուր կը սպասէ լսել հոն իր ականջին ընտելական բառերն ու դարձուածքները. վեհ, դիտապետ, աստանօր, սերկեան, գերապանծ... տարօրինակ կը հնչեն մանաւանդ վերադիրները. Մեծարգոյ եւ Մեծապատիւ Տէր եւ Հայր... փոխանակ Գերապատիւ եւ Գերա-

պայծառ ... *ինչպէս սովոր էին յորջորջել զինքը։*

*Թէպէտ պակաս էր հնչականութիւնը, աղքատ ճոխութիւնը, պարզ չարադասութիւնը, բայց կը նկատէ Ազարեան թէ հարուստ է կառուցուածքը շնորհքով եւ վայելչութեամբ. եւ վերադրելով թերութիւններն երիտասարդ հասակին, կը խրախուսէ թիավարել գիտութեան խորքը, նոր նուաճումներով կատարելագործելու լեզուն, զոր «ոսկեդարեան» կը սիրէին անուանել։ Ունէր անիկա ապագայ։*

*Ուրախութեամբ կը վերադառնան երիտասարդները Վարժարան։ Տարած էին առաջին յաղթութիւնը։ Իսկ Ազարեան կը սկսի այնուհետեւ ստէպ ստէպ երեւալ երիտասարդներու շրջանին մէջ, անձամբ ուղղութիւն եւ դիւրութիւն տալու անոնց աշխատանքներուն։ Կը պատմուի, թէ վաղ առաւօտ կը բարձրանար ննջարան, յորդոր կարդալու երիտասարդ ուժերուն վաղայարոյց ըլլալ եւ նուիրուիլ հայկաբանական ուսմանց։*

1840*ին առած էր արդէն դասական հայերէնի վարդապետութիւնը ձեւ եւ կերպարանք. եւ երիտասարդ հումանիստները մարզուած եւ մարձուած ոսկեդարեան հայերէնի հմտութեամբ կ'ելլէին ասպարէզ, մասնակից ըլլալու մրցութեան հանդէսին։*

## ԴԱՍԱԿԱՆ ՀԱՅԵՐԷՆԻ ՎԱՐԴԱՊԵՏՈՒԹԻՒՆԸ

*Ունէին անշուշտ տրամաբանական երակէտ մը, երբ ապարէզ կ՚իջնային երխտասարդ հումանիստները, ցոյց տալու իրենց մրցանաց հրահանգները:*

*Այն ապարէզը, զոր պիտի ընթանային իրենք, վաղուց արդէն կտրած անցած էին չափին եւ յոյն դասականներու հետամուտները: Անոնց փորձառութիւնը կանոն պիտի ըլլար իրենց եւ անոնց սկզբունքները՝ առաջնորդ:*

1· *Գրաբար հայերէնը որովհետեւ այժմ մեռեալ լեզու մըն է, իր գոյութիւնն ունի նախնեաց մատենագրութեան մէջ:*

2· *Բայց նախնեաց մատենագրութիւնը այլ եւ այլ շրջաններ կ՚ենթադրէ իր մէջ. հայերէն լեզուն այդ շրջաններուն ընթացած է ելեւէջներով մինչեւ որ յանգած է ոսմկոբէնի. եւ իբրեւ գրական լեզու միւսանգամ կենդանութիւն գդեցած աշխարհաբարի մէջ:*

3· *Բազմադարեայ կեանքին մէջ ունեցած է լեզուն իր պայծառութիւնը, աղօտացումն եւ խաւարումը. ուրիշ խօսքով Ոսկւոյ, Արծաթի, Պղնձի, Երկաթի եւ Խեցւոյ դարերը:*

4· *Եթէ ունեցած է հայերէն մատենագրական լեզուն իր ոսկեդարը, պէտք է երեւան բերել, ճշդել եւ բնորոշել անոր* ա· ժամանակամիջոցը, բ· Մատենագրութիւնը, գ· Առանձնայատկութիւնները:

5· Առանց տարակոյսի մատենագրական այն շրջանը, որ գրի գիւտով սկիզբ առաւ Ե· դարու առաջին կէսին, ամէնէն աւելի ճոխն է թէ՛ Մատենագրական արտադրութեամբը, թէ՛ Լեզուի ընիկ նկարագրովը եւ թէ՛ Քերականական–համաձայնական կանոնաւորութեամբն եւ պերճութեամբը: Ուստի այս շրջանն ունի ամէն առաւելութիւն կոչուելու Ոսկի դար հայ Մատենագրութեան եւ լեզուն՝ Դասական հայերէն:

6· Ոսկի դարու մատենագրական լեզուն ունի միասնականութիւն՝

ա· Քերականութեամբ.

բ· Համաձայնութեամբ.

գ· Բառարանով.

դ· Ներքին սեպհականութիւններով:

Այս միասնականութիւնը կը սահմանէ ամփոփել ոսկեդարեան մատենագրութեան տեւողութիւնը որոշ ժամանակամիջոցի մէջ եւ գոյութիւնը որոշ գրուածներու մէջ: Պատմական տուեալներու վրայ հիմնուած այս գրուածներու յօրինման ժամանակամիջոցը կարելի է ամփոփել 407—460 տարիներու մէջ:

7· Իսկ յաջորդ շրջանները իրենց լեզուական նկարագիրներու համաձայն կը կրեն Արծաթի, Պղնձի եւ այլն յորջորջումները. երբ լեզուի առնական կորովը կը նուազի, դէպի ծերութիւն կը մխի, կը կքի ալեւորութեամբ եւ ի հող կը խոնարհի:

8. *Եթէ նոր դարու մէջ, ուր ռամկօրէնին է ասպարէզը, կեանք ներշնչել ցանկալի է մեռեալին եւ անոր բարբառ տալ գոնէ գրականութեան մէջ, պատշաճ է ա՛յն շրջանի լեզուին նախապատուութիւն տալ, ուր ամէնէն աւելի առոյգ է լեզուն եւ առնական կորովի մէջ, պայծառացած հարազատ նկարագրով եւ ճոխ մատենագրութեամբ, այս ինքն Ե. դարու դասական կամ ոսկեղէն լեզուին:*

9. *Եւ որովհետեւ իբրեւ մատենագրական լեզու ամենայնիւ կատարեալ է Դասականը, պէտք է ուրեմն որ վերադառնանք անոր, փարինք անոր շուրջը եւ կենդանացնենք զայն գրաւորի մէջ նոյնութեամբ, թէ՛ բառամթերքով եւ թէ՛ քերականութեամբ անփոփոխ:*

10. *Ուստի ինչ որ* օտար *է Դասականին եւ* յատուկ *Արծաթի, Պղնձի եւ Երկաթի դարերուն՝ հարկ է մերժել իբրեւ* խորթ:

*Այսպէս* օտար *են Դասականին, ուստի եւ* խորթ.

ա. *բառեր.* աղցք, բառ, տառ, բայ, կենցաղ, կիրք, կոհակ, հրաշք, –ափառ, փարթամ, վեհ, –ագոյն, հեշտալի, հեշտութիւն *են*, գոյակ, էակ, տեսակ, որակ, քանակ, սեռ *են*:

բ. *բայեր.* աղօթեմ, հետեւիմ, երկրպագեմ, պատասխանեմ, վրդովեմ, փառատրեմ, պատասխանատրեմ, փարթամացու–

ցանեմ, փառաբանեմ, տրոհեմ, շողոմեմ *ևն*:

գ · *ածանցներ* · ան–ելի, *զոր օր* · անտանելի, անբաժանելի, անփոփոխելի *ևն* [1]:

–բար · *դ · օր* · անողորմաբար, ագահաբար, պատրաստաբար *ևն ածականին կից*:

–պէս · *դ · օր* · վայելչապէս, իսկապէս, տիրապէս *ևն*:

–ային · *դ · օր* · աստուածային, մարդկային, հրեշտակային *ևն*:

–ական · *դ · օր* · եղական, իսկական, հոգեկան, տիրական *ևն*:

դ · *բայակերտ մասնիկներ* (*յունարանութիւն*), *դ · օր* · անդր*ադարձիլ*, ապա*առութիւն*, արտ*աբերիմ*, բաղ*կանամ*, բակ*առութիւն*, գեր*ադրական*, գեր*ազանցեմ*, դեր*անուն*, ենթ*ադրեմ*, հակ*աճառեմ*, մակ*ադրեմ*, յար*անուն*, յար*ատեւեմ*, ներ*գործեմ*, ներ*կայ*, ներ*կուռ*, շաղ*կապել*, շար*ադրեմ*,

---

[1] *Այս ածանցներով կազմուած ածականները, որոնք այնպէս սիրելի են ոչ–դասական մատենագիրներուն, առաջին անգամ դասական շրջանի խոնարհող կէսի մատենագրութեան (այսպէս Եւագրի, Կիւրեղ Աղեքսանդրացւոյ Եբրայեցւոց Թղթոյն Մեկնութեան) մէջ կը սկսի յաճախակի գործածութիւն գտնել. ընտիր մատենագիրներուն՝ ինչպէս են Եզնիկ, Ոսկեբերան ևն, կա՛մ* բոլորովին անծանօթ *են եւ կամ* խորշելի *երեւցած. կը յիշեմ Ոսկ. Ես.* 188, 211. 458 անըմբռնելի (*փոխ. անըմբռնական, Հմմտ. էջ* 199). 88 անհաւատալի *ևն: Այսպիսի տեղիք ընտիր մատենագիրներու քով կը կարօտին ձեռագրական վերստուգութեան:*

շրջաբերիմ, պարունակեմ, ստորոգեմ, ստորագաս, վերաբերիմ, վերծանեմ, տրամադրեմ, փաղատութիւն եւ այլն։

Ե. յունաբան չարադասութիւն (համաձայնութիւն). հզօր կուռի եղելոյ. մեծամեծս խօսի բանս են։

11. Բառեր, որոնք ունին դասականին մէջ սեպհական նշանակութիւն, իսկ յետ-դասական շրջանին կրած են իմաստի փոփոխութիւն, հարկ է խուսել վերջիններս եւ փարիլ նախնականին։

12. Բնիկ հայ արմատական բառեր, որոնք կը պակսին դասականին, ինչպէս տունկերու եւ հանքերու անուններ, կարող են փոխ առնուիլ ոչ-դասականի բառարանէն։

13. Նոր դարու գիտութեան պահանջքը գոհացնելու համար հնար է յօրինել բարդութիւններ, նմանութեամբ դասական օրինակներու։

14. Ուղղագրութիւնը պատշաճեցնել բատամենայնի դասական շրջանի գրչութեան. նկարելով թերեւս եթե=եթէ, եի=էի, աւ=օ, եւ նմաններուն։

15. Տառադարձութեան մէջ ճշգիւ հետեւիլ դասական շրջանի տառադարձութեան, ինչպէս հին նաեւ նոր անուններու մէջ, թողլով արտասանութիւնն ազատ իւրաքանչիւր ընթերցողին։ Այս կէտին մէջ յընթացս նոր լեզուներու համար եղան գիջողութիւններ։

Վարդապետութիւնս յէականս նոյն էր

այն սկզբունքներուն հետ, որոնց կը հետեւէին եւրոպացիք, սկսեալ հումանիստներէն, երբ յոյն եւ լատին դասականներու նմանութեան կը ձգտէին: Այն պիտի մնար անխախտ, առանց հաշուի առնելու արդի լեզուին սովորութիւններն եւ ժամանակիս ճաշակը: Մեռեալ լեզուն ունէր իւր ուրոյն խորհելու կերպը, արտայայտելու եղանակը, եւ սեպհական ճաշակը, անհամապատասխան բոլորովին արդի ժամանակիս եւ արդի ճաշակին. եթէ փափագելի էր շունչ փչել անոր եւ յարուցանել, պէտք էր յարուցանել այնպէս ինչպէս ապրած էր, նո՛յն հոգւով, նո՛յն մարմնով եւ նո՛յն հանդերձներով[2]:

---

[2] «Տարակոյս չկայ որ հին լեզուի մը ոյժն ու գեղեցկութիւնը վաստըկելու եւ արդեամբ ցուցնելու համար անոր գործածողը պէտք է որ ինք զինքն ուրանայ, նոր գաղափարը, անձնական ճաշակը, եւ այլն. եւ շատ ճշդիւ ու շատ ակնածութիւններով հին հեղինակութիւններու գաղափարողն ըլլայ՝ առանց իւր անձին կամ ժամանակին վրայ հեղինակութիւն մը ճանչնալու. միով բանիւ՝ ինք զինքը հին աշխարհք փոխադրէ, այնպէս որ կարենայ թէ՛ հին թէ՛ նոր աշխարհք միանգամայն խարել: Բայց ոչ ամէնուն եւ ոչ շատերուն տրուած է հին օրինաց հպատակելով՝ ճիշդ նմանահանութեան մը նեղ ճամբուն մէջ անձանձիր յարատեւութիւն: Դասական լեզուաց գրագէտը, եւ միայն այնպիսի մէկը գիտէ թէ ի՛նչ կապանք է նմանողութեան կապանքը. որ եթէ այն կապը թոյլցընես՝ գրաբար չէ լեզուդ: Աս է կենդանի մատենագիր մը՝ որ մեռեալ լեզուաւ կը գրէ: Ասոր հակառակ կենդանի գրող մը՝ իբրեւ նոր մարդ՝ պէտք է որ անկախ եւ ազատ ըլլայ իւր գործողութեանցը մէջ, եւ գիտնայ ընելիքը: Կրնայ մէկը Տակիտոս մը գրաբար թարգմանել ապահովութեամբ, բայց գուցէ ոչ՝ Շաթոպրիան մը առանց հին լեզուն նորացընելու.

Ա՛յսպէս առած էր Ղազար յարութիւն, առոյգ եւ զուարթ, վարշամակապատ, բայց մերկ եւ կողոպուտ ամէն փտութենէ եւ ապականութենէ :

Այս խիստ վարդապետութեան ջանացին հետեւող ըլլալ նոր դասականները : Բնականաբար վստահ էին իրենց ուղիղ ընթացքի վրայ · բայց գիտէին քաջ թէ պիտի ունենային բովանդակ աշխարհը թշնամի իրենց դէմ : Կը լսէին ականջալուր այն ծափահարութիւնները, զորոնք դուրսը կը հնձէր ԺԹ · դարու գրական լեզուն :

## ՄՐՑՈՒԹԵԱՆ ԱՍՊԱՐԷԶԻ ՎՐԱՅ

Կը կանխենք ըսել թէ յաջորդ տողերուս մէջ երբ պահանջէ առիթը խօսիլ երկու Դպրոցներուս ընդհարումներու մասին, պէտք է գրական–բանասիրական տեսակէտը միայն աչքի առաջ ունենալ : Գրաբարի ուսումը գլխաւորաբար Մխիթարեան երկու Դպրոցներու մէջ կը զարգանար · երկուքն ալ նախանձախնդիր լեզուի վերանորոգութեան : Բայց թէ ի՞նչ սկզբունքներով կարելի էր յաջողագոյնս հասնիլ այն նպատակին, ահա հոս էր կարծեաց անմիաբանութիւնը, վէճին հրատապ կէտը : Եւ որովհետեւ զուտ գիտական հողի վրայ էր բանավէճը, այս պատճառաւ ալ պէտք չէ գայթակղիլ, եթէ վիճաբա–

կամ ապականելու» : Այտընեան, Քննական Քերականութիւն, Նախաշաւիղ, էջ 292—293 · հմմտ. եւ անդ, ծան · 25—26 :

նութեան ընթացքը հասնի բորբոքման բարձրագոյն կէտի, եթէ վիճող կողմերը նոյն իսկ ձեռնամխի խառնուին իրարու, եւ երբեմն նաեւ անձնականութիւնն առնէ խօսք: Այս վէճերը այժմ պատմութեան կը վերաբերին. վկայ են անոնք թէ նախնիք ո՛րքան կը հետաքրքրուէին մայրենի լեզուի հարցերով, ի՛նչպէս վրէժխնդիր էին լեզուի յատկութեան, պերճութեան եւ ճոխութեան: Նման գրչամարտութիւններ, թերեւս աւելի սաստկութեամբ, տեղի ունեցան նաեւ հումանիստներու դարուն, նոյն իսկ ԺԸ. դարու վերջերը գերման աշխարհի մէջ: Անոնք գրականութեան բեմին վրայ պանծալի արարուածներ են, որոնք կոչուած են աւելի դէմքի վրայ ժպիտ, քան սրտի մէջ դայրոյթ արթնցնելու:

1841 Յուլիս–Օգոստոսին լոյս տեսաւ Նոր Դպրոցի անդրանիկ հրատարակութիւնը — Բոսուէի Խօսք վասն տիեզերական պատմութեան: Ինչպէս պիտի տեսնենք յետոյ՝ ոչ մէկ խօսք, ոչ մէկ ակնարկութիւն չկար գրքիս սկիզբը Նոր Դպրութեան սկզբունքներու վրայ, թարգմանութեան լեզուի եւ արուեստի վրայ: Աշխարհին ազատ թողուած էր առանց նախապաշարուելու կարել իր դատաստանը լեզուի ընտրութեան կամ այլանդակութեան մասին: Կար համեմատութեան համար հրապարակի վրայ նոյն գրոց ուրիշ թարգմանու-

*թիւն մ՚ալ Հին Դպրոցէն կատարուած հին գրութեան սկզբունքներու համեմատ: Մինչ միոյն մէջ Նոր Դպրոցի առաջին սերունդը կը բարբառէր թոթովելով, երկրորդին մէջ Հին Դպրոցը կը խօսէր քաջավարժ:*

*Առաջին բախումը կ՚ակնկալուէր Տնեցի-ներէն: «Բանգի եւ եղբարքն իսկ չէին հաւա-տացեալ ի նա»[3]: Կային Մխարանութեան մէջ երիցագոյն եւ ծերագոյն եղբայրներ, որոնք հին Դրութեան հետեւողներ ըլլալով, պիտի չհաճէին երիտասարդներու խիզախ եւ խիստ վարդապետութեան եւ պիտի չխոնարհէին անոնց ոտքը եւ յանձն պիտի չառնէին մօ-նալով ինչ գիտէին՝ միւսանգամ սորվիլ երի-տասարդներէն: Եւ եթէ չէին համոզուած «երիտասարդ իմաստուններու» կենդանի բարբառէն Նոր Դրութեան առաւելութեան-րուն մասին, տոխպուած էին գոնէ լռել, որովհետեւ կը տեսնէին թէ Ագարեան ինքնին հովանաւոր կանգնած է անոնց:*

*Որպէս զի գոնէ ի ներքուստ կատարեալ ապահովութիւն ունենան «երիտասարդ իմաս-տունք», Ագարեանի հաւանութեամբ կը գու-մարեն Վանական ժողով, կը պարզեն իրենց Դրութեան վարդապետութիւնը եւ անոր ա-ռաւելութիւններն եւ հեռաւոր պայծառ ա-պագան՝ ժողովականներու առջեւ: Կը յայտ-նուին անշուշտ թեր եւ դէմ կարծիքներ·*

---

[3] Յովհ. է, 5:

*բայց միաձայն հաւանութեամբ կը յայտարարուի ի վերջոյ, թէ «Ոսկեդարեան հայերէնը իր սկզբանց մէջ կը ճանչնայ միակ հարազատ գրաբար լեզու, եւ կ'ընդունին զայն Միաբանութեան համար միակ պաշտօնական լեզու»: Կը կազմուի անմիջապէս Բա–*նասիրաց ժողով՝ *Գարագաշեանի, Գաթըրճեանի, Ցօփանեանի եւ Տէրտէրեանի մասնակցութեամբ, եւ կը յանձնուի անոր հսկողութեան Դասական հայերէնի սկզբունքներու պաշտպանութիւնն եւ գործադրութիւնը: Ասով ապահովուած էր գիւտին ապագան:*

*Երիտասարդները, որոնք համերաշխ ապրիլ կ'ուզէին իրենց ինչպէս մերձաւոր, նոյնպէս հեռաւոր եղբայրներու հետ, մտահոգ կը սպասէին լսել Կ. Պոլիս եւ Զմիւռնիա գտնուող վարդապետներու տրամադրութիւնը: Ոմանք պահեցին բացարձակ լռութիւն. ուրիշներ արտայայտուեցան գովութեամբ: Բացառութիւն կազմեցին Հ. Ռափայէլ Ուզունեան ի Մոհիլով Դնիեստեր գետին եզերքը, ուր պարապած էր յոյն եւ լատին դասականներու թարգմանութեամբ, եւ Հ. Անտոն Դանիէլեան ի Կ. Պոլիս: Առաջինը «Իբրեւ խիստ բարեկամ», ինչպէս կը բնորոշէր Հ. Պ. Ցօփանեան, կը քննադատէր իր երիտասարդ եղբարց թարգմանութեան արուեստն, անոնց լեզուին մերձենալու, եւ երկրորդը կը յամառէր մնալ իր դժգոհութեան մէջ: Սա, Հ. Ա. Դանիէլեան, առիթ*

առնելով Հ. Գ. Այվազովսքիի յարձակողականը Բազմավէպի մէջ, կը գրէր (Թղ. 19 Նոյ. 1845) առ Գեր. Ա. Ազարեան. «Աւուրբք յառաջ Վ. Հ. Պօղոսն մեր ընկալաւ զանանուն եւ տառադարձ օտարաձայն թուղթ մի, զորոյ եւ օրինակն առաքեաց ի վանս՝ որպէս թուի ինձ հանդերձ մեկնութեամբն: Ահա եւ Բազմավէպն Թիւ 17, 18 Սեպտեմբերի, յորում ընդ բնաբանիւ. Ազգային մատենագրութիւն. Նորահնար բառերու վրայ, յայտ յանդիման տեսանի քննութիւն եւ հեղնութիւն նորութեանց արդի Գրագիտաց Միաբանութեանս: Մտադիր ընթերցեալ մեր զայն՝ որքան եւ մխիթարէաք իմն զմեզ յառաջին տեսութեան անդ՝ ի համարիլ զայն յուղւոյ նախանձու յառաջ եկեալ, բայց որում առաջին գործն Արամեան Ընկերութեան հռչակաւոր հանդիսացաւ վասն նիւթոյն եւ առարկային, սակայն վերադարձ խորհրդով նկատեալ՝ ոչ կարեմք ուրանալ զճշմարտութիւն բանիցն քննութեան:

«Ապաքէն Ծերագոյնքս առէպ բողոք բարձաք ընդդէմ անլուր, խորդ եւ անպիտան նորութեանցդ, եւ չեղեաք լսելի: Եւ տկարս պատրաստեալ էր ըստ մասին պատճառօք եւ հիմամբ զինել ընդդէմ, այլ զբաղմունք պաշտամանց, եւ տկարութիւն գլխոյս ոչ թողացուցանէին: Նա՝ հրաժարեցայ ի խորհրդոցս, զի մի յանօգուտս մրցեալ ի վախճանի զանուն չատաբանողի ժառանգեցից: Քանզի

րուայ խոկ յՈմանց եկելոց ի Վանաց, թէ Փուժար արդէի Գրագիտաց մերոց Վանական Ժողովով հաստատեալ իցեն հետեւիլ Նորութեանցդ այդոցիկ: Եւ երկու ոմանք համախոհք նոցա եւ համաչափք որ աստ, զնոյն հաստատեցին, հեղնելով խոկ, եւ անմասն հրատարակելով զմեզ ուսումնական Դասուն այնորիկ:

«Աղէ՛, յառաջ մատիցեն արդ Ուսումնասէրքդ պատասխանի տալ հետաքննութեանց Բազմավիպիդ, եւ կանգուն պահել զհեղինակութիւնդ: Թերեւս զՎանական Ժողովով հաստատութիւնն երկրորդիցէ՞ք նմա...: Ոչ եղէց կարծեմ յանդուգն, եթէ ասացից, թէ այս իցէ պտուղ Նորութեան հողւոյ, եւ անխորհուրդ յանձնապաստանութեան:

«Ցաւ է ինձ յոյժ, Գեր. Տէր եւ Հայր, վասն այսր հրապարակական արհամարհանաց, եւ հետեւանաց նորա. անմխիթար եմ, եւ եղէց ո՛ւր եւ իցեմ: Թողցէ՛ ինձ՝ եթէ եղէ անզգամ, սէրն նախանձախնդրութեան Հասարակաց համբաւոյ առնէ զիս անզգամ: Եւ մի ասասցեն դեռարբոյս Հեղինակքդ. «Թո՛ղ զի այլք արասցեն եւ ասասցեն զինչ եւ կամիցին, մեք զմերն գիտեմք». զի յոչ ինչ հիման վերայ հաստատիլ կարեն բանքդ այդորիկ»:

Նոյն Հայրն էր դարձեալ, որ 21 Յուլիս 1847 կը գրէր առ Հ. Յ. Փօզաճեան տողերս.

«Գիտելով գիտացէք Վ. Զեր, զի գործն այն Պատմութիւն տիեզերական ժողովոց կարի հաճոյ գտաւ՝ մանաւանդ յաչս ողջամիտ Արանց. երանի թէ և յայնժամ չլինէին հետք նախընթաց անօգուտ հնասիրացդ նորասիրութեան. առաւել ևս ասեն՝ եռանդեամբ ընթեռնուէաք զայն գերօգտակար մատեան. և այս բաւ է: Աղէ՛ անսացէք ծերագոյն Եղբարցդ, և բարի լինիցի. եկեսցեն աւուրք, յորս քաջ իրաւունս տայցէք նոցա [— յայսմ կը սխալէր Վեր. Հայրը —]. այլ ունկնդիր լինել հմտացելոց մեծ իմաստութիւն է և շահ»:

Հին Դպրոցի ոգին էր, որ կը բարբառէր Հ. Ա. Դանիէլի գրչին տակ, Հին Դպրոցը, որ դարուն հայերէնի խառնախօս խղուըրտիւնէն կորնչուցած ականջի նրբազգածութիւնը՝ դատաւոր կը կանգնէր և վճիռ կը կտրէր դասական հայերէնի մասին: Արդարութեամբ չէր դատակնիքը. չէին կրնար դասականները հակառակ ամէն բարի ցանկութեան ունկնդիր ըլլալ իրենց ծերագոյն Եղբօր:

Պիտի տեսնենք յետոյ թէ երբ սկսան Մխիթարեան մամուլէն ետեւէ ետեւ հրապարակ ելլել դասական հայերէնով հատորներ, ապշած մնաց աշխարհը նորանշան լեզուի և ոճի առաջ և չկրցաւ դիւրաւ խելահաս ըլլալ թէ յորո՛ւմ է գաղտնիքը: Պաղտասարեանի յայտարարութիւնը, թէ Բոսուէտի «Թարգմա-

նութիւնը շատ ընտիր է եւ գլխովին նման մեր քաջ մատենագիրներու ոճոյն, որոնք Ե. դարուն ծաղկեցան» արթնցուցած էր Հին Դպրոցի աշակերտներէն ոմանց ախորժութիւնը: Այս ախորժութեան պատճառը բացատրած էր Բագրատունի իր բառախաղին մէջ, զոր ըսած էր նկատմամբ Գաթըրճեանի. «խաթըրի պէս չիփաէ գարնել ու ուրիշին գործքը (այս ինքն Հին Դպրոցի ստեղծագործութիւնները) վար ձգել աշխատեր է»: Գաթըրճեան եւ Ընկերք դեռ չէին խօսած հրապարակին իրենց Դրութեան մասին. մտադրած էին նախ առնել եւ ապա ուսուցանել. եւ ընթացաւ համբաւը խօսքէն յառաջ:

Նոր դրութեան համառօտ բացատրութիւնը առաջին անգամ լոյս տեսաւ 1845ին, Գարագաշեանի Նկարագիր ուսմանց գործին մէջ, առանց շունչի, անազդուկ:

Թէ ո՛րքան յուզում, զայրոյթ եւ չխոթութիւն պատճառեց այս համառօտ, բայց կուռ բացատրութիւնը, կը զգացուի հետեւեալ կրկին նամակներէն, որոնք գրուած են եւ ուղարկուած ի Կ.Պոլիս [4] եւ ի Վիեննա, գործին Կ.Պոլիս հասնելէն քիչ յետոյ:

[4] Հ. Պօղոս Ցախչանեան առ Հ. Ղեւոնդ, 17 Հոկտ. 1845, Կ. Պ. կը գրէ.

«Երէկ մինչ ի սենեկի գրոց էի երեք առ իս այր մի գծուծ զգեստուք թուղթ ինչ կնքեալ անծանօթ կնքով... Հարցի զայրն թէ դու ո՛ ես. եւ նա ասաց. «Գալաթան խայլխճը եմ»: ... Հարցի զայրն՝ յետ ընթեռնլոյս զթուղթն՝ եթէ ո՛ եւ ուրկուստ ոք էր որ ետ քեզ զթուղթս զայս. եւ նա ասաց. Խումխարուցի

*Վերապատուելի Հա՛րք․*

*Ի բոլորն տրաբայլութեան որ ի Նկարագիրն ուսմանց՝ փղայգրեալ զեկուցաք զամենապեղեան կոմպոսութիւնն, բայց ո՛չ չատ ինչ զուգարիզեալ էր տրաբայլն․ վասն որոյ պատշաճ վարկանիմք յայտ առնել վերապատուութեան ձերոյ, եւ առ օգուտ միաբանութեանդ յայժ հարկաւոր, զի թէ կովսի կոմպոսութիւնն պէտպէտուացի ամենայն բիրզոսք եւ զեպրայք պուրդիզեալք ի ձերոց տորդեայց՝ ի հրիզիկուղ զարձցին, եւ ոչ ոք զեկուցէ զտրաբայլութիւն ձեր եւ զուք զաննովլի պատահեսջիք․*

*Ողջ լերուք․*
1845 *հոկտ․* 15
*ի Պօլիս․*

*Վերապատուութեան Ձերոյ*
*Հ․․․ Ամիկոս* [5]*․*

*Առ վերապատուելի Հայր Գործակալ*
*Մխիթարեան Միաբանութեանն Վիէննայու*
*ի Պէյօղլու:*

---

*սարաֆ Պետրոսն էր»: Ոչ ճանաչեմ զայսպիսի այր եւ ոչ կարծեմ եթէ երեւելի ոք իցէ որ զայսպիսի մանկան բանս գրեալ է: … Որպէս եւ իցէ երեւի թէ սա եւ որք նմին նման են՝ այսպիսի կատականօք արհամարհեն զմեր գիրս»:*

[5] *Նամակագրին միտքն է․ «Ձեր Նկարագիր ուսմանց աշխատութեան մէջ կարդացինք ամենագեղեցիկ չարադրածը, բայց շատ գովելի չէր աշխատութիւնը․ անոր համար պատշաճ կը համարինք ծանուցանել ձեզի եւ ձեր Միաբանութեան շատ*

*Վերապատուելի Հարք.*

*«Յաւուրս յայսոսիկ Գիրք իմն եհաս ի Կոստանդնուպօլիս ի ձեռն բազմաց յուսումնասիրաց, եւ մակագիր մատենկանն է՝ Նկարագիր ուսմանց. ամենեքեան փափագին գիտել զուսմանցն նկարագիր՝ զի փառեալ բորբոքեսցի ի նոսա սէր յաշխարհօգուտ գիտութիւնս. եւ այսու խորհրդով ոմանք յուսումնասիրաց անտի ցանկան ունել զհայերէն գրաբառ թարգմանութիւն նոյն գրոցն. զի որք ընթեռնունն՝ իմասցին թէ զի՞նչ գրեալ է ի գիրսն, եւ օգտեսցին նովաւ։ քանզի (ի բաց թողեալ զծաղրն), ճշմարտիւ ասեմք՝*

---

*հարկաւոր՝ որ եթէ այս կերպով շարադրութիւնը շարունակուի՝ ձեր մամուլներէն հրատարակուած ամէն գիրք եւ մատեան ծիծաղելի կը դառնան, եւ ոչ ոք կը կարդայ ձեր աշխատասիրութիւնը, եւ դուք վնաս կը հանդիպիք։ Ողջ լերուք։*

(Ստորագրութիւն) *Բարեկամ»։*

*Նկարագիր ուսմանց գործին մէջ կիրարկուած տառադարձութիւնը կ՚ակնարկուի հոս, զոր ծիծաղական եւ վնասակար կը գտնէ բարեկամն Ամիկոս։ Այս առթիւ կը գրէ Գեր. Ա. Այտընեան. «Զափազանցութիւնք ներեալ են ծաղրապատկերի* (caricature), *որ յարգ ունի միայն՝ երբ արուեստին տեղեակ ճարտար գրչի գործ է։ Այստեղ՝ փոքր ի շատէ բանասէր եղողը կը տեսնէ յայտնապէս՝ թէ ազդարարող Ամիկոսն այնպիսի տարեր մէջ մտեր է որ իւրը չէ, եւ ուր հազիւ կարող է շնչել։ Սակաւատող գրուածոյն մէջ իւր ողորմելի հայկաբանութեանն աստիճանը ցոյց տալէն զատ՝ տասնէ աւելի տառադարձութեան սխալները բաւականէն աւելի անգիտութիւն կը ցուցընէ արուեստին, զոր դատելու առած է։ Իսկ* փդպյգիրեալ *եղջերուաքաղը կ՚երեւայ առ ի զուարճութիւն միայն առեղծուած» (Հանդ. Ամս.* 1888, *էջ* 98)։

եթէ պատուականագոյն է այս գիրք քան զամենայն գիրս հրատարակեալս ի ձերոց մամլոց, միայն արգելս ունի օգտին զաղաւաղ եւ զծաղու արժանի լեզուն. եւ մեր գիտացեալ՝ զի առ այդ բաւական անձինք գտանին ի վանադ Ձեր, որոց եւ յանձն առեալ է ի հաստատութեան անդ Արամեան Ընկերութեանն մատեանս ի լոյս ընծայել, որովք ազգն օգտիցի, վասն որոյ ձեզ յաւէտ յանկաւոր վարկուցեալ զայս աշխատութիւն՝ որ փափաքանաց ընկերութեանն է համեմատ, աղաչեմք զՁեզ զհայերէն թարգմանութիւն նոյն օգտակար գրոցն հրատարակել, զի չահեսցին՝ որք ընթեռնուցունն. Ողջ լերուք.

1845 Հոկ՛՛ 18.

Ի Պօլիս.

Ն. Ծ. Ոմն յուսումնասիրաց:

Առ Վերապատուելի Հարս
Մխիթարեան Միաբանութեանն
Վիեննայու:

Թէ ի՞նչ ուղղութենէ կու գային այդ թղթերը եւ կամ թէ ո՞վ էր բարեանուն Ամիկոսը, դժուար չէր ի Վիեննա գուշակել, եթէ նոյն իսկ չմատնէր երկու թղթերու ալ միակերպ գրչութիւնը:

Թղթերուս գրութենէն ամիս մը յառաջ՝ Բազմավէպ իւր Սեպտեմբեր 1 թուով կը կանխէր հրատարակել Հ. Գաբրիէլ Վ. Այվա–

զովսկիի *գրչէն յօդուած մը «Նորահնար բառերու վրայ»*[6]. *ուր քննութեան կ'առնուէին «Նկարագիր ուսմանց» գործին մէջ կիրարկուած* ազգ (*փոխ.* սեռ), դպրութիւն, գրականութիւն, գրաւորականութիւն (*փոխ.* քերականութիւն), փիւսկեան (*փոխ.* բնախօսական) *բառերը, որոնք իբրեւ դասական շրջանի բառեր նախապատուութիւն գտած էին նոյն Նկարագիր ուսմանց մատենին մէջ:*

*Քիչ յետոյ լոյս տեսան՝*

1. *Հ. Ե. Հ[իւրմիւզեան], Հին եւ Նոր անուանց տարադարձութեանը վրայ տեղեկութիւն*[7]:
2. *Հ. Արս. Բ[ագրատունի], Հայերէն գրաբառ լեզուի յստակութեան վրայ*[8]:

*Մինչ առաջին գրութիւնը, Նոր Դպրոցի տարադարձութեան վարդապետութիւնը նկատի կ'առնէր, երկրորդն՝ թէեւ առանց անունն յիշելու — «ան կարծիքները հանողներուն անունն ալ չենք տար հոս տեղս. կը խնայենք իրենց պատիւը» — բայց յայտնապէս կը յարձակէր լեզուի Նոր վարդապետութեան դէմ, որ քարոզուած էր եւ գործադրուած* Նկարագիր ուսմանց *գրքին եւ Իտալերէն–գաղղիերէն–հայերէն–տաճկերէն Բառարանին մէջ: Տարապայման կը գտնէր Բագրատունի Նոր Դպրոցի խորշումը ամէն ոչ–դա–*

---

[6] *Բազմավէպ*, 1845, *Թ.* 17, *էջ* 361—367:
[7] *Անդ*, 1846, *էջ* 51—54:
[8] *Անդ*, *Յուլիս* 1, *էջ* 196—204:

*սակայն բառերէ եւ յարումը դասական մատենագրութեան այնպիսի բառերու, որոնք կա՛մ եղած էին գործածութենէ կամ ստացած ուրիշ նշանակութիւն: Այս վարդապետութեան արդիւնքը պիտի ըլլար, կ'ըսէ Բագրատունի, բնականաբար բառասով. որուն հետեւութեամբ կը ծագի հարկը դիմելու «նորահնար» բառերու, ինչպէս են* ցնորք *փոխ.* երեւակայութիւն, յանդիմանակաց *փոխ.* առարկայ *են եւ կամ մուրացածոյ յոյն լեզուէ գոհացնելու պահանջքը. այսպէս՝* կոմիկեան, ստիքս *են: Կը սրտնեղի Բագրատունի մանաւանդ վարդապետութեան այն կէտին դէմ, թէ արտաքոյ դասական մատենագրութեան՝ Ե. դարու Ա. կէսէն յետոյ չկայ յստակ, ընտիր, հետեւելի գրականութիւն: Այս հակամարտութեան ժամանակ կը ներկայացնէ Բագրատունի Հին Դպրոցի վարդապետութիւնը, զոր կարելի է հետեւեալ կէտերու մէջ ամփոփել.*

1. *«Որովհետեւ գրաբարը հին գրքերէ կը սորվուի», հարկ է յստակ լեզուի նմանութեան օրինակ առնել «մեր հին հեղինակները»:*

2. *Պէտք է զանազանել այս հին հեղինակները ըստ յստակութեան ոճոյ երեք դաս:*

3. *Այս դասերը սակայն եթէ «ժամանակի վրայ բաժնենք, ճամբան չելլեր, ու խնդիրը չենք կրնար լուծանել»», այս ինքն*

հնարաւոր չէ ըստ դարուց զանազանել յատակ եւ ոչ յատակ մատենագիրները ։

4. «Հայերէն գրականութիւննիս թարգմանչաց ատենէն ինչուք ԺԲ. կամ ԺԳ. դարը աղէկ քննելու որ ըլլանք, երեք տեսակ այլ եւ այլ մատենագրութիւն կը գտնենք» ։ Այսինքն

Ա. Դաս. ա. Հեղինակներ, որոնք «բուն յատուկ հասարակաց ընտել հայու ոճով գրեր են». այսպէս են. Աստուածաշունչ, Ժամագիրք, Պատարագամատոյց, Մաշտոց, Շարական ։ «Ասոնք կ՚ըլլան մեզի օրինակ բուն ազգային լեզուն եւ ոճը ճանչնալու եւ ընտրելու» ։

բ. «Մեկալ հեղինակներէն անոնք պիտի յատուկ ազգային ոճ սեպենք, որոնք որ ատոնց նման են կամ կը մօտենան, ո՛ր ատենի մարդ ըլլայ նէ ըլլայ» ։ Այսպէս՝ Ագաթանգեղոս, Բիւզանդ, Կորիւն, Եզնիկ, Եղիշէ, Մանդակունի, Փարպեցի, «Խորենացին Պատմութեան մէջ շատ տեղ», Ոսկեբերան, Բարսեղ Կեսարացի Վեցօրէից մէջ, Սեբերիանոս, Կիւրեղ Երուսաղէմացւոյ Կոչումն Ընծայութեան, Շիրակացի, Արշարունի, Խոսրով, Լաստիվերցին, Սարգիս, Իգնատիոս, Շնորհալին, Մխիթար Գոշ ։ «Ասոնց անխիղճ կրնանք հետեւիլ՝ թէ բառերուն, թէ ոճերուն» ։

Բ. Դաս. Մատենագիրներ, որոնք «գաւառական կամ ինքնահնար ոճով մը գրեր

են»: Այսպէս՝ Խորենացին Պատմութեան Ա. գրքին մէջ, Ճառերուն մէջ, Պիտոյից գրքին մէջ՝ «թէ որ անորն է նէ». Օձնեցին, Յովհ. Կաթողիկոս, Արծրունի, Նարեկացի, Մագիստրոս եւ այլն: «Ընտրանօք չատ բան, մանաւանդ բառ, կրնայ առնուիլ առոնցմէ»:

Գ. Դաս. որ «օտար ոճ խառներ է».

ա. ասորերէն բառեր եւ ասացուածներ. Եւսեբիոսի Եկեղ. Պատմութիւն. Յակոբ Զգօն, Եփրեմ:

բ. յունաբան թարգմանութիւններ. 1. Դաւիթ Անյաղթի թարգմանութիւնք 2. Դաւթի Սահմանք, Փիլոն, Պղատոն: 3. Եւսեբիոսի Քրոնիկոն (!), Աղեքսանդրի Պատմութիւն, Նիւսացի, Նաղիանզացի, Թերեւս նաեւ Պիտոյից գիրքը: — «Ասոնկներէն աղուոր հայերէն բառեր կամ մէկ մասնաւոր ազէկ գրուցուածք մ'որ գտուի նէ՝ Ա. եւ Բ. դասին նման, անոնք միայն կրնայ առնուիլ, եւ ոչ թէ բոլոր բոլորովին ոճին ու ամէն դարձուածքին հետեւիլ» են (էջ 202):

5. Այս Ա.—Գ. դասերէն յատկապէս զգուշալի կը գտնէ յունաբան Դպրոցի հետեւիլը, մասնաւորապէս անոր նորահնար բառերուն. «անկարելի ալ է՝ որ ազգ մը իր բուն յատուկ ազգային մտքով ըսուած բառը մոռնայ կամ ձգէ, ու օտար իղէայով չինուածը առնէ անցնի» (էջ 203):

Լեզուի յատակութեան հասնելու համար

այս լայն ճանապարհը ցուցնելէ ետքը կը դրէ Հ. Ա. Բագրատունիի ինքնադրոհացումով.

«Ահա ատ է մեր ընտրութիւնը եւ մեր բաժանմունքը: Հիմայ թող այլք տեսնեն թէ ո՞ր կերպ ընտրութիւնը եւ բաժանմունքը չիտակն է՝ ուղիղ դատմունքով, եւ ազգին մաքին յարմար, եւ նախնեաց հետեւելուն օրէնքը եւ ուղիղ ճամբան ցուցնող: Եւ հակառակ կարծիք կամ մոլորութիւն ունեցողներն ալ [որոնց «անունը չենք տար հոս տեղս. կը խնայենք իրենց պատիւը»], դէթ ի շնորհս լեզուին եւ իրենց պատուոյն, ետ կենան գոնէ ուրիշը գլխէ հանելէն, մանաւանդ թէ ըսելու է՝ գլխէ հանելու ջանքէն: Զի չենք կարծեր որ ասանկ յայտնի բանի մէջ մէկը գլխէ ելլէ» (էջ 203): Եւ այս ամէն նախահոգութիւնը միմիայն այն սուրբ նախանձախնդրութեամբ որ չըլլայ թէ «այն մոլորութիւնն ունեցողները» իրենց նոր վարդապետութեամբը կամ նոր աղանդովը պատճառ ըլլան հայերէն գրաբար լեզուի «յատակութեան» խանգարման. վասն զի «հնուց ի վեր [այս ինքն՝ 1841էն ի վեր] երբեմն երբեմն յոմանց խօսքով եւ գրով՝ կամ թէ ըսենք գործքով՝ քիչ մը նոր եւ օտար վարդապետութիւն եւ օրինակ ալ դուրս ելած կը գըտնուի անձնական կարծիքով կամ կողմնասիրութեան հոգւով, որ չգիտցողներուն մոլորութեան պատճառ կրնան ըլլալ, եւ հայերէն

*լեզուին նորէն մէկ ուրիշ տեսակ մը խանգարման»* (էջ 196)։

*Եւ այս ծայրագոյն բանասիրական*[9] *տու-գերուն տակ կը ստորագրէր «Հ. Ար. Բ.», Սամուէլի* Արուեստ բանականի *մեծանուն թարգմանիչը։*

*Ունէին անշուշտ Դասականք շատ բան*[10], *աւելի հաստատ ցուցմունքներով, պատաս-խանելու համար «Բազմավէպ»ի յիշեալ յօ-դուածներուն, բայց «երիտասարդ իմաս-տունները» խոհեմագոյն համարած են յար-գել լռութիւնը. Ստեփան Ոսկանեան*, 1846 *Յունիս* 8 *թուակիր նամակով կը գրէ Գա-բրիէլն առ Հ. Մ. Գարագաշեան. «Բազում զգաստութեամբ եւ ճշմարիտ բանիւք գրէ ազգասէր Սրբութիւն ձեր, եթէ չէ պարտ յայտ բանակոխ լինել ընդ Բազմավէպ լրա-գրոյն։ Այո՛, համոզեալ եմ, զի արանց քա-ջաց գործ է մեծանձնութեամբ զվատութեան բազկաց նետս յոչինչ դնել, մանաւանդ եթէ*

---

[9] *Այս առթիւ կը գրէր Հ. Յ. Գաթըրճեան իր անտիպ «Հայերէն բանասիրութեան համար արմատա-կան խնդիր մը» փոքր գրուածքին մէջ. «Ան (այս ինքն դասական հայերէնի անդրադարձութիւնը) մէկ մեծ գիւտ մըն էր, որուն որ արտաքինները ինչպէս յա-ռաջ չէին մտադիր եղած՝ նոյնպէս եւ ոչ ալ մինչեւ ցայսօր* (1846ն) *եւ ոչ աղէկ մը իմացած են, ու դեռ իրենց պարագլուխը Եւսեբիոսի Քրոնիկոնը ու Փի-լոնը մի եւ նոյն գծի վրայ դրած է. անանկ որ աս բանասէրներուն Ոսկի դարը՝ քիմիքոններուն ոսկեղէն պէս անբաժին բան մըն է»։*

[10] *Ունիմ աչքիս առջեւ ընդարձակ ճառ մը տա-ռադարձութեան եւ յարակից խնդիրներու մասին, գրուած* 1846/47 *տարւոյն։*

տուաթուր կոխել, բայց աղաչեմ զամենեսեան զձեզ, ի գիրս, զոր գրոշմէք երկարազոյնս եւ պարարտագոյնս գրել մի զանդաղեսջիք, զի բազումք են յազգի մերում, եւ զոմանս իսկ յականէ ճանաչեմ, որք այնպէս կարծեն կու-րութեամբ իւր եթէ նորաձեւս ինչ նորոգի-ցէք ի վերայ հայ լեզուոյ... եւն»:

Նոյն այս պատուական երխասարդը, որ կարճ ժամանակ մը միայն գտնուած է Գա-րագաշեանի, Գաթըրճեանի եւ ընկերաց շրջա-նին մէջ, առաջինն եղած է, որ ողեւորուած է զատական հայերէնով եւ հրատարակած ինք զինքը ջերմ ջատագով անոր· իր տողերն են հետեւեալները, զոր գրած է Պարիզէն 17 Մարտ 1846 առ Հ. Մ. Գարագաշեան.

«Մեծարգոյ եւ գիտական Հայր իմ Հօգեւոր.

Յիննեւտասներորդի Փետր. ամսոյ ըն-կալայ զգիր մեծ. Սրբութեան ձերոյ եւ ու-րախ եղէ· ոչ սակաւ շնորհ ունիմ զի զգիրս զոր խնդրեցի ի ձէնջ, յանձնեալ էք պարոն Գրիգորի Աբելեան, վասն զի նա հասուսցէ ի ձեռս իմ անշուշտ· այլ ցաւ է ինձ զի ծախք ճանապարհին եւ անհնարին մաքս ոչ տան թոյլ զայլ եւս գիրս խնդրել ի ձէնջ, ոչ վասն իմ այլ վասն տոհմակից եւ հասակակից բա-րեկամաց իմոց, որոց առաջի հանապազ զո-վութեամբ խօսիմ զմեծ եւ զգովելի աշխա-տութեանց ձերոց, որպէս եւ Բնական պատ-մութիւնն այն, զոր խնդրեցի, վասն մերա-

*գգեայ երիտասարդի ուրուք էր եւ ոչ վասն իմ, որ բժշկական արուեստին պատկառ կայ աստ: Այլ զի տակաւին զերկրաչափութեան գիրս չեւ էք գրոշմեալ, աղաչեմ յոյժ քաջ քննել եւ երկարագոյնս գրել. եւ եթէ հնար իցէ զօտարազգի* բառս[11] *չածել ի գործ, զի վասն այսր միայն բիծ եդեալ ի վերայ ձեր հէգք ոքք եւ խամք ստգտանեն զձեզ. յոյժ ուրախ եմ, զի ազգասիրութեամբ զինուորեալք, վասն հայ լեզուին պաշտպանելոյ զէն եւ ասպարս յօրինեալ էք. քաջալերեցարո՛ւք, պատուական եւ սուրբ Հարք իմ, քաջալերեցարուք, մի՛ խնայէք աղաչեմ զմանգաղ ձեր ի սրբելոյ եւ ի մաքրելոյ զդաշտ գրագիտութեան Հայոց, զի տատասկք, զոր անդուլթք սերմանեն անդ, մի՛ արմատս ի խոր ձգեսցեն.* Եթէ ոչ այժմիկ, այո՛ անեմ առ յապա ժամանակս անմահ եւ նուիրական կացցէ անունն ձեր *եւ որպէս քաջ քաջ բաղուկք ձեր բուռն հարեալ վաղժոյժ լեալ զհայ լեզուն կանգնել ջանան ի կործանմանէ, նոյնպէս այս* ոչ յամեսցին ազգասիրաց խումբ, կոթող կանգնել ի յիշատակ ձեր: *Արդարեւ խղճ լինիմ, յետ ուսանելոյ զփափագելի իրս, զոր յուսամ եթէ ուսա՛յց տերամբ եւ ձեր հաճոյ աղօթիւք, դարձեալ գալ ի հռչակաւոր եւ ի լուսաւորեալ վանս ձեր, զի հաստատեալ գոլով իմ եւ զմխոս ձերովք զինուք եւ ես*

[11] *Նամակագրէն ընդգծուած:*

ընդ ձեզ, թէպէտ չիցեմ իսկ կարող, մարտեայց ընդ թշնամիս հայ լեզուի:

«Ուրախացայ նաեւ զի հաճեցայք ծանուցանել ինձ զայժմու զովելի եւ օգտակար աշխատութիւնս Ս. Հարցդ. ճարտար գիտեմ զի հաճելի լիցին ամենեցունց բարբառարանն եւ դպրութեան արուեստ են. այլ աղաչեմ զձեզ զՎիրգիլեայ Մշակականս փութով թարգմանել, զի եթէ զայդն հատուածն զոր ցուցիք ինձ, սքանչացայց զիս, որ չեմ իսկ ի համար գիտնոց ազգիս, որչափ եւս առաւել ուրախացուցէ եւ սքանչացուցէ զբնաւ ազգս:

«Յայսօսիկ աւուրս երկարաղոյն վիճեցայ ընդ երկու Մխիթարեան միարանս վանացն Ս. Ղազարու, վասն հայ լեզուի. եւ սկիզբն վիճման անտի ծագեցաւ զի զերկու մատեանս, զոր ընծայեցէք ինձ, ընթերցեալ նոցա սկսան ազխտ լինել ձեզ. յայնժամ ոչ համբերեալ թէպէտ եւ զօտութեան բանիւք, սկսայ պաշտպան կալ ձեզ, այլ ոչ կարացի համոզել, զի երկոքեան իսկ չեն տեղեակ հայերէն լեզուի, թէպէտ եւ ես իսկ չգիտիցեմ զայն: Զխօսս Ռափայէլ վարդապետի ուրուք ընծայեցին ինձ իբր գեղեցիկ օրինակ հայերէնի. այլ մեծարգոյ Հայր իմ, չեւ ընթերցեալ զերկուս կարգս բանից ի յառաջաբանի եւ ահա անդէն նշմարեցի զբառն[12]

[12] Նամակագրէն ընդգծուած:

«վերծանել», եւ անդէն իմացայ թէ որպիսի ինչ իցէ գրուածն. խնդրեմ քննեցէք զայն եւ տեսէք, զի որ գրէն զայն դատախարակ է հայ լեզուի ի դպրոցին Բատտուայ...: Զայսուիկ գրեմ առ ձեզ ոչ չար մտօք, այլ ցաւելով, զի գիտեմ քաջ զճշմարտութիւնն եւ ոչ կամիմ ընդունել զնա:

«Եթէ ընդ ժամանակս ժամանակս ուրախ առնել զիս կամիք ի տարաշխարհիկ տեղ–ւոջս, հաճեցարուք նամակ ինչ գրել. եւ զի եւ զերգս զոր երգէք գրել մի դանդաղեսջիք պաղատիմ:

«Զհոգեկից եւ զմեծապատիւ Առաջնորդ ձեր եւ զբնաւ Ս. Հարս ողջունեալ սրտակաթ եւ խոնարհութեամբ մնամ

Սրբութեան ձերում

[Պարիս, 17 Մարտ 1846:] Նուաստ Ծառայ
Ս. Ոսկանեան»:

Հակառակութիւնը, զոր կրեց Դասական լեզուն իր վերածնութեան առաջին օրերուն իսկ, արդիւնքն էր ուղղակի ժամանակի տհասութեան: Բանասիրական ըմբռնում կը պակսէր քննադատներուն. չէին յօժարեր ա–նոնք խոստովանելու թէ լեզուն այն վիճակի մէջ, ինչպէս կիրառութեան մէջ էր, խառ–նուրդ մըն է դարերու ընթացքին այլ եւ այլ ուղղութիւններէ եկած հոսանքներուն: Ինչ–պէս այլանդակութիւն մըն էր լեզուի յառա–

*կութեան տեսակէտով լատինաբանութիւնը, ոչ նուազ տձեւութիւն էր յունաբանութիւնը բնիկ հայ լեզուին համար, անոր կից նաեւ յընթացս դարերու եկած յարած այն լեզուական աղաւաղութիւնները, որոնք ազդեցին բնիկ լեզուին հարազատ նկարագրին վրայ: Գոց էին սակայն աչքերը տեսնելու այս ամէնը:*

*Հ. Բ. Սպենեան 1847, Ապրիլ 30 թուակիր թղթով կը գրէր Զմիւռնիայէն առ Հ. Մ. Գարագաշեան.*

*«Զոր ինչ առ Եղբայր քո գիրաց հայերէն մատենագրելոյ գրեալ ես, ընթերցայ ուրախութեամբ. եւ յուսամ եթէ ինքնին ուշիմ պատանին հաւանեսցի եւ առնուցու յանձն զբանիցն ճշմարտութիւն, մանաւանդ զի եւ լսեմ խակ զի բազում ինչ զօրութեան բանս խօսի նա այժմ զմերոց իրաց: Այլ ո՞ւր իցէ գտանել, Եղբայր, միտս հլուականս եւ ընտանիս ի լսել դատաստանս անաչառութեամբ, զպատճառն կշռել, համեմատել զընծայութիւն հաւանութեանցն, եւ ճշմարտութեանն յորմէ յաղթեցան, լինել անձնատուր: Իցեն թերեւս, չկամիմ ուրանալ, սակաւք ոմանք, իբրեւ զեղբայրդ քո, որ փիլիսոփայօրէն զամենայնէ առնիցեն դատաստան. այլ հաւատա ինձ զի թիւ այսպիսեաց սակաւ է յոյժ, զի ամենեքին (եթէ զսակաւս ոմանս կամիցիս առնուլ ի բաց), զորոց կարծեմք եթէ իցեն ինչ յիրս ուսմանց եւ լուսաւորու-*

թեան, տակաւին ի նմին խաւարի շրջին, այնչափ՝ որչափ ոչ է մարթ հաւատալ՝ բայց եթէ յորժամ սակաւիկ մի թողեալ զլուսաւորութեան վայրան յորում իցէ, ինքնին մատուցեալ ականատես իրացն լինիցի ոք: Տակաւին զթանձրութիւն գրոց նկատեն, զբազմութիւն հատորոց հաշուին, ընդ Վենետիկցի կամ Աբբացի եւ ընդ Վիէննացի ընտրեն, զպաճուճեալն գեղեցկութիւն եւեթ խնդրեն, զնոյն սիրեն, ընդ նոյն զարմանան, զնոյն միայն գովեն»:

«Նորասէր հնասիրութիւն» անուանեցին տոհմիկ լեզուի սրբութեան նախանձախնդրութիւնը, եւ «մոլորութիւն», նորաղանդ վարդապետութիւն այն սկզբունքները, որոնք կը դիտէին յունաբանութիւնն ալ, դարերու պատճառած աղաւաղութիւններն ալ ջնջել անհետացնել գրական լեզուէն, եւ բերել հայ բարբառին, որով Սահակ եւ Մաշտոց խօսեցան, նախապատուութիւն տալ:

Եւ ոչ միայն հակայողութիւն կը պակսէր քննադատներուն[13], այլ եւ չունէին անոնք

[13] Ս. Ղազարու Մխիթարեաններէն Հ. Ղուկաս 1847 Մայիսին կ՚այցելէ ի Զմիւռնիա Վիեննայի Մխիթարեաններու Վանատունը եւ կը հիւրընկալուի սիրով: Այս առթիւ կը գրէ Հ. Գ. Սպենեան (թղ. 13 Մայիս 1847) առ Հ. Փ. Ճամճեան ի Վիեննա. «Ի մէջ բանից բազմաց, առաք ի մէջ, որպէս սովոր իսկ է լինել՝ խօսել եւ զՀայկաբանութենէ: Այն իմն յայտ նեղէ զնոսա նախ եթէ ընդէ՞ր յաճախ վեր ի վայր յեղյեղումք զմատենագիրս Ոսկի դարուն, եւ պանծամք նոցին զհետ երթալ: Երկրորդ՝ բան եղեւ զաս—

յատակ գաղափար թէ ի՛նչ է լեզուի յատակութիւն։ Անոնք կը շփոթէին լեզուի յատակութիւնը մտքի արտայայտութեան բացայայտութեան հետ. իսկ վերջնոյս համար անհրաժեշտ կը համարէին այն ամէն տարրները զորոնք դարերը աւանդաբար բերած հասցուցած էին։ Եւ արդեօք կը մթագնէ՞ր արտայայտութեան յատակութիւնը եթէ փոխանակ վերծանեմի ընթեռնում կամ աստուածայինի աստուածեղէն, աղօթեմի յաղօթս կամ եւն բառէր։ Եւ եթէ կը հանդուրժէր լեզուն թատր, թատրոն, կրկէս, ստադ, քարտէս եւն բառերուն, անհանդուրժելի՞ պիտի երեւային կոմիկեան, փիւսկեան, ստիքս եւ այլն. անհրաժեշտ

---

տաղարձութենէ եւ բազում ինչ կանոնս դիւրութեամբ ինձ կարգէր դնէր առաջի։ Թողի նմա խօսել որչափ եւ կամեցաւ. եւ իբրեւ լռեաց՝ սկսայ ամենայն բանիցն մի առ մի տալ պատասխանի. այնչափ սախպեցաւ՝ մինչեւ ասել եթէ Այսպիսի պատճառներ կար նէ, ինչո՞ւ վանք չգրեցիք. իբրեւ ետու առ այն պատասխանի. մեզ՝ քանզի չգիտէաք զսկզբունս ձեր, չէր հնար գայթ առնել. այլ ձեզ մարթ իսկ էր եթէ ունէիք ինչ ընդդէմ, զայն նախ մեզ ցուցանել եւ ապա հրատարակել. նա պապանձեցաւ։ Յետ այսորիկ բերի ի մէջ զծաղու բանն՝ որովք վարէին ի գրութիւնս իւրեանց, որ ոչ վայել է այնմ որ զճշմարտութիւն խնդրիցէ եւ այլն եւ այլն. եւ խօսեցաք այնչափ՝ մինչեւ անց կէս գիշեր. եւ այնպէս ի նեղ եմուտ՝ մինչեւ խոստովան լինել նմա, թէ այն ամենայն գրեալք՝ ոչ հասարակաց ամենեցուն կարծիք է, այլ անձնականաց. քանզի, ասէ, մեք այժմ շնորհեալ եմք ամենայն ումեք ազատութիւն կարծել զինչ եւ կամի. որպէս է տեսանել, ասէ, ի նոր քերականութեան Հ. Արսէնի, որպէս եւ ի թարգմանութեան անդ նորա՝ Մշակականին Վիրգիլեայ, յորս, ասէ, կան ոչ սակաւ «արտասաց բանէր»:

հա՞րկ էր յունարան Դպրոցի, Զ. դարու երրորդ քառորդին, թխած բառերուն կարօտիլ :

Անտարակոյս կը պակսէին Դասականին գիտական բառեր, արտայայտելու փիլիսոփայական մտքեր, բայց Ե. դարու հարուստ մատենագրութիւնը կու տար բանալի, պատշաճեցնելու այս մտքերուն դիպան բառեր, կամ կերտելու նորեր, թէ առանց մեղանչելու լեզուի յատկութեան եւ թէ առանց մթագնելու մտքերը : Առաջին պահուն տարօրինակ պիտի հնչէին անոնք հին ականջներուն, բայց պիտի ընդելանային նորերը, դատականով մնած ականջները : Եւ ամէն նախապատրաստութիւն տեսած էին Նոր Դասականները — իրենց հրատարակութիւններուն կցած բառացանկներու մէջ — խափանելու ամէն թիւրիմացութիւն :

Թէ քանի՛ թիւրիմացութիւն կ'իշխէր հակառակ կողման քով՝ պայծառ պիտի բացատրէ հետեւեալ նամակը, զոր յառաջ կը բերեմ ամբողջութեամբ : Կը գրէ Հ. Թադէոս Մուրատեան առ Հ. Մ. Գարագաշեան (Կ. Պոլիս, 15 Մարտ 1848).

«... Բայց դու, Եղբայր պատուական, դու մի՛ ընդ այս զարմանայցես, զի առ քեզ գնախընծայ բանս իմ ուղղել կանխեցի, քանզի դո՛ւ առաւել քան զայլս բամբասիս ի հակառակորդաց անտի, իբրեւ գտիչ նորաձեւ բառից եւ նորահնար ոճոյ՝ զոր ի ձեր մա-

տենդագրութեանդ եւ յիւրաքանչիւր եւ յառանձին եւ յընդհանուր գիրս անխտիր ի կիր արկանէք: Եւ առ հաւաստի կացուցանելոյ զբանս իմ պատմեցից քեզ զանցս՝ որ անցին ընդ իս յառաջ քան զամիսս երկուս: Դէպ եղեւ ինձ ի տան ուրեք տեսանել զանուանին զայն Պուէտ, որոյ անուն յորջորջանացն ըստ հին մատենագրաց Սոսան Սիսակեան, իսկ ըստ նորոցն Հ. Արսէն Անթիմոսեան Բագրատունի: Սա՝ որ ի յետին ծայր իմաստութեան եւ բանասիրութեան հասեալ համարի, հայր պուէտաց յորջորջի, ի հանդամանս հայկական լեզուին հմտութեամբն առաւելեալ քան զհինան համարի, իբրեւ քաջ գրամատիկոս եւ ճարտարախօս, վարժ յամենայն գիտութեանց մասունս, իբրեւ հմտագոյն քան զայլս եւ տեղեակ հին եւ նոր պատմութեանց ի ռամկաց քաղաքիս մեծարեալ պատուի: Սա՝ իբրեւ գիտն ետես ի տան անդ, ասէ. «Վերապատուելի ունիմ ինչ ասել քեզ, քանզի դու խոհեմագոյն ոմն թուիս». եւ ես ասեմ. «Սխալիս, չեմ ես այնպիսի՝ որպէս դուդ առ երեսս կարծես թէ իցեմ»: Երկնեալ զբանս իւր ասէ. «Անտարակոյս եւ քո իսկ ընթերցեալ իցէ ի լրագրին ձերում զայն տեղի, յորում Ջերքն ընդ Տրամագիծ բառից ի կիր առնուն զբառդ Երկակտուր. չգիտեմ ուստի՞ առեալ իցեն զայդ. ի մատենագրութիւնս նախնեաց՝ որ ի հինգերորդ դարուն չարագրեցան կամ թարգմա-

*նեցան, ոչ ուրեք երեւի ի կիր առեալ, այնր դարուն առեմ, զոր նոքա ի հանգամանս լեզուին ընտրելագոյն քան զայլ դարուն համարին, որպէս եւ մեք իսկ, եւ խոստանան իսկ լինել հետեւող նախնեացն մատենագրաց որ ի նմին դարու ծաղկեցան յոճ ընտիր Հայերէն լեզուին. եւ այնու խոստանան եւս զտել եւ մաքրել զլեզուն յումպէտ բառից՝ որ ի յետին դարս սպրդեալ մտին՝ որոց կիրառութիւնն յաճախեալ իցէ ի նորոց: Արդ եթէ զոքա զկէտ նպատակի փոփոխելոյ զհանգամանս լեզուին՝ զայդ ունիցին առաջի իւրեանց, ընդէ՞ր արդեօք զոչ ի կիր առեալն յընտիր ընտիր մատենագիրս հինգերորդ դարուն որպիսի Եւսեբիոսն մէ Փիլոնն իցէ, զբառդ* Երկակտուր *ինքեանք ի կիր առնուն իբրու թէ առաւել ընտիր քան զբառդ* Տրամագիծ. *ի Գիրսն Փիլոնի բառդ տրամագիծ կրկին անգամ գտանի ի կիր առեալ: Ինձ այնպէս թուի, ձերքն միայն ի գրոցն Մագիստրոսի առեալ իցեն* զԵրկակտուր *բառդ, որ է ամենածրդեալ հեղինակ: Ոչ զոքա միայն, եւ իմ իսկ ընթերցեալ եւ քննեալ իցէ զնախնեացն մատենագրութիւնս, եւ համեմատեալ իսկ եմ զիւրաքանչիւր թարգմանութիւնս ընդ յոյն բնագրացն. եւ ոչ ուրեք գտի բայց միայն ի Մագիստրոսն: Զգիտեմ զի՞նչ փաստս ունիցին նոքա ի կիր առնլոյ զբառդ* Երկակտուր, *առաւել քան զբառդ* Տրամագիծ, *եւ զայլ սոյնպիսի անստէր եւ խրթին*

բառս՝ ոյք կամ բնաւ իսկ ամենեւին չիցեն ի կիր առեալ ի մատենագրաց եւ կամ միանգամ եւեթ. որով պատճառ տան ոամկաց եւ ռզխտաց ոմանց բամբասելոյ երբեմն զձեզ երբեմն զմեզ. Թող զերկպառակութիւն կարծեացն եւ զշփոթման որք կարեն ծնանել ի միջի մերում: Բայց կարծեմ թէ առաւել քան զայլս Խարախաչեանն իցէ զոակ այդպիսի բառից եւ նորաձեւութեանց: Առ որ խնդրեմ ի Վերապատուութենէդ գրել յինէն կողմանէ՝ թէ զինչ փաստս ունիցի»:

«Ահա տեսանես, Հայր պատուական, թէ քան զայլս առաւել դու բամբասիս. թէպէտ ես սեմ ցնա թէ բառդ երկակտուր՝ զոր նոքա ի կիր առեալ իցեն, ոչ առանց պատճառի իցէ, քանզի յորժամ ընդ յունականին համեմատիցի, որ է տիամեթրօս, քան զտրամագիծն առաւել բնական թուի, եւ ճիշդ երկակտուր նշանակէ: Բայց այսու ամենայնիւ դու պնդեա՛ զմէջս քո, սրեա՛ զգրիչս քո, եւ ցոյց զզօրաւոր փաստս հակառակորդին քում, եւ տուր իմաստնոյն պատճառս զի իմաստնագոյն եւս լիցի»:

Ջունիմ զժրախտաբար առ ձեռն Գարագաշեանի պատասխանը[14]. բայց կը գրէ Հ. Եղուարդ Խարաեան առ Հ. Ղ. Յովնանեան (28 Յունիս 1848, Կ. Պ.).

«Զթուղթ Հ. Մատաթիայ մերոյ, զոր

[14] Երկակտուր բառի մասին տե՛ս վարը, էջ 317:

*գրեաց նա առ Վ. Հ. Թաղէոսն մեր ի Ջատագովութիւն անձին, ընթերցաւ նա ինքն Հ. Թաղէոսն մեր առաջի Հ. Արսէնին: . . .: Հարցի զՀ. Թաղէոսն թէ զինչ ասաց ի պատասխանի· ասէ. Տեղ տեղ ծիծաղեցաւ, տեղ տեղ տեղէն ցատկեց, տեղ տեղ ուրացաւ· բայց ի կնիք բանի ասացեալ է եթէ ես գովեմ զՀ. Մատաթիայն եւ յարգեմ զգիտութիւն նորին եւ զքննութիւն եւ զգրուածսն, եւ չունիմ ինչ ասել· բայց ընդ խորութիւն նախնեացն ոչ հաւանեցաւ, ասէ»:*

*Ոչ նուազ զայթակղութիւն պատճառած էր հակառակ կողման նաեւ նոր օտար անուններու* տառադարձութիւնը: *Հայ հումանիստները, որոնք կը ձգտէին յամենայնի հաւատարիմ մնալ իրենց սկզբունքներուն, թէ հին եւ թէ նոր անունները կը տառադարձէին միակերպ, որպէս թէ ամէն անուն գրուած ըլլար յունական տառերով: Ինչպէս Մաշտոցեան դարու հեղինակները* Caesar *կը կարդային Καίσαρ, կամ* Cicero = *Κιχέρων եւ կը տառադարձէին* (Կա՛յս(ա)ր, Կիկերո(վ)ն, *այսպէս ալ* Polygnac = *Պողիգնակոս*, Racine = *Հռակինոս*, Rodericus = *Հռոդերիկոս*, Bossuet = *Բոսսուետոս*, Leibniz = *Լէիբնիկոս եւն: Կարող էին այս տառադարձութեամբ խժալուր հնչուիլ անունները նորին քաջավարժ ականջներուն· բայց պէտք է ընթերցողը գիտակից ըլլար թէ մեռեալ լեզու մ'ունէր իր առաջ, որ իւր շատ օրէնքներով ար-*

գէն օտարալուր էր աշխարհաբարին ընտել լսելիքներուն. գաղղ. cirque, իտ. ciro, գերմ. Zirkus շատ կանուխ արդէն հայացած էր կրկէս: Աշխարհաբարին անընտել հնչիւնները կարող էին քաջահնչիւն լուծիլ դասականին մէջ. իսկ անուան մը օրէնքով տառադարձութիւնը չէր խափաներ անշուշտ օրէնքին ծանօթ ընթերցողը կարդալ ըստ կամի հին կամ նոր հնչիւնով, ինչպէս այժմ նոր լատինագիր լեզուներու մէջ իւրաքանչիւր անհատին ազատութիւն թողուած է միաձեւ գրչութեամբ անուններու արտասանութիւնը:

Միակ սխալմունքը, զոր գործեցին մեր հումանիստները, այն էր, որ շատ կանուխ փորձեցին դասական լեզուն չահագործել դպրոցական դասագրքերու համար: Ճարտարախօսութեան, Ուսողութեան, Փիլիսոփայութեան դասագրքերը կը պահանջէին հասարակաց դիւրամատչելի լեզու, դարերէ ի վեր գործածական գիտական բառերով. իսկ այդ բառերը՝ դարբնուած յունաբան դպրոցի դարբնոցին մէջ, պիտի չգտնէին դասականներու հաճութիւնը, եւ ի հարկէ պիտի փոխանակուէին հնագոյններով: Աշակերտութիւնը հարկադրուած նախ պիտի ծանօթանար բառերու եւ ապա խորանար ուսմանց իմաստին: Հնոյն եւ նորին այս հակադրութիւնը պիտի առեղծէր նախ տհաճութիւն եւ ապա պիտի յարուցանէր հակառակութիւն:

Դասականի նոր մատենագիրները պէտք է

մնային իրենց բարձրութեան վրայ. այն գեղեցիկ լեզուն պէտք է կիրառէին միայն գեղեցիկ մատենագրութեան եւ հին դասականներու թարգմանութեան համար:

Բայց այս կէտին մէջ մեղք ունի նաեւ ժամանակը, որ գրաբարով կը պահանջէր իր դասագրքերը: 1841ին, երբ լոյս տեսան Բնական պատմութեան երեք հատորները աշխարհաբարով, կ՚ափսոսար ժամանակակից մը, թէ ինչո՞ւ գրաբար լեզուով չեն հրատարակուած անոնք: Դպրոցն էր որ պիտի սպառէր գիրքը եւ անով վարձատրէր տպագրիչները: Չէր կրնար սպասուիլ ժամանակէն, որ վարձատրէր լիաբուռն՝ գեղեցիկ եւ պատմական գրականութիւնը:

Հակառակ այս ամէն ընդդիմաբանութիւններու, շարունակեցին երկտասարդ հումանիստներն իրենց գործունէութիւնը, առանց շեղելու ընտրուած սկզբունքներէն:

Արտաքին պարագաներն միայն ստիպեցին զանոնք լռել. որովհետեւ չկար այլ եւս իրենց մեծ հովանաւորն եւ պաշտպանը՝ Գեր. Ա. Ազարեան. որովհետեւ պահանջեցին Մխիթարեան Դպրոցները իրենց պահպանութեան եւ պայծառութեան համար ուսուցչական ոյժ եւ հարկ եղաւ դասական մատենագրութեան մէջ սնած եւ զարգացած երկտասարդներուն իջնալ դասախօսական ասպարէզ: Եւ արդէն ժամանակն ալ սկսած էր փոխել իր ճաշակը. աշխարհաբար մա-

տենագրութիւնը այն ինչ ծլած՝ սկիզբն ըրած էր ծաղկիլ համապայծառ :

Այսպէս թէպէտ կարճատեւ ժամանակ մը միայն, հազիւ 15 տարի, վայելեց դասական լեզուի վերածնութիւնը կեանք մը արեւի տակ, բայց ունեցաւ պտղալից մրգաշատ մատենագրութիւն մը, որ պիտի պահէ իր նշանակութիւնը բոլոր ժամանակներու համար, իբրեւ վկայ թէ հայ դասական մատենագրութիւնն ալ ապրեցաւ իր հումանիզմի շրջանը, ունեցաւ իր հումանիստները :

Ժամանակը չգնահատեց իր հումանիստներու ճիգերը : Հայ դասական մատենագրութեան տքնաջան աշխատութեամբ, բանասիրական ճանապարհով եւ գիտական հաստատուն սկզբունքներու վրայ կառուցուած վերածնութիւնը, զոր այնքան խանդավառութեամբ ողջունած էին երիտասարդ հումանիստները, այնքան գորովով փայփայած եւ առոյգ հասակին հասնելու նպաստած, վայելեց իր յարգն ու նշանակութիւնը վանական անձուկ շրջանակի մէջ միայն, ուր եւ տեսած էր առաջին լոյսը : Չէր վիճակուած հայ հումանիստներուն բարձրանալ համալսարաններու կաթեդրը, թափանցել նախակրթարաններու խորքը, գտնել մեկենասներ արքունիքներու, քահանայապետական պալատներու, իշխանական դարպասներու մէջ, կամ հնձելու ծափահարութիւն եւ դրուատիք հրապարակներու վրայ : Եթէ գտնուեցաւ Սահակ մը,

*որ խրախոյս կարդաց Մաշտոցին, բայց չէին Վռամշապուհներ կամ Ամատունի Վահաններ, որոնք քաջալեր հանդիսանային, Մեկենաս կանգնէին դարակազմիկ գիւտին եւ հայ հումանիզմի պայծառութեան նպաստամատոյց ըլլային: Ջուր սպասեցին հայ հումանիստները Ռահ գետին եզերքը լսելու խանդավառ ողջոյնը հայ ժողովուրդին: Ընդհակառակը* չեւ հասեալ ի սահմանս մեր՝ մինչդեռ գային ի ճանապարհի *եւ ահա* լուան *սահմանապահք հայ գրականութեան եւ* որպէս ի վերայ թշնամւոյ ընդդէմ զինեցան՝ ասելով · Ահա ո՞ւր գան միւս եւս թարգմանիչք . . .[15]:

*Որչափ ինձ ծանօթ է, դարուն իմաստուններէն մէկը միայն գիտցաւ խելամուտ ըլլալ գիւտին մեծութեան եւ կատարուած աշխատութիւններու արժէքին · անո՛ր խօսքերն են, արտասանուած արթուն գիտակցութեամբ եւ կանխագուշակ ազդմամբ, թէ* «քաջալերեցարուք, պատուականք եւ սուրբք Հայք իմ, քաջալերեցարուք . . . եթէ ոչ այժմիկ, այո՛ ասեմ՝ առ յապա ժամանակս ԱՆՄԱՀ ԵՒ ՆՈՒԻՐԱԿԱՆ ԿԱՑՑԷ ԱՆՈՒՆ ՁԵՐ . . . այո՛ ո՛չ յամեսցին ազգասիրաց խումբք ԿՈԹՈՂ ԿԱՆԳՆԵԼ Ի ՅԻՇԱՏԱԿ ՁԵՐ»:

*Երիտասարդ Ստեփան Ոսկանեանի տողերն են ասոնք · եւ գուշակուած ապագան*

[15] *Հմմտ. Ղ. Փարպ. Թուղթ, էջ* 202:

արդարացուց այս տողերուն տառուղութիւնը։ Ապաղան, թէպէտ շատ ուշ, գնահատեց բարձր Գաթըրճեանի եւ իր Ընկերներու վաստակը։ Դասական հայերէնի վարդապետութիւնը շահեցաւ, ձգեց իր ետեւէն հետեւողներ. այն նուաճեց բանասէր մտքերը, վայելեց լեզուագէտ հանճարներու հաճութիւնը։ Ց. Գուրդէն իր աշակերտութեան հետ Գարագաշեանի հովանաւորութեան տակ հիմնեց մինչեւ անգամ տառաձին ամսօրեայ Հանդէս մը, Ոսկեղէն Դպրութեան ճաշակը զգալ տալու համար նոր սերունդի նրբացած քիմքին։ Նորայր Բիւզանդացի ճանչցաւ դասական հայերէնի բանասիրական նշանակութիւնը եւ խորացաւ անոր ուսումնասիրութեան մէջ յեցած նոր Դրութեան վրայ։ Հ. Ն. Անդրիկեան հիացաւ ոսկի դարու մատենագրութեան առաւելութիւններուն վրայ եւ հանդիսացաւ անոր գովիչը։ Լեզուաբանն Հ. Աճառեան, բարձրաշնորհ Եղիշէ Դուրեան հրապարակաւ գրուատեցին Դասական հայերէնի քարոզուած սկզբունքները եւ անոր բանասիրական եւ գործնական արժէքը. եւ հայերէնագէտ եւ լեզուաբան Ա. Մէյէ համարեցաւ ընիկ հայերէնի քերականութեան ուսումնասիրութեան համար միակ աղբիւր դասական մատենագրութիւնը եւ արդարացուց թէ՛ ուղղագրութեան եւ թէ՛ լեզուի

յստակութեան համար այն վարդապետութիւնը զոր կը քարոզէին Վիեննայի Մխիթարեանները։ Այսպէս մնաց կենդանի Նոր Դրութիւնը իւր անխախտ սկզբունքներու մէջ։ Գաթըրճեան եւ Ընկերները հիմնեցին Բանասիրական Դպրոց մը, որ կը շարունակէ գործել։

---



ԴԱԳԵՐՈՏԻՊ

Հ. Յ. ԳԱԹԸՐՃԵԱՆ, 1848

## ԿԵԱՆՔՆ ԵՒ ԳՐԱԿԱՆ ԳՈՐԾՈՒՆԷՈՒԹԻՒՆԸ

### 1· ԿԵԱՆՔԸ

*Սուլթաններու քաղաքը եօթնաբլուրեանն Կ. Պոլիս հիւրընկալն եղած էր Գաթըրճեան Գերդաստանին, որ ի խնդիր նոր հայրենիքի եկած հաստատուած էր հոն: Սերովբէ եւ Յուստինիանէ՝ ինչպէս զոյգ մը տատրակներու կ'ապրէին հոն, համեստ կարողութեամբը, բայց հարուստ ընտանեկան աւանդութիւններով եւ քրիստոնէական առաքինութիւններով:* 1820 *Փետր.* 19*ին կ'ողջունեն անոնք ծնունդն իրենց անդրանիկին, որուն յաւազանէ Աւետիք անունը կու տան, կարծես կանխագուշակ աւետիք մը նօթճելով Ազգին, որուն պարծանքը պիտի ըլլար ապագային:*

*Տասնուերկու տարիներ կը վայելէ Աւետիք իր ծնողական յարկին տակ· ուր մայրական կաթին հետ կը ծծէ նաեւ կաթը բարեպաշտութեան: Հասակին աճման հետ կը ծանօթանայ գրի եւ գրքի եւ կը սորվի շուտով երթեւեկել Ղալաթիայի Մխիթարեան Դպրոցը, ուր նոյն դարուն համբաւուած էր իբրեւ ուսուցիչ հայերէնի Հ. Վրթանէս Վ.*

Զալըխեան: Ծանօթութիւնը Մխիթարեան Հարց հետ կը վառէ իր փափուկ սրտին մէջ եռանդը, նախանձաւոր ըլլալու անոնց ազգօգուտ եւ սուրբ օրինակին: Եւ մանուկ Աւետիք կը բանայ իւր սիրտը Հ. Զալըխեանին: Պէտք չկար ունենալ քաջատես աչք վեր հանելու մանկան ընդունակութիւնը փափագած կոչման համար: 1833 վարդերու ամսոյն կուտայ պատանին Աւետիք իւր հրաժեշտի համբոյրը ծնողաց եւ սիրասունդ քոյրերուն եւ եղբայրներուն. անոնց թուին մէջ էր Անտոն, որ 7 տարի յետոյ պիտի հետեւէր իւր եղբօր քայլերուն [1]:

[1] Անտոն Գաթըրճեան ծնած 1828 Մարտ 19ին, կ'երթայ 1841, Յունիս 2ին Վիեննա, կ'ընդունի Սամուէլ անունը, կը ձեռնադրուի քահանայ 1850 Հոկտ. 13. եւ կը վախճանի 1895, Սեպտ. 12ին ի Տրիեստ: Նման իր երիցագոյն եղբօր՝ կը նուիրուի հայկաբանութեան եւ կը հանդիսանայ անուանի դրական ընտիր, թէեւ սակաւաթիւ երկերով: Առթիւ իր մեկնումին կը գրէին ծնողքը Գեր. Արիստակէս Ազարեանին.

Գերապայծառ գերապատիւ Հայր.

Մինչուկ աս օրս թխտէրով հրամանոցը գերապայծառութեանը պատուասիրելով կը յարգէինք կոր. բայց Աստուած իր ողորմութեամբը աս օրս մեզ հասցուց որ տղանիս թխտարեր հրամանոցը կ'առաքենք կոր եւ անոր ձեռքովը սուրբ աջդ համբուրելով սուրբ օրհնութիւնդ մեր ու մեր զաւակներուն վրայ կառնենք կոր. փառք աստուծոյ անսահման ողորմութեանը որ մեզ արժանի կնէ կոր մեզի պարգեւած զաւակները դարձեալ իրեն նուիրենք. հէմէն Աբէլին, Աբրահամին ու Նոյին պատարագներուն պէս մերն ալ իրեն ընդունելի ըլլայ: Գերապայծառ հայր զաւակնիս մեր ձեռքէն ելաւ, հրամանոցը հայրութեանը ու խնամոցը կը յանձնենք եւ կը յուսանք որ

Դէպի Եւրոպայի սիրտը, դէպի կայսեր-քանիստ մայրաքաղաք Դանուբեան ափե-րուն վրայ ուղղուած էին պատանւոյն քայ-լերը. 1833 Մայիս 25ին կը ժամանէ Աւստրիոյ Վիեննա ուրիշ երկու ընկերներով եւ կը հիւ-րասիրուի Մխիթարեան յարկին տակ, որ այնուհետեւ իր նոր հայրենի տունը պիտի ըլլար։ Կը գտնէ հոն իրեն հայրենակիցներ Անտոն Պէրպէրեան (այն է Հ. Մատաթիա Գարագաշեան, ծն. 1818, Փետր. 11, վանք եկած 1832 Օգ. 22), Մկրտիչ (= Հ. Բե-րովբէ) Սպենեան (ծն. 1817, Մարտ 13. վանք եկած 1831, Սեպտ. 26), Սիմոն (= Հ. Ղուկաս) Տէրտէրեան (ծն. 1819, Մարտ 31. վանք եկած 1831, Սեպտ. 26) եւ ուրիշներ.

ձեր խնամոց տակը եւ ձեր սուրբ աղօթիւքը կը կրթուի կը մեծնայ ու տառուծոյ, թէ հրամանոցը եւ թէ մեզի սիրելի ընտիր զաւակ կլլայ։

Ես ու ընկերս ու ամէն զաւակներս խոնարհած տառուածարեալ աջդ համբուրելով սուրբ օրհնու-թիւնդ կը խնդրենք. բարեւ կնենք վանքին մէջը եղող ամէն քահանաներուն եւ ձեռքերնին կը համբուրենք մանաւանդ սիրելի զաւակներնուս եղբայր Յովսէփին շատ բարեւ կնենք։ Ըշտը իրենայ բաղձանքը տեղը հասաւ աղբարը վանքը էկաւ հէմէն Քրիստոսի քաղցր լուծը շալկելով արքայութեան ճամբու մէջ միատեղ առաջ էրդան։ Էգ մալ անթիւքայ բատակներ կը խաւ-րեմ կօր. առնք ալ սիրոյ մէկ պզտիկ նշան տէր ըն-դունէ. ողջ լեր։

Հրամանոցը գերապայծառ հայրութեանը

Ն. Ծ.

1841 Մայիս 3. Սերօբէ եւ աղախին Ուստիանէ
Բատամպօլ։ Ղաթըրճեան։

Որպիսի՛ հաւատքի թարգման չէ նամակս։

որոնց հետ կը կապուի շուտով սիրտ ի սիրտ եւ խրախուսուած անոնց օրինակէն կ'ընթանայ յառաջադէմ առաքինութեանց եւ ուսմանց մէջ։ Քիչ յետոյ (12 Օգ. 1835) կը յարին իրեն Վիչէն (= Հ. Արսէն) Այտընեան, Յովսէփ Սեւեան եւ Սերովբէ (= Հ. Ղեւոնդ) Յովհաննեան։

1836, Օգոստ. 15ին սկիզբ կ'ընէ Գաթըրճեան նորընծայական շրջանին, երբ կ'ընտրէ իրեն անուն փոխանակ Աւետիքի՝ ՅՈՎՍԷՓ։ Եռանդուն նորընծայն կը փարի կոչման. կը զգայ իր ոյժերը բաւական նուիրուելու Աստուծոյ ծառայութեան եւ գործելու ի թիւս «աշակերտաց Մեծի Հօրն Մխիթարայ», անոր հոգւով եւ անոր ձգտումներով։ 1838 Մայիս 20ին կ'ուխտէ Գաթըրճեան կրօնաւորական երեք ուխտերը եւ կը գրուի անդամ Մխիթարեան Միաբանութեան։

18 տարեկան էր այժմ Եղ. Յովսէփ եւ միջամուխ փիլիսոփայական եւ աստուածաբանական ուսումներու մէջ։ Գեր. Արիստակէս Ազարեան էր իր ուսուցիչը. եւ վերակացուները՝ Հ. Մանուէլ Տէրվիչեան եւ Հ. Յակոբոս Պօզաճեան։

Բարձրագոյն խումբերու աշակերտներն էին

Ա. 1836 Դեկտ. 8—1840 Նոյ. 1.

Եղ. Տիմոթէոս Լիմոնճեան
„ Մատաթիա Գարագաշեան
„ Անանիա Տէօվլէթեան

Բ. 1838 Մայիս 20—1841 Մայիս 30.
Եղ. Ղեւոնդ Յովնանեան
„ Յովսէփ Գաթըրճեան

Գ. 1839 Դեկտ. 8—1844 Սեպտ. 8.
Եղ. Փիլիպպոս Ճամճեան
„ Պետրոս Պիւլպիւլճեան

Քայլերը, զոր կ'առնէր Գաթըրճեան գիտութիւններու մէջ, կ'արծարծէին իր մէջ գիտակցութիւնը, թէ ամէն յառաջադիմութեան նպատակակէտը Աստուծոյ փառքը եւ ազգին օգուտը պէտք է ըլլայ: Հասնելու համար յաջողութեամբ այս նպատակին հարկ է քաջ մարզուած ըլլայ իւրաքանչիւր մարտիկ ազգային լեզուի եւ ազգային ուսումներու մէջ: Եւ որովհետեւ Մխիթարեան Վարժարանը այն հրահանգանոցն է, ուր պիտի կրթուին մարզուին գիտութեան ասպարէզի վրայ ըմբիշ նահատակները, անհրաժեշտ համարեցաւ անձամբ օրինակ ըլլալ մայրենի լեզուի ուսումնասիրութեան եւ հմտութեան մէջ: Ձեռն ի ձեռն Գարագաշեանի հետ, որ իբրեւ երիցագոյն, յառաջադէմ էր արդէն եւ հռչակուած պոէտ, կը խորանայ Գաթըրճեան հայերէն լեզուի քննութեան մէջ, եւ ձգտումը զանազանել ընտիրն եւ ընտրելագոյնը՝ կ'առաջնորդէ զիրենք գիւտի մը, որ անակնկալ մը կ'ըլլայ ժամանակին համար: Բանասէրի խորաթափանց միտքը, որ բունած էր Գաթըրճեանի մէջ, վեր կը հանէ

զգալի տարբերութիւններ Ե. դարու գրական լեզուի եւ յաջորդ դարերու կիրառած լեզուին մէջ. առաջինը կը հռչակէ միակ ընտրելագոյնը՝ դասականը, երկրորդը կը դատապարտէ իբրեւ խոտան, աղաւաղուած հայերէն։

Նոր ոգեւորութեամբ կ'ողջունուի գլուխ վարժարանցիներէն. եւ յանկարծ կը վերածուի Վարժարանը Մաշտոցեան Դպրոցի. Սահակ, Մաշտոց եւ Եզնիկ են հոն ուսուցիչները եւ Ե. դարու առաջին կէսի մատենագրութիւնը առձեռն դասագրքերը։ Գաթըրճեան վերին հսկողի դերի մէջ է. Գարագաշեան կը ստիպուի առ ոտս անոր միւսանգամ սկիզբ ընել սորվելու հայերէն։

Գեր. Արիստակէս Ազարեան, որ Մխիթարեանութեան ղեկը դէպի բարին եւ դէպի զարգացում կ'առաջնորդէր, խրախոյս կը կարդայ երիտասարդութեան եւ արտաքին պարագաները կու գային հրահրել զայն։ Նոր էին ձգուած Մխիթարեանութեան հոյակապ շէնքին հիմերը. օր աւուր կը ձգտէր շէնքը բարձրանալ երկնապող, եւ կը տեսնուէր անոր աւարտման մէջ սկիզբը Մխիթարեանութեան պայծառ ապագային. կ'արծարծէին զուարթ առաւօտեան յոյսերը երիտասարդ նոր սերունդին սրտերու մէջ...։ Եւ Ազարեան օրուան մարդն էր ներշնչելու ծերին եւ երիտասարդին կեանք եւ եռանդ։

Տեսաւ Գաթըրճեան Մխիթարեանութեան նոր

չէնքին նաւակատեաց հանդէսը (18 Հոկտ. 1838), ինքն ալ մասնակցեցաւ հանդիսական չուին, որով Միաբանութիւնը յաղթական քայլերգով կը մտնէր իւր նորակառոյց յարկին ներքեւ: Ու եսաց արիւնը իր երիտասարդ երակներուն մէջ. թեւ առաւ ու ելաւ թռիչքներ:

Այն ինչ աւարտած յաջողութեամբ ուսման ընթացքը՝ 1841 Մայիս 30ին կը հրաժարէր սուրբ աստիճաններու եւ կ'օծուէր անդաշ բերով ի քահանայ Տեառն բարձրելոյ՝ Հ. Ղուկաս Տէրտէրեանի եւ Հ. Վրթանէս Եազութճեանի հետ:

Հ. Մ. Գարագաշեան, որ քիչ յառաջ բարձրացած էր նոյն աստիճանին, կը նուիրէ նորընծայ օծեալին սրտաբուղխ ողերգ մը, ուր կը կարդացուին նկարագրական գծեր նորընծայ պաշտօնակցին ապրումներէն՝ դիտուած ընկերական աչքերով:

Թող կու տամ ինծ ներկայացնել հոս այդ ողերգը ամբողջութեամբ, որ հետաքրքրական է նաեւ ուրիշ տեսակէտներով:

ՆՈՒԱԳ

Տեսի զպատիւ օծման քո, որով ընտրեալդ զատեար.
Առհաւատչեայ առեալ զայդ, առ անմատոյցն մատեար:
Դու որ ըղձնիքն Յիսուսի, ըղխոնարհին եւ հեզոյ,
Գրաշմեալ ապար յայդ նորոտ, ընդ փակաւին բեհեզոյ:

Պատմուճանաւըդ ծաղկեայ՝ զարդարութիւնըն տարար·
Նախանձելի այդ պատիւ, ըզքեզ եղբարց քոց արար:
Ե՛րթ կերակրեա՛ զնզխոտսս ի նուիրական ցուրենցդ·
Ուսեալ զՈր էնըն պատմեա ի բարբոքեալ մորենցդ·
Հար ըզՄեսարիմ եւ ըզԲամ· եւ զարգըր սուրբ տպատես·
Ըստ Ցեսովայ նմանութեան, զամպարըշտեալըն դատեա:
Նոր պատերազմըն զսոսա, ե՛լ, նահատակըդ, մատիր,
Ըզհաւատոյն զէն առնուլ· սուր եւ ասպար են պատիր:
Քանանացին եւ Մովար ահա ըզքեւ շուրջ հեղան·
Քեզ Յորդանան ձեռնտու, հա՛ր զազգս ատանց աղեդան:
Ի Գաղգաղայն հասեր արդ, որբեա՛ բանիւն ըզգուսեր·
Հատ զանթըլփատսըն սըրախւք· մի՛ ակն առներ եւ խուսեր:
Բայց չէ այս լոկ, նըւիրեալդ, ունիս եւ այլ ճոխութիւն·
Ընդ անմարմնոցըն կրուիւ եւ ընդ դիւաց ոխութիւն:
Առեր զՀօղին Քրիստոսի քեզ զըրպըութիւն եւ մատեան
Դատափետ լեալ, անդոսնեա ըզծերակյա եւ զատեան:
Խորտակեցես զԲահաղ ի զօրութիւն քո ձեռին·
Եւ զմարգարէն ամօթոյ, ըզկարապետըն նեռին:
ԸզՅեզաբէլ կըշտամբեալ, եւ ըզՃամրին անօրէն·
Ի ցասմանէն թափեցես դու զԽորայէլ համօրէն:
Ի համբառնալ ձեռաց քոյ փարատի սաստ ծարաւոյ·
Եւ զանձայն անձրեւոյն ուսեալ ամպն հարաւոյ·
Մինչ դեռ զենումըն մատչի· ո՜ անճառ այնըմ պահու,
Յորում զուգ կաս բարեխօս ի մէջ կենաց եւ մահու:
Յորժամ սրովբէքըն սարսեն. յորժամ քրովբէքըն դողան·
Երանախառն օրհնութեամբ ընծայք ի ձեռըս շողան:

Յորժամ ըղձեւորն չարժէ առ յանդադար դողմանէ,
Ողորմութիւնըն կորգեալ յաստուածակայս կողմանէ:
Ոչ սակաւ ինչ ընդ քեզ, Հայր, դարմանայցէ մեր
քընար.
Որ զատաքեալըդ ի Հողւոյն եւ վարդապետըս ծընար:
Աւասիկ ձայնք բարբառոյ յանապատիս մեր զաչէն
Զեթովպացին եւ ըզՑոյն ի մի հաւատըս կոչէն
Կրեացեն զանունն Յիսուսի ըստ ընտրութեան անօ-
թոյ.
Լինել բանին Աստուծոյ մըշակ տանց ամօթոյ:
Զիք երկիւղ այդ եւ այդ. ունիմք մարտիկս ի
ստադին.
Ահա եւ անդք մեր եղեն դրախտ Աստուծոյ եւ Ադին:
Աճեցուցեալ ըզմըշակս եւ զերընջացըն զաւակ.
Եւ յաւելցէ Տէրն ի քո եւթընպատիկ յայդ հասակ:

1841: Հ. Մ. Գ.

Նոր էր թեւակոխած Գաթըրճեան իւր կեանքի քանումէկերորդ գարունը, դեռ նոր էին երեւցած տէգք մօրուացն անոր դալար այտերուն վրայ: Ինչպէս ծառ մը ծաղկալից՝ կը նկրտի այժմ պտղաբեր ըլլալ:

Մինչ մէկ կողմէն կը յաճախէր Համալսարան ունկնդրելու փիլիսոփայական եւ աստուածաբանական դասախօսութիւններու, հարստացնելու համար գիտութեանց պաշարը, միւս կողմէն կը մղէր անդուլ եռանդը իմաստասէր եւ հումանիստ երիտասարդը բարբառել աշխարհի նորագիւտ դասական հայերէնով:

Այս առաջին շրջանին կը վերաբերին իր թարգմանութիւնները Բոսուէի, Գրիգոր Նա-

գլանզացող, Քսենոփոնի, Կիկերոնի, Կի–պրիանու, Կ. Ռուփոսի գործերէն:

Միաժամանակ կը գործէ Գաթըրճեան նաեւ իբրեւ դասատու եւ օգնական վերակացու Մխիթարեան Կղերանոցի:

Այս միջոցին է, որ կը յանձնուի իրեն մեծ եւ պատասխանատու գործը՝ յօրինել ընդարձակ ծրագրով Տիեզերական Պատմութիւն մը, որուն Ա. եւ Բ. հատորները լոյս կը տեսնեն 1849 եւ 1852 տարիներուն:

1841—1852 տարիները Գաթըրճեանի գրական եւ դպրոցական գործունէութեան ամէնէն բեղմնաւոր շրջանն է. ոչ միայն բազմաթիւ եւ ընտիր գրական երկեր հրատարակ կ'ելլեն իր գրչէն, այլ եւ իր դաստիարակութեան տակ անուանի կը հանդիսանան մեծ թուով աշակերտներ թէ՛ իբրեւ հայկաբաններ եւ թէ՛ իբրեւ պատմագէտներ, աշխարհագիրներ եւ դրամագէտներ. անոնք են.

Հ. Արսէն Այտընեան
Հ. Եփրեմ Զաքըճեան
Հ. Սրապիոն Էմինեան
Հ. Սամուէլ Գաթըրճեան
Հ. Կղեմէս Սիպիլեան
Հ. Սիմոն Անտոնեան
Հ. Աստուածատուր Աւագեան են:

Ինքն էր որ առաջին անգամ հրաւիրեց Սիպիլեանի եւ Անտոնեանի ուշադրութիւնը դրամագիտութեան վրայ:

Համբաւը, զոր հանած էր Գաթըրճեան իւր հրատարակութիւններով եւ հայկաբանութեամբը, կը յորդորէ Մոսկուայի Լազարեան Ճեմարանի Վարչութիւնը դիմելու Գեր. Ա. Ազարեանի եւ խնդրելու, որ հաճի զԳաթըրճեան իբրեւ հայերէնի ուսուցիչ տրամադրել նոյն Ճեմարանին: Բայց Միաբանութիւնը պէտք ունէր Գաթըրճեանին:

Թողլով այժմ գրական ասպարէզը երիտասարդներուն՝ կը մտնէ Գաթըրճեան գործնական կեանքի մէջ: 1852ին, Փետրուարին, կազդուրելու համար քայքայուած առողջութիւնը, միանգամայն տալու համար այցելութիւն մը ծնողներուն՝ քանամեայ բացակայութենէն ետքը՝ կը մեկնի Գաթըրճեան Կ. Պոլիս, ուր կը մնայ մինչեւ Օգոստոս եւ կը վերադառնայ: Յաջորդ տարին կը գտնենք զինքը իբրեւ Ընդհանուր գործակալ ի Հռոմ: Երեք տարի յետոյ կը վերադառնայ Վիեննա մասնակցելու Միաբանութեան ընտրական ժողովին: 1855 Մայիս 5ին վախճանած էր Գեր. Արիստակէս Ազարեան, Միաբանութեան Ընդհանրական Աբբահայրն եւ երկրորդ հիմնադիրը:

Ընտրական ժողովի ձայները կ'ամփոփուին Հ. Յակոբոս Պօղաճեանի եւ Հ. Յ. Գաթըրճեանի շուրջը. առաջինը համբաւուած էր իւր վարչական-տնտեսական գործունէութեամբը, եւ երկրորդը իւր գրական վաստակներովը: Ի հաւասարութեան ձայնե-



Հ. ՅՈՎՍԷՓ ԳԱԹԸՐՃԵԱՆ, 1856

*րու եռլեզուեան խրատունքով Ընդհանրական Աբբահայր կը հռչակուի Գեր. Յ. Պօղաճեան :*

*Գաթըրճեան կ'ընտրուի այժմ Ընդհ. Առաջիկայ եւ կ'ուղարկուի դարձեալ Հռոմ, ժամանակաւորապէս յառաջ տանելու իր նախկին պաշտօնը :*

1856*ին կարճ ժամանակ մը կը հանդիպինք իրեն Կ. Պոլիս. բայց* 1857—1860 *տարիները կ'անցընէ Վիեննա :* 1861*ին կ'ուղարկուի դարձեալ Կ. Պոլիս, այս անգամ իբրեւ վարիչ Մխիթարեան Դպրոցին : Բոլոր եռանդովը նուիրուած է այժմ նա դպրոցական գործերու, դասաւանդութեան եւ դասագրքեր պատրաստելու : Այս շրջանին թարգմանած է Գաթըրճեան Մոչնիքի* Երկրաչափութիւնը *եւ Պոկոռնիի* Կենդանաբանութիւնն *եւ* Բուսաբանութիւնը :

*Կրօնական–եկեղեցական խնդիրներով բազմայոյզ ժամանակ մըն էր* 60*ական թուականը : Գաթըրճեան իբրեւ քաջ աստուածաբան եւ իրաւագէտ եւ ծանօթ ազգային պատմութեան եւ մատենագրութեան ձգուեցաւ ակամայ այս խնդիրներու մէջ :* 1865*ի սկիզբը լոյս տեսաւ ի Կ. Պոլիս* Հիմնական տարբերութիւնը, *որ այնքան աղմուկ յառաջ բերաւ նոյն միջոցին :*

*Որչափ ալ գործնական կեանքի ասպարէզի վրայ է Գաթըրճեան, դպրոցական գործերու նուիրուած, բայց եւ այնպէս աչքէ չէ*

հեռացուցած բանասիրութիւնը։ Այժմ ձեռքի տակ ունի Կանոնագրքի, Սրբազան Պատարագամատոյցի, Մաշտոցի եւ Վկայաբանութեանց ուսումնասիրութիւնը, որոնց համար հետամուտ է նիւթեր ժողվելու։ 1866 Մարտ 18ին կը հասնի Գեր. Պօղաճեան իր խնդրանքին ձեռագրական ուսումնասիրութիւններու համար մեկնիլ Երուսաղէմ։ Նոյն տարւոյն Ապրիլ 10ին Երուսաղէմ է Հ. Գաթըրճեան, ուր սիրով եւ պատուով կը հիւրասիրուի Եսայի յուսամիտ եւ ուսումնասէր Պատրիարքէն, որ լայնօրէն կը բանայ իր առջեւ Ս. Յակոբեանց Մատենադարանի դռները՝ օգտուելու ազատօրէն տեղւոյն ձեռագիրներէն[2]։ Գաթըրճեանի նպատակն էր ծանօթանալ Կանոնագրքի ձեռագիրներուն։ Նոյն տարւոյն Դեկտեմբերին կրկին Կ. Պոլիս կը գտնուէր։ 1867 Մայիսին կը հասնի իրեն Գեր. Աբրահօր հրամանը անյապաղ Տրիեստ մեկնիլ եւ սպասել հոն իր գալստեան։ Հասունեան պատրիարքի խնդրանքով հրաւիրուած էր Գաթըրճեան իբրեւ հայ եկեղեցական իրաւունքին տեղեկագոյնը խորհրդատուն ըլլալու հայ Կաթ. Եպիսկոպոսներուն, որոնք Յունիս ամսոյն ժողովի պիտի նստէին Հռոմ։ Օգտուելով ճանապարհէն՝ կարճ ժամանակով կ՚անցնի Վենետիկ (1867 Մայիս) ուսումնասիրելու Մխիթարեան Մատենադարանի ձե-

² Հմմտ. Սիոն, 1866, էջ 94։

ռագիրները։ Հռոմէն վերադարձին 20 օր մ'ալ կը մնայ Պարիս, նոյն բանասիրական պրպըտումներու անձնատուր։ Հարկադրուած էր Գաթըրճեան շուտով Կ. Պոլիս հասնիլ (3 Հոկտեմբ.)։ 1869ին իբրեւ քարտուղար մասնակցած է Կանոնադրական Ժողովոյն Նիստերուն, որուն շունչն ու հոգին էր։

Յաջորդ տարին դարձեալ ի Հռոմ կը գտնենք զինքը, ուր Վատիկանեան տիեզերական սինհոդոսին մասնակից հայ եպիսկոպոսներու խորհրդատուն է։ Հոս ի Ս. Վլաս, 1870 Փետրուարին կը հանէ ի գլուխ «Հանգանակ հաւատոյ» աշխատասիրութիւնը։ 1871—1872 տարիներուն Վիեննա է Գաթըրճեան, ուսկից կ'ուղարկուի Տրիեստ վանատան գործերով, յաջորդ տարին կը փոխադրուի Կ. Պոլիս. բայց 1875 Օգոստոսին կը ստիպուի վերադառնալ Վիեննա, մասնակցելու Միաբանութեան Ընդհ. Ժողովին. ուր կը յանձնարարուի իրեն վարել ժամանակաւորապէս միաբանութեան գործակալութիւնն ի Հռոմ (1875—1876)։ 1877ին Գաթըրճեան Վիեննա կը գտնուէր, ուր կը հրատարակէր «Յովհաննու Հանդիսար»։ Գարնան դռներու բացուելուն հետ կը փոխադրուի Տրիեստ, իբրեւ դասախօս Միաբանութեան Միջնակարգ վարժարանին մէջ, որ նոր էր բացուած հոն։

Դեռ նոր էր հասած Տրիեստ, երբ կ'ընդունի կաթուածի դժբախտ հարուած մը, որ

կ'ընդարմացնէ մարմնոյն կէս մասը՝ ձախ թեւէն վար։ Թէպէտ կը յուսայ առողջա-նալով Կ. Պոլիս դառնալ իր առողջութիւնը վերստին, բայց ի զուր. հայրենիքը չի տար իր ցաւերուն որ եւ է սփոփանք։

Չորս ու կէս տարի կիսամեռ մարմնով կը ծառայէ անխոնջ վաստակաւորը՝ ան-կողնի։ Զարմանալի համբերութեամբ կը տանի անհանդուրժելի ցաւերուն, յաճախ կորանցուցած խօսելու կարողութիւնն իսկ։

1880ին կ'այցելեն հիւանդին ի յարգանս եւ ի սփոփութիւն խումբ մը Կաթողիկէ հայ եպիսկոպոսներու, որոնք գումարուած էին նոյն տարին Կ. Պոլիս։ Ստեփան եպիսկոպոս Մելքիսեդեկեան — ինչպէս ականատես մը կը պատմէ ինծ — կը հառաչէ տեսնելով հիւանդին ծանր դրութիւնը. «Մեծ ցաւ է իմ սրտին տեսնել հիւանդութեան այս ան-կողնոյ մէջ վաստակաւոր մը, որ այնքան արդիւնք ունի Ս. Եկեղեցւոյ համար»։

Բայց եւ այնպէս կ'ապրէր դեռ բանա-ստեղծը հիւանդ Հ. Գաթրըճեանի մէջ[3]. նա կը

[3] Ունիմ աչքիս առջեւ թոյլ մատներով գրուած նամակի մը սեւագիրը, զոր ուղղած է Գաթրըճեան 1879 Մայիս 3ին առ Հ. Ա. Պալճեան ի Հռոմ եւ կը խնդրէ քանի մը բանասիրական հարցերու լուծում։ Յառաջ կը բերեմ հետեւեալ տողերը (փակագծի մէջ լրացումները ինծմէ են).

«Գիտեմ թէ մոռցած չէք այն օրերը, որ եղանք ի միասին ի Ս. Վլաս, եւ լսած է(ք) ան տխուր անգ-քերու վրայ՝ որ եաքը, Աստուծոյ այսպէս կամելով, օրհնեալ ըլլայ միշտ, եկան գլուխս։ Հիմա 5 ամսէ հետէ Հիւանդանոց մըն եմ Գալաթա, որն որ Օփիթալ

թելադրէր իր վերջին հրահանգները «Ս. Պատարագամատոյցք» աշխատութեանը մասին առ սնարս անկողնոյն բազմած Հ. Քերովբէ Սպենեանի, որ կը ձեւէր, կը խմբագրէր հեղինակին բազում քրտանց վաստակը՝ անոր կենդանութեան իսկ լոյս ընծայելու փափաքով: Բայց Հ. Գաթըրճեանի սահմանուած չէր վայելել այս ուրախութիւնը. ինչպէս նաեւ վիճակուած չէր նոյնը Հ. Սպենեանի, հակառակ իր անչափ ջանքերուն: 17 տարի յետոյ միայն պիտի լոյս տեսնէր այն, այն ուշիմ պատանւոյն ձեռօք, որ այժմ (1880 Սեպտ.) տակաւին 14ամեայ կանգնած մեծ հայկաբանին, հոյակապ բանաստեղծին դէմ յանդիման՝ կը տպաւորուէր անոր խորաթափանց նայուածքէն, կենդանի բարբառէն, համբերող հոգիէն: Նա կը դիտէր վերջին ճառագայթները ի մարն խոնարհող արեւին,

---

պըրմաճ սիւիս կ'ըսուի, որ մարտպետներու, այս ինքն սէօ(ր) մը լա չարիթէներու ձեռքն է:

Առողջութիւնս կը հարցնէք նէ՝ վուճուտով շատ աղէկ եմ, մանաւանդ հիմա, բայց շարժման կամ քալելու կողմանէ բոլորովին անշարժ. դեղ եւ դարման ընելու վրայ են, բայց Աստուած եւ Ս. Կոյսը կ'աղասուի՝ որ իրենց ողորմութիւնը զօրացնեն վրաս, որուն համար դՁեզ ալ կ'աղաչեմ՝ որ աղօթէ(ք) եւ սուրբ պատարագներուդ մէջ յիշողութենէ չմոռնաք: Այսօր (Մայիս 3) սկսաւ բժիշկը hydrothérapie ըսուածը, այս ինքն պաղ ջրով բոլոր մարմինս շփել: Այս միայնութեան մէջ այս մեծ մխիթարութիւնը Աստուծմէ ունիմ՝ որ աջ ձեռքս ողջ եւ մի միայն զօրաւոր կէտս է բոլոր մարմնոյն վրայ եւ անոր համար՝ մանաւանդ այս միայնութեան մէջ՝ մերթ ընդ մերթ, որչափ ատ ակար վիճակին մէջ կարելի է, սփոփանք կ'ունենամ գրագելով բանի մը»:

*հաստատ յառաջադրութեամբ մխամանդամ վերելք տալու անոր իր գործունէութեան հորիզոնին վրայ ։*

1882 *Յունուար* 9*ին կ՚աւանդէր Հ. Յ. Գաթըրճեան իր հոգին Ստեղծչին ձեռքը՝ յանուշակ երանութեան վայելելու հանդիստը, զոր չգտաւ այս աշխարհի վրայ ։*

62 *տարի ապրեցաւ ան արեւին տակ.* 40 *ամառ վաստակեցաւ պաղալից մրգաշատ, արդիւնքը Թողուց Ազգին, վաստակը նուիրեց Բարձրելոյն. եւ այս էր նպատակը իր բոլոր աշխատութիւններուն. «Փառքն Աստուծոյ, օգուտ Ազգին մերոյ... պարծանք (Մխիթարեան Միաբանութեան) են հաստուցումն մերոյ վաստակոց եւ պսակ»*[4] *։ Մենք երախտապարտ ենք Վաստակաւորին ։*

*Գաթըրճեան անձամբ միջահասակ էր, ուժեղ կազմուածքով, լեցուն եւ բոլորակ կերպարանքով ։ Կենդանի եւ բոցավառ կը հանդչէին իր աչքերը ակնոցիքին մէջ ։ Սեւահեր մազերը երեսնուհինգամեայ դրեթէ կորսնցուցած էր բոլորովին ։*

*Ազնիւ, հեզահայեաց եւ համբոյր բնաւորութիւն մը կ՚իշխէր իր մէջ. ձգիչ էր իր անձը ։ Թէպէտ մեռած էր առ արտաքին աշխարհ եւ ամէն երկրաւոր վայելում, Թէպէտ արտաքին գործերու մէջ չէր երեւցներ ըն–*

---

[4] *Պատմ. Տիեզերական, Ա, էջ Ժ ։*

զունակութիւն եւ ճարտարութիւն, բայց կը ճառագայթէր իր մէջ սուր եւ հանճարեղ միտք մը, որ կը թափանցէր իրերու խորքը, ու կը յայտնէր անյայտը, անծանօթը: Կ'ատէր պարծիլ իւր քանքարովը· բայց հռչակը կը կանխէր իւր քայլերը: Մաքուր եկեղեցականը, անձնուրաց վանականը փայլեցաւ միշտ իր մէջ· ապրեցաւ վառուած մեծ-եռանդն աստուածսիրութեամբ եւ կենդանի հաւատքով:

Ծանօթ էր բազմաթիւ լեզուներու· բայց սիրած էր յատկապէս հայ, յոյն եւ լատին դասականները:

Գիտութեան ամէն ճիւղ հետաքրքրած էր զինքը· եթէ ի կոչմանէ աստուածաբան էր, բանասէր եւ պատմագիր, բայց սիրահար էր նաեւ բնագիտութեան եւ բնական պատմութեան, մանաւանդ Հանքաբանութեան[5]: Բանասէրի հոգին ղեկավարն եղած է իր մտքին իր կեանքի բովանդակ տեւողութեան:

---

[5] Կը պատմեն թէ Գաթրըճեան յաճախ ծանրաբեռնուած գրպաններով կը վերադառնար Կ. Պոլսոյ շրջակայքը կատարած պտոյտներէն: Իր աւարներն էին քարեր՝ պէսպէս տեսակներով: Վիեննայի Մխիթարեան Թանգարանին մէջ դեռ այսօր կը պահուի Գաթրըճեանի Herbariumը, խնամով հաւաքուած ու չորցուած բոյսերը: Հաւաքելու այս սէրը կ'երեւայ թէ զարգացած է իր մէջ Վիեննայէն, ուր երկար տարիներ եղած էր Թանգարանապետ հանքաբանական եւ դրամագիտական բաժիններուն:

## 2. ԳՐԱԿԱՆ ԳՈՐԾՈՒՆԷՈՒԹԻՒՆԸ

### ԳԱԹԸՐՃԵԱՆ ԻԲՐԵՒ ԹԱՐԳՄԱՆԻՉ

*Ինչպէս Մաշտոցեան Դպրոցի աշակերտները իրենց գործունէութիւնը թարգմանութիւններով սկսան, նոյնպէս Վերածնեալ Մաշտոցեան Դպրոցի երիտասարդ աշակերտութիւնը սիրեց թարգմանութեամբ դնել իր գրական աշխատութիւններու հիմը:*

### 1. ԲՈՍՈՒԷՏԱՅ ԽՕՍՔ ՎԱՍՆ ՏԻԵԶԵՐԱԿԱՆ ՊԱՏՄՈՒԹԵԱՆ:

*Տակաւին դպրոցական սեղանի առաջ էր Գաթըրճեան, երբ կը յանձնուէր իրեն՝ աշխատակցութեամբ իր երկու ընկերներու՝ Գարագաշեանի եւ Յովնանեանի՝ թարգմանել Բոսուէի* Discours sur l'histoire universelle *գործը նորագիւտ դասական հայերէնով: Անյապաղ կը ծնուին արմուղ երինջները գործին* (1840):

*Աշխատութիւնը կը մղուէր յառաջ. Բոսուէի վերջին խօսքերը կը յանձնուէին թղթի երբ յանակնկալս կը լսուի*[1] *Վիեննա, թէ ի Ս. Ղազար յանձնուած է նոյն գործը մամուլի Հ. Քերովբէ Այտնուրեանի թարգմանութեամբ:*

*Որչափ ալ ի սկզբան վրդովեցուցիչ էր յուրս երիտասարդ թարգմանիչներու համար*

---

[1] 1840*ին անցած էր Վիեննայէն Հ. Գ. Այվազովսկի:*

եւ կը սպառնար կասեցնել անոնց յառաջադէմ քայլերը, բայց յանկարծ կ'եռանդաւորէ զիրենք մտածումը, թէ բարեպատեհ առիթ է այս զգալ տալու մեծ աշխարհի իրենց գիւտին առաւելութիւնը, Հին եւ Նոր Դպրոցներու ուղղութիւնները, Ժ Թ. դարու հայերէնի եւ «ոսկեդարեան» հայերէնի զանազանութիւնները: Այսպէս անբարբառ պիտի հորդէր ճանապարհ իրենց գիւտը, որուն վրայ հպարտ էին:

Բայց պէտք էր արագ արագ վերջին ձայնը տալ իրենց թարգմանութեան եւ օր յառաջ հանել հրապարակ քանի դեռ չէր նուաճած հրապարակը Աղնաւուրեանի թարգմանութիւնը: Նաեւ հոս բախեցաւ երիտասարդութիւնը յուսալքման: Վիեննայի Մխիթարեան Միաբանութիւնը դրամական տագնապ կ'ապրէր. նոր էր աւարտած Նորակառոյց շէնքը. մեծամեծ ծախքեր պահանջած էր Տպարանի յարդարումը: Կը հեծէր Միաբանութիւնը պարտքերու տակ. ի վիճակի չէր իր հաշուով հրապարակ հանել մեծածախս հատորս:

Գեր. Ա. Ազարեան վերահասու կ'ըլլայ իր կորիճներուն մտահոգութեան. կը խրախուսէ միայն անվրդով թարգմանութեան վերջին փայլը տալ:

Նոյն տարին Վիեննա կը գտնուէր Ասպետ Աղեքսանդր Ղարամեան, Միաբանութեանս մեծ բարեկամն եւ Պոլէնի մեծահա-

*տոր Պատմութեան եւ Հնախօսութեան հայերէն թարգմանութեան եւ տպագրութեան Մեկենասը։ Սա թէեւ չի կրնար անձամբ ստանձնել Բոտուէի գործին տպագրութեան ծախքը, բայց կը խոստանայ անոր համար մեկենաս յարուցանել յանձին իւր քեռորդւոյն՝ Պր. Յովհաննէս Մուրատեանի ի Լոնտոն։ Արդեամբք ալ սիրայօժար յանձն կ՚առնէ Մուրատեան իւր մօրեղբօր առաջարկն եւ Գեր. Ազարեանի փափագը. Հ. Մ. Սաղաթիէլեան Ապրիլի վերջը կը յանձնէ թղթատարի հաշուին հետ տպագրութեան մեծադիր եւ փոքրադիր փորձերը՝ ընտրութիւնը թողլով Մեկենասի ճաշակին։*

1841 *Մայիս 3ին կը հասնի ի Վիեննա Յ. Մուրատեանի թուղթն առ Գեր. Ազարեան, ուր կը յայտարարէ վեհանձնաբար.*

*«...Ընկալայ ի Վ. Հ. Մատթէոսէ Սաղաթիէլեանց՝ որ ի մեծարգոյ Միաբանութենէդ, գերկուս օրինակս հայերէն թարգմանութեան զԲոտուէզայ տիեզերական պատմութեան։ Մեծապատիւ Հայրս ազդ արարեալ ծանոյց ինձ՝ եթէ վասն տպագրութեան հինգհարիւր օրինակաց գրոցս հարիւր լիվռը ստեռլինկից պէտք են։ Արդ աղաչեմ զի հաճոյ թուեսցի ձեզ անյապաղ վաղվաղակի զտպագրութիւնն կատարել. յիմ անուն եւ իմովք ծախիւք. ինձ բաւուք թուի մեծ ձեւն որ ի մի հատոր բովանդակեսցի։ Ի հինգհարիւր օրինակաց անտի հնգետասան*

*միայն վասն իմ խնդրեմ. եւ զմնացեալսն ձեզ թողում ըստ հաճոյից ի կիր արկանել: Համարձակիմ ի նոյն յաւելուլ եւ հարիւր լիվրը ոսկերլին. զոր աղաչեմ հաճեսջիք ընդունել վասն թարգմանութեան: Արդ կարէք յիմ անուն առնուլ երկերիւր լիվր ոսկերլին. կամ հինգհարիւր փրանքս ի ձեռն գրոց սեղանաւորի իմոյ Տեառն Տէլէսէրթի, եւ նորին ընկերութեանն որ ի Պարիս: Կարի յոյժ խնդութիւն է ինձ տեսանել՝ զի առաջին նշանակ սիրոյ եւ բարեկամութեան որ ընդ իս եւ ընդ պատուական Միաբանութիւնդ, ի ձեռն այսր ազնուական գրոցն Բոսուէդայ ամենեցուն յայտնի լինելոց է...»:*

1841 *Ապրիլին կը սկսի տպագրութիւնը եւ Օգոստոսին «դրոշմեալ» լոյս կը տեսնէ շքեղ հատոր մը խորագրուած՝*

Բոսուետայ Մեղդաց եպիսկոպոսի Խօսք վասն տիեզերական պատմութեան. թարգմանեալ յաշակերտաց Մխիթարայ մեծի աբբայի ի խնդրոյ ազնուական պարոն Յովհաննու Մուրատեանց եւ նորին ծախիւք դրոշմեալ: *Ի Վիեննա* 1841, 8° *մեծ, էջք ԺԴ* + 514 + 22: *Իրր* 30 *օրինակ տպագրուած էր հաստ թղթի վրայ, մաս մը հաւանօրէն սահմանուած Մեկենասի համար:*

*Թէպէտ թարգմանիչները յանուանէ չեն յիշատակուած խորագրին մէջ, բայց ինչպէս կը տեսնուի ժամանակակից թղթակցութիւն–*

ներէն[2] եւ ինչպէս աւանդաբար հասած է մեզի, երեք երիտասարդ Մխիթարեաններ են գործին գլուխը:

Ա. Դպրութիւնը՝ «Ժամանակք» կամ Պատմութիւն հին դարուց մինչեւ Կարոլոս Մեծ (էջ 1—192), թարգմանած է Հ. Մատաթիա Գարագաշեան:

Բ. Դպրութիւնը՝ «Կարգ Կրօնից» (էջ 143—366), թարգմանած է Հ. Յովսէփ Գաթրճեան: Իսկ

Գ. Դպրութիւն՝ «Պետութիւնք» (էջ 367—479) թարգմանած է Հ. Ղեւոնդ Յովնանեան:

---

[2] «Լուայ ի Վ. Հ. Պօղոսէն (Յովնանեան) զփոյթ յնդութեան եւ աշխատութեան ընդ աշխատասիրութիւն թարգմանութեան գրոց Մեծի Հեղինակի Պօսուէի, զոր ի նորընծայ քահանայից ոմանք թարգմանեալ են: Ընթերցայ զգործն. զարմացայ ընդ գեղեցիկ ոճ թարգմանութեան. պրավօ. յիրաւի որպէս արեւ զատեղն այնպէս եւ գովելիս այս գործ զաշխատասիրութիւն Այնուարեանին խուարեցուցէ…: Միայն թէ զանուանս թարգմանչացն ի ճակատ գրոցն դրոշմել մի վերջանայք եւ մի՛ ի տեղի նոցա զայլոյ անուն ստութեամբ դնել. զի այս ոչ բարւոք թուեցաւ մեզ: Այլ որպէս ի հնախօսութիւնս արարեալ են Հ. Գէորգ եւ Հ. Եդուարդ, նոյնպէս եւ զանուանս Հ. Յովսեփայ եւ Հ. Մատաթիային (որք թարգմանիչք լեալ են գրոցն, որպէս լուայ) զմին ի՛ ճակատ առաջին հատորին եւ զմիւսն ի ճակատ երկրորդին. եւ ի յառաջաբանութեան ծանուցանել զի (վասն) աճապարելոյ զտպագրութիւնն… յամօրեայ աւուրս ի լոյս ընծայեցին:… Եւ յինէն կողմանէ գովեա՛ զաշխատութիւն նոցա եւ (յայտնեա՛) զխնդակցութիւն իմ ընդ յառաջադիմութիւն նոցա ամենեցուն»: Թուղթ Հ. Մ. Տէրվիչեանի առ Հ. Յ. Պօզաճեան (21 Յուլիս 1841 Կ. Պոլիս):

*Երեքն ալ մէկ դպրոցի աշակերտներ, ուսումնակից ընկերներ:*

*Առաջին փորձն էր այս երեւալու հրապարակին «ոսկեդարեան» հայերէնի ճոխութեամբ: Իւրաքանչիւր թարգմանիչ տարած էր մասնաւոր խնամք լաւագոյն եղանակաւ արտայայտելու՝ ճշգրիտ հետեւողութեամբ դասական հայերէնի օրէնքներուն: Կառք մը լծուած երեք երիվարներէ, որոնք միաչափ քայլերով կը վարգեն յառաջադէմ: Կը սուրայ կառքը յառաջ, թեթեւաթեւ. զգալի են երիվարներու դոփիւնները, իրենց ինքնուրոյն հարուածներովը, բայց կ՚արշաւեն անոնք անվրդով, համազարկ:*

*Ինչպէս կը սիրէր արտայայտուիլ Այտընեան՝ իբրեւ նոր Եզնիկ մը կը խօսի հոս Գաթըրճեան, ոճի նոյն բարձրութեան վրայ, արուեստի նոյն նրբութեան մէջ:*

*Հրապարակ ելաւ Մատեանը, հասաւ Կ. Պոլիս Սեպտեմբերի վերջերը. ուր արդէն ի վաճառ հանուած էր Ազնաւուրեանի թարգմանութիւնը:*

*Հազուադէպ երեւոյթ էր հայ գրականութեան մէջ մի եւ նոյն գործին միաժամանակ կրկին հրատարակութիւնը: Եթէ այս ի սկզբան զարմանք պատճառեց, քիչ յետոյ խուճապ, չփոթ յառաջացուց. երբ երկու թարգմանութիւնները, կատարուած երկու Մխիթարեան Դպրոցներէ՝ բաղդատուեցան իրարու հետ, աչքի զարկաւ այն մեծ վիհը,*

որ կայ միոյն եւ միւսին միջեւ թէ՛ թարգմանութեան արուեստին կողմէն եւ թէ մանաւանդ լեզուի տեսակէտէն: Նորալուր էր Վիեննական Դպրոցի հայերէնին հնչիւնը, նորաձեւ շարադասութիւնը, նորիմաստ բառերը, նաեւ ուղղագրութիւնը նորանշան: Բոլորովին աննման էր թարգմանութեան լեզուն այն հայերէնին, որուն ընտելացած էր ԺԹ. դարու ճաշակը: Շատ քիչերը հասու եղան այն գաղտնիքին, որ անբարբառ թաղնուած էր այս թարգմանութեան մէջ: Հասարակութիւնը զուր կը հարցաքննէր Յառաջարանը, գտնելու հոն հրապարակի վրայ գրուած հանելուկին լուծումը:

Մխիթարեան Նոր Դպրոցը կը բարբառէր հոն: Հին Դպրոցի ուսուցչապետները թէեւ եղան հանելուկին խելամուտ, բայց չհամարձակեցան տալ հրապարակաւ մեկնութիւնը: «Վասն Բոսուետայ թարգմանութեան՝ որ ընտիրն է ի թարգմանութիւնս, բազում չփոթութիւն եւ այլայլութիւն տեսանի» Հին Դպրոցի մէջ, կը գրէ Հ. Թադէոս Մուրատեան, վասն զի այն թարգմանութիւնը «անակնկալ ինչ թուեցաւ»[3]: Հ. Մանուէլ Տէրվիչեան յայտնելով իւր խըն-

---

[3] Թուղթ 20 Հոկտ. 1841 Կ. Պոլիս ուղղուած առ Հ. Յ. Պօղաճեան ի Վիեննա:

ղակցութիւնը նոր հրատարակութեանս առթիւ կը գրէ. «Յիրաւի զարմացայ ընդ գեղեցկութիւն Բոսուէտի եթէ ընդ արտաքին գիրս, ընդ վայելչութիւն պատկերի եւ եթէ ընդ հայկարան եւ սիրուն ոճ թարգմանչացն, զորս յինէն կողմանէ շնորհաւորեա՛ եւ գովեա՛ : ... (որ ասա իմաստունքն համարին) ամօթով կան եւ խէթ եւ սրտցաւ պաշարեալ է զբազումս ի նոցանէ» [4] :

Հ. Պօղոս Յովհաննեան, որ առանձին ուշադրութեամբ հետեւած է թարգմանութեանս շուրջը յայտնուած կարծիքներուն եւ հրապարակի վրայ եղած խօսակցութիւններուն, կը տեղեկացնէ իւր եղբօր [5] հանդերձ քաջալերական խօսքերով. «Զոր ինչ Հայք զթարգմանութենէ Բոսուետայ խօսին՝ զայն ամենայն ազնուութեան նոցա ծնունդս համարիմ, քանզի առաջի նոցա միայն Վենետիքեանք են իմաստունք եւ միայն նոքա արբեալ են լիով բերանով զբաժակն իմաստութեան եւ զոր ինչ նոքա գրեն եւ դրոշմեն՝ այն է ընտիր. ուստի թէպէտ ոմն ի չվարժապետաց ճեմարանին յՈւսկիւտար եկեալ առ մեզ բարբանջէր՝ եթէ թարգմանութիւնն

[4] Թուղթ 13 Հոկտ. 1841 Կ. Պոլիս առ Հ. Յ. Պօզաճեան:

[5] Թուղթ առ Հ. Գ. Յովհաննեան, 7 Փետր. 1842, Կ. Պոլիս:

*Վենետիկեանց ընտիր եւս է քան զձերն. ձերն լի է վրիպակօք. Թարգմանիչքն առեալ զԹարգմանութիւն Վենետիկեանց փոխեալ են սակաւ բանս եւ դրոշմեալ, եւ այլ եւս անպատշաճ բանս, որ նոցա գիտութեանն եւ կրթութեան են պատուղ: Բայց ի Վենետիքեանս ոմանք գովեն զկարգ եւ զոճ բանիցն եւ զԹարգմանիչսն վարժեալս ասէին յընտիր ոճ հայ բարբառոյ. սակայն, ասեն, գտանին Թերութիւնք ինչ. եւ զի յայտնի տեսանի եթէ Թարգմանիչքն ոչ յար եւ նման ոճով Թարգմանեալ են եւ այլն եւս: ... Այս յայտնի է զի ի բանս նոցա տեսանի եթէ զարմանան ընդ վայելչութիւն եւ հմտութիւն ոճոյն, մանաւանդ Հ. Արսէնն (Բագրատունի), որ եւ ասացեալ է, ասեն՝* Ան թարգմանած գրիչն ոսկեզօծ ամանի մէջ դնելու է ու գրքատունը պահելու է: *Զճշմարտութիւն այսց բանից լսողացն ապաստան առնեմ, զի ես ոչ լուայ զայն: Զայս ինչ զարմեալ լուայ, զի ի նախատել (ոմանց) ... ի տան Պօղոս աղայի Պիլէզիքճեանց զմեր Թարգմանութիւնն ասելով.* ամէն մէկ գլուխ մէյ մէկ կերպով թարգմաներ են *եւն եւն, ասացեալ է ուսուցիչ մանկանցն ի տան անդ. Հ.* Արսէն վերապատուելին շատ գովեց աս թարգմանութիւնը: *Եւ արդ շատ է ասել զայսչափ ինչ զայսմանէ. զի իմանայք եղբարք, եթէ յո՛ր միտս են քննիչքն զմէնջ, այսինքն այսու-*

հետեւ սկսանին գովել զգործս մեր: Այսպ քաջալերեալ փութասջիք զաշխատութիւն յանձն առնել եւ մատենագրել զկարեւոր գիրս, զի մի՛ սկիզբն միանգամայն եւ կատարած եղիցի»:

Հ. Ա. Բագրատունի անշուշտ ամէնէն աւելի ձեռնհասն էր ըմբռնելու թարգմանութեանս մէջ ցուցադրուած նոր բարբառն եւ նոր արուեստը. եւ ինչպէս ժամանակակից ուրիշ թղթակցութիւններէ ալ կը տեսնուի, անվերապահ յայտնած է նա իր սքանչանքը թէ՛ այս եւ թէ՛ յաջորդ ժամանակի թարգմանութիւններու վրայ:

Հ. Պ. Ցախանեան խօսելով դարձեալ (Թղ. 3 Յունիս) նոյն մեծ հայկաբանին՝ Հ. Ա. Բագրատունւոյ տպաւորութիւններու մասին կը հաղորդէ բառախաղս. «Սա՝ իբրեւ եհաս թարգմանութիւնն Բոսսւետայ այսր՝ հարցեալ զՎ. Հ. Սերովբէն մեր (Մէրճանեան) եւ լուեալ ի նմանէ զանուն միոյ ի թարգմանչացն՝ եթէ է Հ. Յովսէփ Խաթրրճեան, ասացեալ է. խաթըրի պէս չիփտէ զարնել ու ուրիշին գործքը (....) վար ձգել աշխատեր է»: Ուրիշ մը նոյն Հին Դպրոցէն կը յայտարարէ. «Անհամ է թարգմանութիւն Բոսսւետայ եւ գաղխական հոտով լի. այլ եւ ընդդէմ կանոնաց հայկաբանութեան բազում

ասացուածք են ի նմա եւ ոճք ինքնագլուխք[6] եւ այլ եւս բազում բանք[7]»: Եւ այսպիսի խօսքեր, կ'աւելցնէ նոյն Հայրը, ոչ եթէ «արանց իմաստնոց առաջի խօսի նա, այլ անիմաստից ոմանց, որոց անգուսն բերան լեալ զոր լսենն, խակ եւ խակ տանէ ի տուն շրջին եւ յեղուն յայլոց ականջս»:

Բայց եւ այնպէս հակառակ ամէն այպանութիւններու Բասուէտի թարգմանութիւնը կը հորդէ իրեն առջեւ ճանապարհ. կը սկսի առ սակաւ սակաւ ախորժելի ըլլալ ճաշակընտիր քիմքերուն.

«Գովեստ թարգմանութեանն Բասուէտայ սկսանի յաճախել ի բերանս գիտնոց. եւ եթէ ոք ի կարծեաց իմաստուն քննչաց գտանէ վրիպակ ինչ կամ թերութիւնս կա՛մ անհմտութեան նոցա պարտ է գրել զայն եւ

---

[6] Ի մէջ այլոց նորալուր լսուած է դրոշմեմ բառը, տպագրեմ իմաստով. «Վասն բառիս դրոշմեալ, զոր մատենագիրք մեր այժմ յաճախեն ի կիրառութիւն, ասխալմ առել, զոր լուայ: Բազում վէճք եւ բանք լինին ի մէջ Վնեժեանց իբր նորահնար եւ խորթ. զի առ նախնիս զայս նշանակութիւն ի տուեալ բառիս չիք ուրեք տեսանել, աւեն, իբր զի յաւուրս նոցա եւ արուեստ տպագրութեան չէր եւս երեւեալ: Արդ զոր նախնիք մեր առեն չեն առեալ ի գործ, մեզ, որ հետեւող նոցա անուանեալ կոչիմք, զիա՞րդ համարձակելի է յօտար միտս առնուլ զբառն»: Թուղթ Հ. Թովմայի Սերաստեան առ Հ. Յ. Պօղաճեան. Կ. Պոլիս 15 Յունիս 1842:

[7] Թուղթ Հ. Թ. Սերաստեանի առ Հ. Յ. Պօղաճեան, 18 Մայիս 1842, Կ. Պոլիս:

*կամ բաղձանաց նոցա՝ տեսլոյ ինչ եւ իմաստութեան երեւելոյ»*[8]:

*Բոսուէի թարգմանութեան գնահատողներէն մին եղաւ Արշալոյս Արարատեան (1842, Թ. 73), որ այսպէս յայտարարեց զայն իւր էջերու մէջ. «Տիեզերական պատմութիւն Բոսուէտայ. այս պատուական գիրքը գաղղիական բնագրէն թարգմանելով՝ Վիէննայի Մխիթարեան ուխտէն Հ. Մատաթիա Գարագաշեան եւ Հ. Յովսէփ Խաթըրճեան գիտնական վարդապետները, անցած տարի տպեր են նոյն վանքը...:* Թարգմանութիւնը շատ ընտիր է ու գլխովին նման մեր քաջ մատենագիրներուն ոճոյն՝ որոնք հինգերորդ դարուն ծաղկեցան...»: *Վերջին խօսքերս հաճոյ չեն եկած ժամանակակից հայկաբաններուն, որոնք, ինչպէս կը գրէ նամակագիր մը, «կարի սրտմտեալ էին ընդ գովեստ Բոսուէտայ մերոյ, վասն որոյ ի ձեռն երրորդի գիր յանդիմանութեան առաքեալ էին առ Բալթասար աղբարն (խմբագրապետն «Ա. Ա.»ի) վասն տարապայման գովեստից*[9]»:

---

[8] *Թուղթ Հ. Պ. Յովհաննեանի առ Հ. Ղ. Յովհաննեան,* 12 *Յունուար* 1842, *Կ. Պոլիս:*

[9] *Թուղթ Հ. Մ. Սաղաթէլեանի առ Հ. Յ. Պօղաճեան, Զմիւռնիա* 13 *Մայիս* 1842:

1847, Մարտ 26ին կը գրէր Զմիւռնիայէն Հ. Բ. Սպեննեան առ Հ. Ց. Գաթըրճեան. «Ղ. Պալդադարեան... պատմեաց մեզ զայս ինչ. ի հրատարակել իմում, ասէ, զհատուած գովեստի Բոսուետայ ձերոյ յԱրշալուսին իմում, գրեցին առ իս Վենետացիքն գիր յանդիմանութեան, որպէս թէ ադխտութեամբ գովիցեմ, զոր պարտ էր մանաւանդ պարսաւել. եւ առեալ առաքեցին, ասէ, Պօլսէ մի փառաւոր յոյժ կարգեալ, յաւելով եթէ Ընթերցիր զմերս եւ տեսցես զխարդ պարտ իցէ լինել թարգմանութեան եւ ո՞ր գեղեցիկ իցէ եւ ո՛ր յոռի եւ այլն: Իսկ իմ, ասէ, գրեալ առ նոսա պատասխանի ասացի այսպէս. Ես ընթերցայ զմատեանն (այս ինքն զմեր Բոսուետ) եւ զտի գեղեցիկ յոյժ, բայց եթէ ձերդ թարգմանութիւն գեղեցկագոյն քան զնորայն իցէ, զայդ ես չկարեմ դատել. զի այսպիսի դատաստան տեղեկագունից եւ հմտագունից անկ է, ուր ես սակաւ ինչ միայն գիտեմ, որով եւ գեղեցիկ դատեցի եւ գովեմ զգործն: Սոքիմբք սակաւ բանիւք Պալդադարեանն ինքնին (միւսանգամ) զիւր կարծիս յայտ առնէ աւադիկ»:

Ճաշակ մը տալու համար մեր ընթերցողներուն, յառաջ կը բերեմ այս տեղ հատուած մը Բոսուէի Բ. Դպրութենէն, դէմ առ դէմ ներկայացնելով Հ. Ց. Գաթըրճեանի եւ Հ. Բ. Ագնաւորեանի թարգմանութիւնները. եւ տարբեր գաղղիերէն բնագիրը.

ԳԱԹԸՐՃԵԱՆ

Բոսուէտայ Մեղդաց եպիսկոպոսի խօսք վասն տիեզերական պատմութեան :

Բ. Դպրութիւն. — Կարգ Կրօնից :

Գլուխ Ա. — Արարչութիւն կամ առաջին ժամանակք :

*Զայս ամենայն համառօտեալ կարգել յօժարեցի, ոչ վասն այնորիկ ինչ՝ զի զկարգ ժամանակացն ցուցանիցեմ, թէպէտ եւ այն իսկ կարեւոր է, վասն զամենայն պատմութիւնս ի կարգ արկեալ յեռլոյ, եւ զառ միմեանս համեմատութիւն գտանելոյ. այլ որպէս կանխագոյն իսկ ասացի, զայն ի մտի ունէի՝ զի ի կարգի ժամանակացն* ԶՏԵՒԵԼ ԺՈՂՈՎՐԴԵԱՆ ԱՍՏՈՒԾՈՅ *եւ* ԶՄԵԾԱՄԵԾ ՊԵՏՈՒԹԵԱՆՑ *ցուցանիցեմ :*

*Սոքա երկոքեան, ի շրջշրջել ժամանակացն, միանգամայն խաղան եւ միմեանց առ.*

---

*Discours sur l'histoire universelle par Bossuet.*

*Seconde partie — la suite de la religion.*

*Chapitre premier — La création, et les premiers temps.*

Mais le vrai dessein de cet abrégé n'est pas de vous expliquer l'ordre des temps, quoiqu'il soit absolument nécessaire pour lier

ԱԶՆԱՒՈՐԵԱՆ

Տեառն Պոսիւէի արքեպիսկոպոսի խօսք ի վէպս ազգաց :

Մասն Բ. — Կարգ յաջորդութեան հաւատոյ :

Գլուխ Ա. — Լինելութիւն աշխարհի, եւ առաջին ժամանակք :

*Դիտաւորութիւն համառօտագիծ բովանդակութեանս ոչ յայն հայի, վեհագոյն տէր, զի նկարեցից յանդիման զկարգ ժամանակաց. թէպէտ եւ այն կարեւոր իցէ վասն ի մի լծորդելոյ զպատմութիւնս ամենայն, եւ յայտ առնելոյ զզուգաւորութիւնս նոցա, այլ որպէս կանխեցի ասացի, յայն ինչ առաւել փութամ, զի ի ժամանակագրութեանս խելամուտ արարից զքեզ մանաւանդ* ԿԱՐԳԻ ՅԱՋՈՐԴՈՒԹԵԱՆ ԺՈՂՈՎՐԴԵԱՆՆ ԱՍՏՈՒԾՈՅ, եւ ՄԵԾԱՄԵԾ ԹԱԳԱՒՈՐՈՒԹԵԱՆՑ :

*Սոքա երկոքեան անբաժան գնանին միշտ ի դարս ժամանակաց, եւ միօրինակ*

toutes les histoires, et en montrer le rapport. Je vous ai dit, monseigneur, que mon principal objet est de vous faire considérer, dans l'ordre des temps, la suite du peuple de Dieu et celle des grands empires.

Ces deux choses roulent ensemble dans ce grand mouvement des siècles, où elles ont pour ainsi dire un même cours : mais il est

Գաբրիէլեան

*երի ընթանան․ այլ վասն բարւոք ի միտ առնլոյ, պարտ է երբեմն ի միմեանց զատանել, եւ միտ եդեալ նայել՝ թէ զինչ միումն դէպ իցէ եւ զինչ միւսումն պատշաճ:*

*Մեծ իսկ եւ շահաւոր քան զամենայն ինչ՝ զոր մարթիցի ոք մարդկան յանդիման կացուցանել, կրօնք են, եւ մշտնջենաւոր տեւել ժողովրդեան Աստուծոյ, թէ այնպէս ոք ընդ նոսա միտ եդեալ նայիցի: Զի գեղեցիկ իսկ է յանդիման առաջի աչաց տեսանել զազգի ազգի անցս ժողովրդեանն Աստուծոյ, առ բնութեան օրինօքն եւ առ նահապետօքն, առ Մովսիսիւ եւ առ օրինօքն գրելովք, առ Դաւթաւ եւ առ մարգարէիւքն․ յետ ի գերութենէ դառնալոյ մինչեւ ցՔրիստոս․ եւ առ Քրիստոսիւ իսկ, առ շնորհօքս եւ առ աւետարանաւ․ ի ժամանակին՝ յորս Օծելոյն ակն ունէին մարդիկ, եւ յորս Օծեալն երեւեցաւ․ ի դարուն՝ յորս աստուածպաշտութիւն ի միում ազգի միայն էր, եւ յայնոսիկ՝ յորս*

---

besoin, pour les bien entendre, de les détacher quelquefois l'une de l'autre, et de considérer tout ce qui convient à chacune d'elles.

La religion et la suite du peuple de Dieu, considérée de cette sorte, est le plus grand et le plus utile de tous les objets qu'on puisse proposer aux hommes. Il est beau de se remettre devant les yeux les états différents du

զոգցես ընթացք են սոցա: Բայց առ քաջ խելամտութիւն իրացդ ոչ է տարադէպ անջրպետել զնոսա, եւ ուրոյն առնուլ ի քնին զոր առ երկաքանչիւրսն պատշաճեալ բանք լիցեն:

Իմաստասիրել զհաւատոց, եւ զկարգէ յաջորդութեան ժողովրդեանն Աստուծոյ ըստ օրինակիս ըստ այսմիկ՝ հրաշափառագոյն է եւ կարեւոր քան զամենայն ինչ: Գեղեցիկ է նկարել յանդիման զպէսպէս հանդամանս ժողովրդեանն Աստուծոյ՝ որ ընդ օրինօք բնութեան յաւուրս նահապետաց, եւ որ ընդ գրաւոր օրինօք առ Մովսէսիւ, առ Դաւթիւ եւ առ այլովք մարգարէիւք, եւ որ զկնի գերեդարձին մինչեւ ի Քրիստոս, եւ որ դարձեալ առ Քրիստոսիւ իսկ ընդ օրինօք շնորհաց եւ աւետարանի: Ի ժամանակին յորս ակն կալան Մեսիայի, եւ ի ժամանակին՝ յորում երեւեցաւ նա. առ ժամանակօք յորս աստուածականն պաշտօն ժողովեցաւ ի ժողովուրդ մի, եւ ի ժամանակս դարձեալ՝

---

peuple de Dieu, sous la loi de nature et sous les patriarches; sous Moïse et sous la loi écrite; sous David et sous les prophètes; depuis le retour de la captivité jusqu'à Jésus-Christ; et enfin sous Jésus-Christ même, c'est-à-dire sous la loi de grâce et sous l'Évangile; dans les siècles qui ont attendu le Messie, et dans ceux où le culte de Dieu

Գաթըրճեան

*ըստ հնոցն մարգարէութեանց ընդ ամենայն երկիր աստուածպաշտութիւն տարածեցաւ· յազգսն՝ յորս մարդիկ, դեռ տխմարագոյնք եւ թանձրամիտք, ժամանակեան հատուցմանց եւ պատժոց պատուհասից կարօտանային, եւ յայնս՝ յորս հաւատացեալք թեքեալք եւ կրթեալք, ի հաւատոց եւ եթ պարտին կեալ, յաւիտենից բարութեանցն ցանկացեալք, եւ ակն կալեալք այնց բարութեանցն հասանելոյ՝ ամենայն վշտաց ժուժկալել, զի նոցա հանդէս համբերութեանն երեւեսցի:*

*Արդարեւ չէ մարթ՝ թէ աւելի ինչ արժանաւոր Աստուծոյ ոք իմանայցէ, քան յառաջագոյն ընտրել Աստուծոյ իւր ժողովուրդ սեպհական՝ որ նշանակ երեւելի իւրոյ մշտնջենական տեւչութեանն լինիցի· որոյ բախտաւորութեան պատճառք՝ աստուածպաշտութիւն իցէ, եւ չաջողութեան՝ կա-*

---

a été réduit à un seul peuple, et dans ceux où, conformément aux anciennes prophéties, il a été répandu par toute la terre; dans ceux enfin où les hommes, encore infirmes et grossiers, ont eu besoin d'être soutenus par des récompenses et des châtiments temporels, et dans ceux où les fidèles, mieux instruits, ne doivent plus vivre que par la foi, attachés aux biens éternels, et souffrant, dans l'espé-

Ազնաւորեան

յորս ըստ կանխաստաց մարգարէութեանցն
սփռեալ ծաւալեցաւ աստուածպաշտութիւն
ընդ ամենայն երկիր. առ ժամանակօք յորս
դեռ անզօր եւ անկիրթ բնութիւնս մարդ-
կային զօրանայր մօտաւորացս եւեթ վարձուք
եւ պատժովք, եւ ի ժամանակին յորում
կիրթ եւս եղեալ հաւատացելոց, քաջալերէին
այնուհետեւ հաւատովք գնալ յաւիտենակա-
նացն տենչացեալ փառաց, եւ առ ի յոյս ժա-
ռանգութեանն արհամարհել զամենայն տան-
ջանս՝ որ հանդէս առնէր համբերութեան
նոցա:

Եւ զի՞նչ աստուածայնագոյն արդարեւ
զմտաւ ածիցէ ոք իբր ընտրել Աստուծոյ յա-
ռաջագոյն ժողովուրդ սեփական ի հանդէս
յաւեժական նախախնամութեան իւրոյ. ժո-
ղովուրդ՝ որոյ յաջողուած եւ աղէտք բախ-
տին կախեալ կային զկարգաց աստուած-
պաշտութեան, եւ պէսպէս հանդամանք նո-

---

rance de les posséder, tous les maux qui peuvent exercer leur patience.

Assurément, monseigneur, on ne peut rien concevoir qui soit plus digne de Dieu, que de s'être premièrement choisi un peuple qui fût un exemple palpable de son éternelle providence; un peuple dont la bonne ou la mauvaise fortune dépendît de la piété, et dont l'état rendît témoignage à la sagesse et à la justice de celui qui le gouvernait. C'est par

Գաբրիէլեան

պաշտութիւն, եւ որոյ անցք իրացն վկայութիւն ընծայեցուցանիցեն իմաստութեանն եւ արդարութեան այնր՝ որ վարէրն զնա: Աստատին իսկ սկսաւ Աստուած, եւ զդոյն իմն եցոյց հրէական ազգաւն: Այլ յետ այնչափ երեւելի ընծայութեամբք զայն անշարժական հիմն արկանելոյ՝ թէ ինքն միայն ըստ իւրոց կամացն զամենայն իրս մօտաւոր կենացս մատակարարէ, ժամանակ էր այնուհետեւ ի բարձրագոյնս զմարդիկ փոփոխել, եւ զՅիսուս Քրիստոս առաքել, որում անկ էր նոր ժողովրդեան յամենայն ազգաց աշխարհիս ժողովելոյ զանձառ ճառս հանդերձելոց կենացն յայտնել:

Ընդ երկոցունց ժողովրդոցն պատմութիւն զիւրաւ մարթիս անցանել, եւ տեսանել՝ թէ զիարդ ի միախառն հաւատարութիւն ածեալ զերկոսին միանգամայն ընդ միմեանս զօդեաց Քրիստոս, քանզի եւ յառաջն՝ մինչ դեռ ակն ունէին նմա, եւ յետոյ՝ յորժամ պարգեւեցաւ նոցա, նա էր յամե–

---

où Dieu a commencé, et c'est ce qu'il a fait voir dans le peuple juif. Mais, après avoir établi par tant de preuves sensibles ce fondement immuable, que lui seul conduit à sa volonté tous les événements de la vie présente, il était temps d'élever les hommes à de plus hautes pensées, et d'envoyer Jésus-Christ, à qui il était réservé de découvrir au

Ազնաւուրեան

*ցին՝ վկայութիւն էին իմաստութեան եւ արդարութեան առաջնորդի նոցա: Աստի սկիզբն արար Աստուած, եւ զայս եցոյց ի ժողովրդեան Հրէից: Եւ իբրեւ հաւատարիմ գործեաց ի բազմադիմի փորձս հրաշալիս զանշուշտ զայս ճշմարտութիւն, եթէ նա ինքն է տնօրէն ամենայնի յաստի կենցաղս, եկեալ հասանէր այնուհետեւ ժամն յեւս բարձրագունիցն ամբառնալ ակնարկութիւն զմարդիկ. եւ առաքէր զՔրիստոս՝ որում միայն էր յայտնել ժողովրդեանս նորոյ գումարելոյ յամենայն ազգաց երկրի՝ զգաղտնի խորհուրդս կենացն հանդերձելոց:*

*Աղէ, անց դու միանգամ, եւ դիւրին է քեզ գործն, ընդ վէպս երկուց ժողովրդոցս, եւ հայեաց զիարդ ի մի զօդէ զնոսա Քրիստոս. քանզի չեւ եւս իսկ պարգեւեալ աշխարհի, եւ յետ գալստեանն, նա եղեւ յոյս եւ մխիթար որդւոցն Աստուծոյ:*

---

nouveau peuple ramassé de tous les peuples du monde les secrets de la vie future.

Vous pourrez suivre aisément l'histoire de ces deux peuples, et remarquer comme Jésus-Christ fait l'uion de l'un et de l'autre, puisque, ou attendu ou donné, il a été dans tous les temps la consolation et l'espérance des enfants de Dieu.

Գաթըրճեան

*նոյն ժամանակի մխիթարութիւն եւ ակնկալութիւն որդւոցն Աստուծոյ :*

*Տեսանե՞ս զհանապազ զմիաձեւ զմիանման կրօնն, մանաւանդ թէ զմիշտ նոյն անդստին ի սկզբանէ աշխարհի. ի կրօնն յայնս յամենայն ժամանակի մի նոյն Աստուած արարիչ ճանաչի, եւ մի նոյն Քրիստոս կենարար մարդկութեան :*

*Աստի իսկ առնուցուս ի միտ՝ թէ քան զկրօնս յոր հաւատացեալն ես, հնագոյն ինչ ի մարդկան միջի չիք, եւ թէ ոչ վայրապար ինչ հարքն քո՝ մեծ իսկ քան զամենայն փառաւորութիւն անձանց համարեցան, ջատագով կրօնիցն մտանել :*

*Իսկ արդ՝ եթէ հնութիւն կրօնիցն այնպիսի վկայութիւն զնմանէ մատուցանէ, ապա եւ հանապազորդ կարգն, առանց ընդ մէջ հատանելոյ եւ առանց փոփոխելոյ զայնչափ ժամանակս, մանաւանդ՝ յորժամ այնչափ խափանիչք ի վերայ հասանէին, յայտ առնէ՝ եթէ ձեռն Աստուծոյ է որ զնա ունի» :*

---

Voilà donc la religion toujours uniforme, ou plutôt toujours la même dès l'origine du monde : on y a toujours reconnu le même Dieu comme auteur, et le même Christ comme sauveur du genre humain.

Ainsi vous voyez qu'il n'y a rien de plus ancien parmi les hommes que la religion que vous professez, et que ce n'est pas sans

Ազնաւորեան

*Հանգոյն իմն, մանաւանդ թէ եւ նոյն կարգ աստուածպաշտութեան կալեալ է ի սկզբանէ աշխարհի եւ այսր. նոյն Աստուած ցանդ ծանուցաւ արարիչ, եւ նոյն Քրիստոս փրկիչ ազգի մարդկան:*

*Եւ աստի յայտնանէ ի միտ առնուցուս թէ չիք ինչ կանուխ ժամանակաւ ի մարդիկ որպէս զհաւատոն զաւանեալ առ ի քէն. եւ զի իրաւամբք արդեօք անկողոպտելի փառս համարեցան անձանց նախորդք քո թեւարկու հանդիսանալ:*

*Արդ եթէ այսքան զօրաւոր առադրէ զհաւատոս երիցութիւն ժամանակին, առաւել եւս յաջորդութիւն նորա անխափան եւ անայլայլակ դարուց ի դարս աննուաճելի եղեալ ի հակառակորդաց, յայտ յանդիման քարոզէ զձեռն ամենակալին որ հսկէն նմա»:*

---

raison que vos ancêtres ont mis leur plus grande gloire à en être les protecteurs.

Que si l'antiquité de la religion lui donne tant d'autorité, sa suite, continuée sans interruption et sans altération durant tant de siècles et malgré tant d'obstacles survenus, fait voir manifestement que la main de Dieu la soutient.

*Աւելորդ է յառաջ տանիլ համեմատութիւնը: Աւելորդ է նաեւ խօսիլ թէ ո՛րքան բարեխիղճ է Գաթըրճեան հանդէպ Բնագրին, ո՛րքան ճարտարութեամբ եւ հաստուն մտքով կը հայացնէ զայն եւ վերջապէս քանի՛ ազնուական եւ ճոխ է լեզուն իր գրչին տակ, հաւատարիմ դասականին վսեմ նկարագրին եւ համապատասխան կիրթ ճաշակին* *:

*Եւ այս ամէն առաւելութիւնները միահաղոյն կը ծորեն 21ամեայ վաղահաս երիտասարդի գրչէն: Ինչ որ Կիկերոն նկատմամբ Քսենոփոնի ըսած է, թէ* մուսայք իսկ իջեալ նորա բերանով բարբառեցան, *պիտի ուզէի իմանալ Գաթըրճեանի վրայ. եւ Հոմերոսի տողերը, ըսուած Նեստորի մասին, սիրելի էր ինծ մերձեցնել Թարգմանչիս թէ* բանք եւս քաղցրագոյնք քան զմեղր ծորածոյ ի լեզուէն հոսէին:

*Այսպէս քաղցրալուր, հայերէնախօս հայերէնաբարբառ կը ներկայանայ Գաթըրճեան թէ այս եւ թէ իւր միւս հեղինակու–*

---

* *Հ. Ք. Սպենեան (Թղ. 26 Մարտ 1847 ի Զմիւռնիոյ) կը գրէր առ Հ. Յ. Գաթըրճեան. «Յակոբայ Ոսկանեան... եկեալ առ իս՝ կամեցաւ գնել զմեր մատեանս յամենեցունց մի մի օրինակ եւ գնեաց իսկ Բոսուետ, Կուրտիոս... իսկ եթէ հարցանիցես, թէ զի՞ առնելոց իցէ զայդ ամենայն գիրս, ինքնին ասաց զպատճառն. ասէ.* Ոսկի դարուն հետեւիլ ուզելով՝ բաղձացի որ առանձին ձեռքս ունենամ. քանզի, ինչպէս գիտէք, *ասէր*, մենք ոսկի դարն ընտրած ենք օրինակ նմանելու: Հիմա, *յաւել ասել*, հրամանոց Բոսուետը կը բաղդատենք գաղիերէնի հետ, եւ չենք կրնար կոր կշտանալ գեղեցկութիւնը գովելէն»: *Յակոբ Ոսկանեան Զմիւռնիոյ Մեսրոպեան վարժարանի աշակերտն է, բարձրագոյն դասարանէն:*

*Թիւններու եւ թարգմանութիւններու մէջ, որոնց վրայ կարգն է խօսելու:*

2· ՔՍԵՆՈՓՈՆՏԵԱՅ ԿԻՒՐՈՍԻ ԽՐԱՏՈՒ ՊԱՏՄՈՒԹԻՒՆՔ· զոր թարգմանեալ է Հ· Յովսէփայ Գաթըրճեանց յաշակերտաց Մեծի Հօրն Մխիթարայ· եւ ծախիւք ազնուական տեառն Սերովբէի Գաթըրճեանց դրոշմեալ: *Ի Վիեննա* 1843, 12°, *էջք* 14 + 40 + 532:

[ԹԱՐԳՄԱՆՈՒԹԻՒՆՔ ՅՈՒՆԱՑ ՄԱՏԵՆԱԳՐԱՑ, Ա:]

*Քսենոփոնի Κύρου παιδεία նշանաւորագոյն գործին թարգմանութիւնն է յունարէն բնագրէն, որուն ձեռնարկած է Գաթըրճեան* 1842*ի սկիզբը, առաջարկութեամբ Գեր. Ազարեանի*[10]*: Այս մին է անոր սկզբնական աշխատութիւններէն, որուն տպագրութեան Մեկենաս հանդիսացած է իր հայրը՝ Սերովբէ Գաթըրճեան: Գործին յառաջաբանին կը յաջորդէ «Տեղեկութիւն վասն ամենայնի զոր զԿիւրոսէ գրեաց Քսենոփոն»* (*էջ* 1—40 *մանրագիր*), *ուր կը վերլուծէ մատենին պատմական բովանդակութիւնը:*

*Թարգմանիչը մրցելով քաղցրաբան հեղինակին ոճին եւ առթիկեցի բարբառին հետ՝ կը ջանայ նոյնպէս ընտիր եւ քաղցրախօս ներկայացնել թարգմանութիւնս:*

*Սկիզբն էր այս յոյն եւ լատին մատենագրութեանց թարգմանութեան շարքին, զոր*

---

[10] *Թուղթ Գեր. Ա. Ազարեանի առ Հ. Պ. Յովնանեան,* 16 *Մարտ* 1842, *Վիեննա: — Թարգմանչին փափագն էր ի սկզբան Գր. Նազիանզացւոյ ճառերու թարգմանութիւնը ընծայել իւր հօրը. որմէ ապա կը հրաժարի. տե՛ս վարը:*

կը ձեռնարկէին Գաթըրճեան եւ Ընկերները։ Գեղեցի՛կ ձեռնարկութիւն։ Բայց ցաւ է ըսել, որ ձեռնարկութիւնս նոյն թափով, ինչպէս սկսաւ, չմղուեցաւ յառաջ։ Քսենոփոնի երկրորդ պատմական գործը՝ Արշաւանք Բիւրուց ապա թարգմանեց Հ. Նիկողայոս Աւգերեան (անտիպ)։ Աւելի յաջողութիւն ունեցաւ Հռովմայեցի մատենագիրներու շարքը, որ տուաւ ինչ ինչ՝ Կիկերոնի, Նեպոսի, Կուրտիոսի, Կիպրիանու եւ այլոց գրուածներէն։

3. Մ. Տ. ԿԻԿԵՐՈՆԵԱՑ ԿԱՏՈՆ ԵՐԷՑ ԿԱՄ ԹԷ ՎԱՍՆ ԾԵՐՈՒԹԵԱՆ. զոր թարգմանեալ է Հ. Յովսէփայ Գաթըրճեանց։ Ի Վիեննա 1843, 8°, էջ 40։

[ԹԱՐԳՄԱՆՈՒԹԻՒՆ ՀՌՈՎՄ. ՄԱՏԵՆԱԳՐՈՒԹԵԱՆՑ. Ա.]

Հռովմայեցի հռետորին փիլիսոփայական ընտիր գրուածներէն մէկն է Cato maior de senectute, ուր պարարտ տարիքի ալեաց գովքը կը հիւսուի։ Լատին դասականին դասական հայերէնով խօսիլ տալ փորձած է հոս Գաթըրճեան եւ իր փորձը յաջողած է ամենափայլուն կերպով[11]։

[11] Հ. Տիմ. Լիմոնճեան, Թուղթ 12 Յուլիս 1844 ի Զմիւռնիա, կը գրէր առ Հ. Մ. Գարագաշեան. «Զթարգմանութիւն գրոցն Կիկերոնի վասն Ծերութեան տուաք նոցա (Հայոց ի Զմիւռնիա) ընթեռնուլ. չկարացին ի գովելոյ՝ ճշմարտութեամբ ոչ գիտեմ, զքաղցրութիւն թարգմանութեան եւ ոճոյն. կը կարծենք կոր որ, ասեն, Կիկերոնը հայերէն կը խօսի կոր։ Եւ յորդորեն զմեզ մի կասել ի սկսելոցս, թէպէտ ոմանց նոր երեւիցի ասեն եւ ընդ բազում բամբասանօք եւ քրիդիքայիւք անկանիցիք վասն սոցին իրաց։

*Մխիթարեան Հարց անտիպ գրուածներու մէջ կը գտնուին, հաւանօրէն Հ. Յ. Գաթըրճեանի թարգմանութեամբ, նոյն հեղինակի հետեւեալ գործերն ալ, դատական հայերէնով.*

*ա.* Մ. Տ. Կիկերոնի Գիրք վասն Հռետորաց անուանեաց, որ կոչի Բրուտոս:

*բ.* Մ. Տ. Կիկերոնի Առ Կ. Եղբայրն խօսք երեք զՀռետորէ: *Ա. Գիրքն ամբողջ, Բ. Գիրքը կիսով պահպանուած:*

4. Կ. ԿՈՒՐՏԵԱՅ ՌՈՒՓԱՅ ՎԱՍՆ ԳՈՐԾՈՑ ԵՒ ԱՐՈՒԹԵԱՆՑ ԱՂԵՔՍԱՆԴՐԻ ՄԵԾԻ. զոր թարգմանեալ է Հ. Յովսեփայ Գաթըրճեանց ի Մխիթարեան ուխտէն. ծախիւք ազնուական պարոն Աղեքսանդրի Ռափայէլի Ղարամեան: *Տոմար Ա—Բ: Ի Վիեննա* 1844, 8 *Սեպտեմբեր ամսոյ*, 12°, *էջ ԺԶ* + 632 + 512:

[ԹԱՐԳՄԱՆՈՒԹԻՒՆՔ ՀՌՈՎՄ. ՄԱՏԵՆԱԳՐԱՑ. Գ.]

*Աղեքսանդր Ռ. Ղարամեան, որ յանձն առած է տպագրութեան ծախքը, Միաբանութեանս լաւագոյն բարեկամներէն մին էր: Ինչպէս երբեմն Ռոլէնի Հռովմայեցւոց Պատմութեան եւ Հնախօսութիւններու տպագրութեան նոյնպէս այժմ հրատարակութեանս, որ իւր համանուն Մեծին Մակեդոնացւոյ գործերն եւ քաջութիւնները կը պատմէ, հանդիսացած է Մեկենաս: Ընծայական մը գործին ճակատը կը յայտնէ թէ փոխադար-*

*ճարտար երախտագէտ սրտէ իր անուան կը նուիրէ Մխիթարեան Միաբանութիւնը այս գողտրիկ գիրքը։*

*Նաեւ թարգմանիչը նուիրած է Մեկենասին ընծայական մը, զոր կ՚ուզեմ զետեղել այս տեղ ամբողջութեամբ, տալու համար առիթ ծանօթանալու իր ոճին եւ երախտագէտ զգածումներուն։*

*«Բաջանուն եւ փառաւոր Ասպետ.*

*Եթէ յանկարծակի ոգի բերեալ կանգնէր ի մոխրոյ իւրմէ Աղեքսանդրոս, ինձ թուի թէ ոչ ի Մակեդոնացւոց աշխարհին կամ ի մարմարակուռ շիրմէ իւրմէ զոր կազմեցին նմա զօրավարք եւ սպարապետք նորա, այլ յարուցեալ կայր ի մէջ Հայոց սահմանաց. աստ է սիրտ նորա, զի աստ է շիրիմ նոր՝ արութեանց նորա եւ ոչ ոսկերացն։ Թագ եւ գաւազան նորա անկեալ կայ առաջի ոտից քոց, ձեռն քո ժողովէ զնոսա, ով քաջ, ի պահեստ յաւիտենական։ Այլ ընդ նորա՞ արդեւք եթէ ընդ քո պատիւ մեծարանաց յաճախեցից զարմանալ։ Կապեցեր զհամբաւ քո ընդ համբաւոյ աշխարհակալին. ո՞ ոք այսուհետեւ հայ այր յիշեացէ զԱղեքսանդրոս եւ զքեզ ոչ յիշեացէ։ Զոր օրինակ ոչ անուանի Աղեքսանդրոս առանց անուան քո, նոյնպէս եւ ոչ ածցի զմտաւ առանց տեսլեան քո։*

*Եւ արդ մեւք հանդերձ զԿուրտիոս ունիս քեզ շնորհակալ, զի եւ նա ընդ մեզ մատուցեր Թողու Վիրգիլեայ եւ Որատեայ զՄե-*

*կենաս, զի ընդ մեզ ունիցի Մեկենաս, եւ զփառս իւր բաժանէ ընդ քեզ: Ապա ընկալ ախորժութեամբ զպարգեւս նորա, ընկալ զպտուղ վաստակոց մերոց, ընկալ զծնունդ ուսումնասէր մտաց քոց:*

*Այսպէս ընկալեալ սիրելի ազգատոհմին մերոյ զգեղեցիկ յաւելուած բարեաց բարերարութեան քո, ի բազմանալ վայելչութեանն յաւելցի եւ գութ սիրոյ քո»:*

*Կուրտեայ Ռուֆայ գործին Թարգմանութեանս վրայ աւելորդ է չափլեւ գովութիւն, որովհետեւ ինքնին պիտի հնձէ իր դրուատիքը ամէն անոնցմէ, որոնք միանգամ ձեռք կ'առնեն վայելել Հռովմայեցի ընտիր մատենագրին ճարտասանական–պատմական եւ բովանդակալից մատեանս: Ոչ հռովմայեցի այլ հայերէնախօս բարբառով կ'առաջնորդէ հոս Մեծ Աշխարհակալը իւր լայնատարած բանակին:*

5. ՍՐԲՈՅՆ ԿԵԿԻԼԻՈՍԻ ԿԻՊՐԻԱՆՈՒ ԿԱՐՔԵԴՈՆԱՑԻՈՑ ԵՊԻՍԿՈՊՈՍԻ ԳԻՐՔ ՎԱՍՆ ՄԻՈՒԹԵԱՆ ԵԿԵՂԵՑԻՈՑ. զոր թարգմանեալ է Հ. Ց. Գաթըրճեանց: *Ի Վիեննա* 1846, 8°, *էջ* 30:

*Ընծայականը՝ էջ 5 կը յայտնէ թէ Մատեանս Մխիթարեան Միաբանութեան կողմէն նուիրուած է Գեր. Արխատակէս Ազարեանի, Ընդհ. Աբբահօր «յաւուր տօնի Անուան»:*

*Եթէ հոգեւլից Ս. Հօր գրուածքը իւր*

հիւթեղ բովանդակութեամբ եւ հոգեշունչ ոճով կը ներկայացնէ հրապոյր կարդալու զայն, թարգմանութիւնս կը պարգեւէ անոր առանձին հմայք իւր ոսկեղինիկ բարբառով, որ կը հնչէ յստակ եւ կը մոգէ ճաշակներ:

*

Բացի այս թարգմանութիւններէն, որոնք հրատարակուած են տպագրութեամբ, ունի Հ. Յ. Գաթըրճեան նաեւ անտիպ գործեր, զորոնք կ՚ուզեմ յիշատակել հոս՝ ամբողջութեամբ ներկայացնելու համար դասական հայերէնով աշխատութիւններուն ցանկը:

6. ՍՐԲՈՑՆ ԳՐԻԳՈՐԻ ՆԱԶԻԱՆԶԱՑԻՈՑ ԵՊԻՍԿՈՊՈՍԻ ՃԱՌ Ա. Ի ՅՈՒԼԻԱՆՈՍ ԿԱՅՍՐ:

Թարգմանութեանս ձեռնարկած էր Գաթըրճեան 1841ին իբրեւ նորընծայ քահանայ. իր փափագն էր հրատարակել զայն իր հօրը՝ Գր. Սերովբէի ծախքով: Բայց երբ յայտնի կ՚ըլլայ իր մտադրութիւնն ի Կ. Պոլիս, Հ. Պ. Յովնանեան 26 Յունուար 1842 թղթով կ՚առաջարկէ Գեր. Ազարեանի անոր փոխարէն աւելի կարեւորագոյն գրուածք մը թարգմանել. իր տողերն են. «Յուսամ եթէ մեծաւ խնդութեամբ ընդունիք զլուր խոստանալոյ Պարոն Խաթըրճեանին տալ զգին դրոշմելոյ զգիրսն զոր թարգմանէ որդի նորա Պ. Հ. Յովսէփ: Այլ ներեսցէ Գեր. Տէրութիւնդ համարձակութեանս եթէ ծանեմ աղա-

չեմ զՉեզ մի՛ դրոշմել զճառս, զի արդարեւ տանեմ աշխատութիւն թարգմանչին եւ գրամքն եւ ծախքն ի նանիր են: Քաջ թարգմանիչն թարգմանեացէ զՊատմութիւն ինչ յընտիր մատենագրաց, զի օգտակար լիցի եւ վաճառեսցի եւ ազգ մեր առեալ ընթերցի զայն...: Մին ի պատճառաց վասն որոյ ասացի չդրոշմել զճառս Ս. Գրիգորի Նազիանզացւոյ այս է. զի որովհետեւ բազումք ի ճառից անտի երանելւոյն թարգմանեալ են ի նախնեաց մերոց, բարեկամք մեր եւս ի բարձրացուցանել զպատիւն մեր ասասցեն ամենայն ուստեք եթէ առեալ զգործս նախնեաց եւ փոփոխեալ ուրեք ուրեք զթարգմանութիւն նոցա դրոշմեալ են»:

Գաթրրճեան անսաց տրուած խորհուրդին եւ թողլով անաւարտ Նազիանզացւոյ ճառից թարգմանութիւնը ձեռք զարկաւ հայացնել Քսենոփոնի Կիւրոսի խրատու պատմութիւնը:

Ունիմ աչքիս առջեւ Նազիանզացւոյ ճառից թարգմանութիւնը, անաւարտ եւ առանց ողորկուելու: Կը ներկայացնեմ այս տեղ իբրեւ նմոյշ ճառին սկիզբը, զիմացը դնելով հին թարգմանութիւնը, մեր Մատենադարանի Թ. 217 ձեռագրէն Թղ. 175 ա «Նորին առ Յուլիանոս թագաւոր»[12]:

---

[12] Թարգմանութիւնս կը վերաբերի Սուտ–Կալիսթինէսի Աղեքսանդրի Վարուց Թարգմանութեան

Նոր թարգմանութիւն։

*«Լուարուք զայս ամենայն ազգք, ունկնդիր լերուք ամենեքեան, որք բնակեալ էք յաշխարհի»։ Զի զամենեսեան իսկ իբրեւ ի բարձանց ինչ բարձրաւանդակաց ի մէջ անցեալ կոչեմ մեծաւ քարոզութեամբ։ Ունկն դիք ժողովուրդք եւ տոհմք եւ լեզուք եւ ամենայն ազգ մարդկան եւ ամենայն հասակք եւ բոլոր տիք. որ այժմդ էք եւ որ յետոյն լինելոց իցէք. եւ զի եւս յաճախագոյն քարոզութիւնն լինիցի, ամենայն զօրութիւն երկնից եւ համօրէն հրեշտակք որ զբռնաւորն տատակեցին. ոչ եթէ զՍեհոն թագաւոր Ամովրհացւոց եւ ոչ զՈվգ արքայ Բասանու զփոքր բռնաւորսն եւ զտանջիչս Իսրայէղի զսակաւ ինչ կողման աշխարհի. այլ զվիշապն զապստամբ, զմիտն հպարտացեալս, զասորեստանեայն եւ զհաստատակաց զամենեցունց թշնամի*

Հին թարգմանութիւն։

*«Լուարուք զայս ամենայն ազգք, ունկնդիր լերուք ամենեքեան որ բնակեալ էք յաշխարհի։ Քանզի կոչեմ զամենեսեան իբրեւ ի բարձր դիտանոցէ ումեքէ եւ ի միջին չուրջ բարձրաւանդակէ, մեծաւ եւ բարձր ձայնիւ քարոզութեամբ։ Լուարուք ժողովուրդք ցեղք լեզուք ամենայն ազգք մարդկան եւ հասակք. ամենեքեան որք այժմ էք եւ որք լինելոց էք. եւ զի լինիցի մեծագոյն ինչ քարոզութիւնս, ամենայն զօրութիւնք երկնից, ամենեքեան հրեշտակք, որոց գործ բռնաւորին կործանումն։ Ոչ զՍեհոն կործանեն զթագաւոր Ամովրհացւոց. եւ ոչ զՈվգ թագաւոր Բասանու, զփոքունս բռնաւորս եւ զսակաւ մասն աշխարհի չարչարիչս Իսրայէլի, այլ զվիշապն զապստամբ եւ զմիտն զմեծն զԱսորեստանեայց, զհաստատակաց ամենեցուն զթշնամի եւ*

---

*խումբին, որոնց մէջ անծանօթ են տակաւին նորաձեւ բայակերպ մասնիկներն եւ նմաններ։ Ձեռագիրը հասած է Վիեննա 1852ին։*

| | |
|---|---|
| եւ զպատերազմօղ, որ բիւրապատիկ մոլէր կրա-կէր յերկրի եւ բազում ինչ ապառնայր, եւ յաճա-խեաց անիրաւութիւն ի բարձունս խօսել անօրէ-նութեան արոճս որո-ճալ ...»: | զպատերազմող, զյոլո-վագոյն ի վերայ երկրի զմոլեալն եւ զապառնա-ցեալն, եւ բազում անի-րաւութիւն ի բարձունս խօսողն»: |

7. ՀՐԱՀԱՆԳՔ ՓԻԼԻՍՈՓԱՅՈՒԹԵԱՆ ՈՐ ԳՐԵԱԼ Է Ի ՎԻՆԿԵՆՏԻՈՍԷ ՊՈՒՋԻՆՍՔԻ յԸնկերութենէ Յիսուսի: Թարգմանեցաւ յամի 1846. Մասն Ա. Հրահանգք բանաւոր փիլիսոփայութեան: Մասն Բ. Հրահանգք մետափիւսիկեան փիլիսոփայութեան:

8. ՀՐԱՀԱՆԳ ՎԱՐԴԱՊԵՏՈՒԹԵԱՆ ՅՈՒՍՈՒՄՆ ՈՐՈՑ ՄԱՏՁԻՑԻՆ Ի ՔՆՆՈՒ-ԹԻՒՆ ԱՌ ԸՆԴՈՒՆԵԼՈՑ ԽՈՒՋՈՒՄՆ ՀԵ-ՐԱՑ ԵՒ ՁԿԱՐԴՄՆ ԵԿԵՂԵՑԱԿԱՆՍ: ՅՕՐԻ-ՆԵԱԼ Ի Հ. ԱԼՈՅԻՍԻՈՍԷ ԹՈՆԵԻ. թարգ-մանեալ ի Հ. Յ. Գ.: Ի Վիեննա 1844:

9. ԴԱՍԱԳԻՐՔ ԵԿԵՂԵՑԱԿԱՆ ԻՐԱ-ԻԱՆՑ ԱՄԵՆԱՅՆ ՔՐԻՍՏՈՆԷԱԿԱՆ ԴԱԻԱ-ՆՈՒԹԵԱՆՑ. Ի ՓԵՐԴԻՆԱՆԴՈՍԷ ՎԱԼԹԷՐ: Թարգմանեալ յաշակերտաց Հ. Յովսեփայ Փաթըրճեանց, եւ ուղղեալ ի նմանէ: 1846:

ԱՐԴԻ ԱՇԽԱՐՀԱԲԱՐՈՎ ԹԱՐԳՄԱՆՈՒԹԻՒՆՆԵՐ

10. Կենդանաբանութիւն կամ Բնական պատմութիւն կենդանական պետութեան: Գրեալ յԱլոյիսիոսէ Փօքոռնի. թարգմանեալ

յաշակերտաց Մխիթարայ Աբբայի (*խմբ՝ ի Հ. Յովսեփայ Գաթըրճեան*), *Կ. Պոլիս* 1862 : *Անտիպ*:

11. Բուսաբանութիւն կամ Բնական պատմութիւն բուսական պետութեան : Գրեալ յԱ. Փոքոռնի. թարգմանեալ ի Հ. Յ. Գ. [*Կ. Պոլիս* 1863/64] : *Անտիպ* :

12. ՏԱՐԵՐՔ ԵՐԿՐԱԶԱՓՈՒԹԵԱՆ. ՓՐ. ՄՈՁՆԻՔԻ. թարգմանութիւն ի գերմանականէ : (*Հրտ. առանց անուան թարգմանչի* :) *Վիեննա* 1864, 8°, *էջ* 343 :

*Կը թողում յիշել մանր թարգմանական գրուածները, տպուած եւ անտիպ, որոնց թուին մէջ են կարգ մը քահանայապետական թղթեր* :

ԳԱԹԸՐՃԵԱՆ ԻԲՐԵՒ ՀԵՂԻՆԱԿ

13. ՏԻԵԶԵՐԱԿԱՆ ՊԱՏՄՈՒԹԻՒՆ Ի ՍԿԶԲԱՆԷ ԱՇԽԱՐՀԻ ՄԻՆՋԵՒ ՑՄԵՐ ԺԱՄԱՆԱԿՍ աշխատասիրութեամբ Հ. Յովսեփայ Վ. Գաթըրճեանց ի Մխիթ. ուխտէ ի խնդրոյ քաջանուն եւ հոյակապ Իշխանին Յովհաննու Ամիրայի Տատեանց եւ նորին ծախիւք դրոշմեալ :

Հատոր Ա. Հին Պատմութիւն : Ի Վիեննա 1849, 8° մեծ, էջք ԻՁ + 620 :

Հատոր Բ. Միջին Պատմութիւն : Ի Վիեննա 1852, 8° մեծ, էջք 608 :

*Տիեզերական պատմութեան ամփոփ եւ ամբողջ գրքի մը չգոյութիւնը Հայոց մէջ եւ*

*նման աշխատութեան մը կարեւորութիւնը հայ ժողովրդեան մտաւոր դաստիարակու-թեան համար ունենալով աչքի առջեւ Տո-տեան Յովհ. Ամիրայ, առթիւ իւր երկրորդ բարեղէպ այցելութեան ի Վիեննա (Դեկտեմ-բեր 1847) կ'առաջարկէ Մխիթարեան Միա-բանութեանս ձեռնարկել՝ գրել ամբողջ եւ ամբողջութեան մէջ հակիրճ պատմութիւն մը սկսեալ նախամարդէն մինչեւ մեր օրերը: Հինգ ընդարձակ հատորներու մէջ պիտի ամ-փոփուէր այս Պատմութիւնը. որուն առաջին երկու հատորներու տպագրութեան ծախքը (2100 Փլ.) կը գրուի անմիջապէս Միաբա-նութեանս տրամադրութեան տակ: Հայրե-նասէր եւ իմաստասէր Ամիրայի ընձից կա-տարումը կը յանձնուի Հ. Յովսէփ Գաթըր-ճեանի, որ կը գտնուէր նոյն ժամանակ ի տիս ծաղիկ հասակի երիտասարդութեան:*

*Կորովի երիտասարդը չի վարանիր խի-զախել այսպիսի մեծ եւ պատասխանատու աշխատութեան:*

*Ընդարձակ ծրագիր մը կը մշակէ Հ. Գա-թըրճեան իւր աշխատութեան համար. ընդ-գրկել պատմութիւնը բոլոր այն ազգերու որոնք խաղացած են պատմական բեմի վրայ դեր, նկատել անոնց քաղաքակրթական պայ-մանները, մտաւոր զարգացումն եւ սովորու-թիւնները, կրօնք եւն՝ հաւատարիմ աղբիւր-ներու հիման վրայ, նորագոյն քննութիւն-ներու արդիւնքին վրայ յեցած եւ այսպէս*

ներկայացնել «գխանարար ինչ պատմութիւն վասն հասուն մտաց» (Ա. էջ գ)․ ընականարար՝ հիւսելով ուխեղ․ պատմ․ հետ նաեւ ազգային պատմութիւնը։

Առաջնորդուած եւրոպական պատմիչներու նորագոյն հեղինակութիւններէ, պաշաճեցուցած ծրագիրն եւ յօրինուածութիւնը ազգային նկարագրին եւ տարողութեան, միշտ ճշմարտութեան ի խնդիր եւ յառակ ոճի ուշադիր՝ հանած է հրապարակ կարճ ժամանակի մէջ ընդարձակ հատոր մը «Հին պատմութիւն» ի սկզբանէ աշխարհի մինչեւ Քրիստոս։

Ա. հատորը երբ կ՚ընծայաբերէր Մեկենասին, ի լրումն անոր ըղձից մէկ մասին՝ կը գրէր յուսալից․ «եւ մեք յուսամք ընդհուպ ածել զխղձս նորա յարդիւնս՝ յորժամ յետ այսր հատորոյ ընծայեցեմք մի ըստ միոջէ զայլ եւս հատորսն» (Ա. ե)։

Ինչպէս հասուն խորհրդով պատմագիր, առած է զննութեան ընդհ․ պատմութիւնը իր պատմական գծերու մէջ եւ ի յարաբերութեան ընդհանուրի հետ։ Կարեւորներէն ընտրելով կարեւորագոյնը, զրոյցէն՝ պատմութիւնը, անհարազատէն՝ հարազատը։

Աւելի կատարեալ մը իր ժամանակին համար չէր կարելի մտածել։ Նիւթին ամբողջութիւնը, պատմուածքին համաչափութիւնը, պատկերին լրութիւնն եւ համապայծառ պաշնակաւորութիւնը ձեռն ի ձեռն կը

*Հռչակէին աշխատութեան յաջողութիւնն եւ կատարելութիւնը: Պատմելու ախորժելի ոճը, լեզուի դասական նկարագիրը, նաեւ գրքին արտաքին ձեւն եւ խնամեալ տպագրութիւնը կու տային անոր հրապոյր:*

*Ինչպէս ինքնին կը խոստովանի հեղինակը, նորութիւն մըն էր մատեանս ազգին համար, թէ բովանդակութեամբն եւ թէ յօրինուածքովը: Մնաց այն իր տեսակին մէջ միակը մինչեւ մեր օրերը. չունեցաւ մրցակից, ինչպէս չունէր համահաւասար մը իրմէ յառաջ:*

*Եթէ անտարակուսելի է, թէ ունէր հեղինակը ընդհանուր պատմութեան համար իրեն առաջնորդներ (հմմտ. Ա. էջ Թ), բայց անկախ էր ազգային պատմութեան մէջ, որուն սքանչելի ամփոփումը, դատաւորութիւնը պայծառ եւ յստակ ներկայացմամբ արդիւնքն է իր լուրջ դատողութեան:*

*Հայոց պատմութեան նախաքրիստոնէական շրջանին նուիրուած էին հետեւեալ հատուածները.*

Հովիտ Երասխ եւ Կուր գետոց — Հայաստանի (2300—530), էջ 87—110:

Հայաստանի նահանգ Պարսից պետութեան (—300), էջ 340—344:

Պարթեւ եւ Հայք (300—1), էջ 579—598:

*Ա. հատորին յաջորդեց երկու տարի ետքը Բ. հատորը, որ կ՚ընդգրկէ փրկչական թուականէն մինչեւ 480 միջոցը:*

Հաւատարիմ մնալով այն յատակագծին, զոր գծած էր Ա. Հատորին սկիզբը, կը շարունակէ պատմագրել Հատորս, որուն գլխաւոր նիւթն է Հռոմէական տիեզերական պետութեան վերելքն եւ անկումը, յարակից մասերով: Առաջնոյն բաղդատութեամբ այստեղ ներկայացուած է «պատմութիւնն ներքին ընդարձակութեամբ»: Պատմութեան այս հինգ դարերը, որոնք «հոծ եւ խիտ են քաղաքային, եկեղեցական եւ մեր իսկ տոհմային իրօք», կը պահանջէին առաւել պայծառութեամբ, ասով՝ առաւել ընդարձակութեամբ եւ դէպքերու ներքին յարաբերական աղերսովը նկատի առնել: Հռոմէական Պետութիւնն եւ Քրիստոնէական Եկեղեցին մէկ կողմէն եւ Արեւելքի պատմութիւնն եւ ազգային քաղաքական կեանքը միւս կողմէն հարկ դրած են հեղինակին վրայ կարեւորութեան համաձայն աւելի մանրապատում եւ աւելի խոր քննութեամբ գրի առնել՝ գիրկընդխառն միութեան մէջ: Եւ կը պատճառաբանէ. «Եթէ հարկ իցէ կիրթ մարդոց գոնեայ զընթացս իմն տիեզերական պատմութեան ունել նկարեալ ի մտի, ապա այսց ժամանակաց տեղեկութիւն առաւել քան զայլոցն կարեւոր է այնպիսւոյն իբրեւ քաղաքացւոյ, իբրեւ քրիստոնէի, եւ մանաւանդ՝ իբրեւ արեւելեան առն» (Յոջր.):

Հռոմէական պատմութեան կից ընդարձակ եւ մանրակրկիտ տուած է Եկեղեցական

պատմութիւնը, եկեղեցւոյ արտաքին եւ ներքին զարգացման ընթացքը, կեանքը, մատենագրութիւնը:

Եթէ այս բովանդակութիւնը իւր ներկայացման ձեւովն նորութիւն մըն էր նաեւ եւրոպական ըմբռնմամբ, առաւել նորանշան երեւոյթ էր Պատմութեանս ընթացքին Հայոց պատմութեան բեմագրութիւնը: Առ այս կը գրէ.

«Ի դէպ է խակ եւ խակ նշմարել ընթերցանելեացն խնչ խնչ նոր ի պատմութեան առհմային խրաց՝ ե՛ւ ըստ նիւթոյն ե՛ւ ըստ կերպարանացն: Ցայդ խակ ածէր զմեզ հարկ պաշտաման գրելոյ պատմութիւն տիեզերական: Այս խնքն՝ ոչ ուրոյն խնչ խնքնագլուխ գխտել գՀայոց պատմութիւն, այլ ի ճշմարիտ կայանին՝ ի գխրս կարգի տիեզերական պատմութեանն զետեղել: Ի դոյն հարկ էր այնուհետեւ զբովանդակն եւ զմասունսն ընդ այնմ ամենայնի բերել ի կշիռ համեմատութեան, ընդ որում անկ էր նոցա միաբանել: Յետ այնորիկ վասն որոշելոյ խնչ՝ կարեւոր պխտոյ էր զատանց աշատութեան բանադատութիւնն արկանել ի կիր եւ ջանալ ուղղել զայն խնչ՝ որում կարօտութիւնն եւ հնար գոյր ուղղելոյ» (Յոջր. ր):

Խօսքերովս կ՚ակնարկէ հեղինակը այն նորաձեւութիւնն եւ յեղափոխութիւնը Հայոց պատմութեան մէջ, զոր կու զար յառաջ բերել Բ. հատորխ մէջ:

Մինչ Ա. հատորին մէջ եղած էր հետեւող մը նախապաշարեալ կարծիքներու նկատմամբ Հայոց ծագման եւ հնագոյն՝ նախաքրիստոնէական պատմութեան, հիմնուած Մ. Խորենացւոյ տուեալներուն վրայ, եւ ջանացած էր՝ հետեւելով Չամչեանի, արտաքին աղբիւրներն հաշտեցնել ներքնոյն, յընթացս Բ. հատորին կը տեսնէ Գաթըրճեան հարկը, թօթափել ամէն կանխակալ միտք եւ «բանդատութեան» քննադատութեան լուսով առաջնորդուիլ: Արտաքին աղբիւրներէ բղխող լոյս հոսանքի առջեւ տեսած է անհնարաւոր պաշտպանել տոհմային աւանդութիւնները, կամ ջատագով հանդիսանալ անոնց ստուգախօսութեան: Պատմագրելով սորված է արդէն արուեստը պատմագրելու. եւ լայնախոհ, խորաթափանց գննութեամբ արտաքին պատմութեան երեւէջներուն եւ փոխադարձ ազդեցութիւններուն, ըմբռնած է Մ. Խորենացւոյ Պատմութեան առասպելական նկարագիրը, եւ քաջալերուած ճշմարտախնդրութեան ոգիէն՝ թօթափած է ամէն կապանք ակնածութեան եւ երկիւղի՝ ժամանակակիցներու զատափետութեան առջեւ:

«Որպէս յայլում յամենայնի՝ նոյնպէս եւ ի սմին ոչ այլ ինչ կայր մեր ի մտի՝ բայց ջերմեռանդն սէր ճշմարտութեանն, այն՝ զի ճգնիմք զուր զարեգակնային ժամացոյց տիեզերացս ուղղել ըստ ժամացուցին զոր ի ծոցի մերում գտանեմք, այլ զսա մանաւանդ ըստ

նմին յերիւրել՝ որչափ ինչ հնարն իցէ: Սակայն եւ ոչ զայն ժպրհիմք ասել՝ թէ ամենայնիւ կատարեալ ինչ եւ անվրէպ առաջի ընծայեցաք, այլ զայս իմն բաւական համարիմք՝ եթէ զփուտ եւ զանհաստատ յատակն ի բաց պեղեցաք եւ զմասն մի ի հիմանցն զետեղեցաք» (անդ):

Գիտակցութիւնը, զոր ունի հեղինակը իւր վաստակին արդեանց մասին, գոհունակ սրտով արտայայտուած է, միանգամայն նաեւ անչափ համեստութեամբ: Գիտակից է թէ իւր աշխատութեամբ մաքրուած է Հայոց պատմութեան յատակը եւ ձգուած է քննական պատմութեան հիմը, որուն վրայ կարող է նաեւ ապագան քար քարի վրայ բարձրացնել չէնքը: Ինչ որ Գուտշմիդ 20 տարի յետոյ իւր պարծանքն համարեցաւ, եւ ուզեց խորել անձին առաջնութեան զափնեպսակը, Գաթըրճեան վաղ արդէն կը կրէր զայն իւր ճակատին վրայ:

Եթէ ոչ լիովին, բայց ըստ մեծագոյն չափին լուծուած էր Մ. Խորենացւոյ արժանահաւատութեան հարցը: Գաթըրճեան զՄ. Խորենացի իբրեւ աղբիւր Տիեզերական, յատկապէս Հայոց պատմութեան արտաքսած էր հրապարակէն եւ յատկացուցած հայ Հերոդոտին մեկուսացած անկիւն մը՝ հեռու Տիեզերական պատմութեան մեծակառոյց չէնքէն:

Քայլ մըն էր այս յառաջ, որ պիտի բա–

*խէր ժամանակակիցներու ընդդիմութեան : Եւ այս է պատճառը, որ Գաթըրճեան կը փութայ ինքնարդարացման՝ յայտնելով թէ իր բարի կամեցողութենէն վեր է ծոցի ժամացոյցին համաձայնցնել արեգակնային մեծ ժամացոյցի սլաքները. եւ կամ տոհմային աղբիւրներու հաղորդած տեղեկութիւններով ուղղել յոյն եւ լատին ժամանակակից եւ հաւատարիմ աղբիւրներու հաղորդագրութիւնները, որոնց հետ նաեւ դրամագիտութիւնն եւ հնախօսութիւնք միաձայն են (էջ 86—89) : Բնականաբար ոչ անպայման պնդելով տոհմային աւանդութեան ստուգութեան վրայ, ոչ ալ արտաքիններունը յախուռն մերժելով կամ անոնց ուրիշ հող շնորհելով մեծ օգուտ մը պիտի ստացուէր. այս ընթացքո՛վ, կը գրէ հեղինակը, «ոչ զարտաքին պատմագրացն կարեմք զմիտս հաճել եւ ոչ զմերոցն». ուստի խոհեմագոյն կը համարի ուրոյն ուրոյն բաժիններով ներկայացնել նախ Մ. Խորենացւոյ եւ ապա արտաքին աղբիւրներու տեղեկութիւնները, թողլով ապառ ընթերցողին դատողութեան կշռել ստուգագոյնը : «Այս յիրաւի էր մեզ ոչ զմի պատմութիւն միւսումն պատմագրութեան զոհել, եւ ոչ տարաժամ խառնմամբ զերկոսին ի մի ձուլել բռնազբօսելով եւ զերկոսին միանգամայն այլայլելով, այլ այլում բախտաւորագոյն ժամանակի եւ աջողագոյն մտաց զվճիռն թողուլ, եւ այնպէս յետ կարգելոյ զտոհմային պատմագրութիւնն՝ մատչել առ եւ*

*ի միւսոյ կողմանն ուրոյն պատմութիւն»* (*էջ* 89) ։

*Այսպէս միայն կարելի էր ստեղծել «գործ բանադատական հանճարոյ»* ։

*Հայոց պատմութեան նուիրուած են՝*

«Հայք առ կայսերօք կեսարեանն տանն (ըստ տոհմային պատմագրաց), *էջ* 70—84 ։

Բուն Հայաստանն (եւ Պարթեւաստանն) առ կայսերօք կեսարե՛անն տանն (ըստ արտաքին պատմագրաց), էջ 84—124 ։

Հայք առ մնացեալ հեթանոս կայսերօք (ըստ տոհմային պատմագրաց), էջ 162—172 ։

Հայաստանն (եւ Պարթեւաստանն) առ մնացեալ հեթանոս կայսերօք (ըստ արտաքին պատմագրաց), էջ 172—180 ։

Հայաստանն (եւ Պարսկաստանն) [ամք 253—484], էջ 458—558 ։

*Այս մասերու մէջ նկատի առած է Գաթըրճեան գլխաւորաբար Հայոց քաղաքական, եւ կից՝ համառօտիւ միայն՝ Եկեղ. Պատմութիւնը. «իսկ զճառս եկեղեցական իրաց եւ մատենագրութեան Հայոց այլում ընդարձակագոյն տեղւոյ եւ ժամանակի պահեմք» (Յոջր.)* ։

*Ափսո՛ս, որ հայ մատենագրութեան այս պատուականագոյն գործը կրած է ընդհատում երկրորդ հատորով ։ Դժուարին է այժմ ըսել ընդհատման պատճառները ։ Բայց այս ընդհատումով մնաց հայ պատմական գրա–*

կանութեան մէջ բաց մը, զոր յաջորդող 80 տարիները չկրցան լեցնել[13]:

Հեղինակը թողուցած է իր անտիպ աշխատութեանց չարքին չորս հատոր՝ ընդհանուր պատմութեան հիմնական մասը, զոր տպա պիտի ընդարձակէր եկեղեցական, կենցաղական–քաղաքակրթական եւ արեւելեան–հայկական բաժիններով:

14. ՊԱՏՄՈՒԹԻՒՆ ՄԱՏԵՆԱԳՐՈՒԹԵԱՆ ՀԱՅՈՑ: Վիեննա 1851, 8°, էջք 62:

Մինչ կը յանձնէր Տիեզերական Պատմութեան Բ. հատորն մամուլի, Գաթըրճեան ձեռք կը զարնէր ուրիշ կարեւոր աշխատութեան մը՝ Հայոց մատենագրութեան պատմութեան: Այս աշխատութիւնը մաս առ մաս լոյս տեսած է «Եւրոպա» շաբաթաթերթին մէջ եւ ապա առանձին հրատարակուած:

Ընդարձակ ծրագիր մը կ՚ուզէր իրականացնել հոն. Հայոց գրականութեան պատմութիւնը գրել սկիզբէն մինչեւ 1850, որուն մասնական բաժանումներն պիտի ըլլային.

«ԱՌԱՋԻՆ ՄԻՋՈՑ. Քրիստոնէութենէ առաջ 150 նախ քան զՔր.—305 յետ Քր.):

[13] Տիեզերական Պատմութեան գաղափարի ըմբռնումը Գաթըրճեանի քով գեղեցիկ կերպով վերլուծած է Դկտ. Ա. Գասպարեան, Յուսաբեր, 1931, Թ. 144—165: Ուր սակայն կրօնական անխախտ սկզբունքներով առաջնորդուած եւ ժամանակի ըմբռնումները հարկադրաբար հաշուի առնող Գաթըրճեանի մէջ փնտռուած է չեզոք նաեւ անկրօն պատմագիր մը, որ չէ գտնուած բնականաբար:

1· *Անգիր* :

2· *Գրաւոր* :

ԵՐԿՐՈՐԴ ՄԻՋՈՑ· *Քրիստոնէութենէ ետքը* (305—1850) : *Ասոր տակը՝*

Առաջին Շրջան· *Հայերէն գրութենէ առանց կամ օտար լեզուաւ ու գրով գրուած* (305—406) :

Երկրորդ Շրջան· *Հայերէն գրութեամբ ու լեզուով* (406—1850) :

*Ա· Յունական քրիստոնէական մատենագրութեան ազդեցութեան տակ* (406—1300) :

1· *Ուղղակի յունական մատենագրութեան ազդեցութեան տակ, այս ինքն՝ յունական լեզուաւ ու գիտութեամբ* (406—500) : Առաջին թարգմանութեան առեն : *Ասոր՝*

2· *Անմատենագրութեան ժամանակ մը* (500—650) *յաջորդելէն ետքը՝*

3· *Երկրորդ յունարէն լեզուագիտութիւն մ՚ալ* (650—750), *այս ինքն՝ Սիւնեաց դպրոցին ժամանակները կու գայ* : Երկրորդ թարգմանութեան առեն :

4· *Անուղղակի* (*թարգմանութեանց միջնորդով միայն*) *յունական մատենագրութեան տակ* (750—1050) :

5· *Երրորդ յունարէն լեզուագիտութիւն մ՚ալ* (1050—1250) : *Երրորդ թարգմանութեան առեն* :

6· *Նորէն միայն միջնորդապէս յունական մատենագրութեան ազդեցութեան տակ* (1250—1300) :

*Բ. Համէջական կամ ճշդիւ՝ Գերմանական–քրիստոնէական մատենագրութեան ազդեցութեան տակ* (1300—1850):

1. Միջին *ժամանակի մատենագրութեան ազդեցութեամբ* (1300—1600):

2. Նոր *ժամանակի մատենագրութեան ազդեցութեամբ* (1600—1850):

ա. *Աւելի Իտալական, ետքերը՝ գաղիական մատենագրութեան ազդեցութեամբ* (1600—1830 *կամ* 40):

բ. *Կէս մը գաղիական, կէս մը գերմանական եւ մասամբ իմն անգղիական ազդեցութեամբ* (1830 *կամ* 1840—1850...)»:

*Աշխատութեան այս ստուերագիծը ցոյց կու տայ արդէն թէ որպիսի «պատճառախնդիր – ժամանակագրական բաժանումներ» ընտրած իր աշխատութեան, ձեռնարկած է բարձրացնել չէնքը: Գերմանական–հետազօտական ոգին կը խօսի հոս իր մէջ: Ինչպէս ամէն տեղ, նաեւ հոս կը ձգտի Գաթըրճեան ներկայանալ «մէկ կողմանէ* անձաչառ, *մէկալ կողմանէ ալ* չափաւորուած քննադատութիւնը» (critique) *յարգող, համոզուած թէ ուսումնասէր–բանասէրը, որ «իր գաղափարէն տոխկուած է ճշմարտասէր ըլլալ», չի կրնար «իր ներողամիտ դատմամբն անստոյգն ստոյգ» ընել, «եւս առաւել ստութիւնն ճշմարտութիւն» ընծայել: Ինքնախաբութիւն պիտի նկատուէր ամէն փորձ, որ «կեղակարծն իրեն համար անտարակու–*

ռելլի» կը ձգտի ներկայացնել, որովհետեւ տու այն «ի՞նչ իրաւամբ ուրիշներուն եւ ի մասնաւորի՝ օտարներուն հաւանութիւնը կրնայ պահանջել» : Անաչառութեան հետ չափաւորութիւն է պէտք, այս ինքն ուր անտեղի է՝ չըլլալ յախուռն եւ «թեթեւ կասկածներով» առանց գրական ապացոյցի վճիռ կտրել հնութեան վերաբերեալ խնդիրներու մէջ, դարահոս գլորել բարձրագահ աթոռէն մատենագիրներ եւ կամ նոյն իսկ հայրենական մատենագրութենէ դուրս վտարել զանոնք :

«Աս երկու կողմանէ գահավէժ ճամբուն վրայ չիտակ քալելու հնարք՝ կիրքերէ ազատ ըլլալն է ու ճշմարտութենէ վեր պատուական բան աչքի առջեւն չունենալն է» (էջ 7—8) :

Սկիզբ ընելով ձեռնարկութեան, հետազօտած է մանրակրկիտ զննութեամբ Առաջին Միջոցի առաջին շրջանը՝ «Անգիր ժամանակը» :

Որովհետեւ «անգիր ժամանակը» կը կանխէ գրաւորը, «հի՛ն լեզուի» մէջ կը փնտռէ հեղինակը հայ մտաւոր կրթութեան նախաւոր նշմարները : Եւ կը գտնէ հոն Բաներ, Անուններ, Առակներ, Երգեր, Զրոյցներ ու Ազգահամարներ, որոնք կ՚ընծայեն քննադատին կռուաններ չափելու եւ կշռելու հայ մտքի ստեղծագործելու կարողութեան սահմանները : Արդիւնքը աւելի քան յուսալի էր : Շատ յաջող եւ սրամիտ են իր զա-

տողութիւնները հայ հնագոյն Երգերու մասին ։ Ի կատարածին քննութեան կ'առնէ Գաթըրճեան «Նորագիւտ Գողթան երգը», որ 1851ին հրապարակի վրայ դրուած էր «իբրեւ անարատ գոհար մը» ։ Բանասէր քննադատին դժուար չէ եղած հրապարակախօսը նշաւակել անոր կեղակարծ կեղծիքը ։ Ուշագրաւ են հետեւեալ տողերը․ «Բանասիրականին կողմանէ՝ աս երգը մեր ունեցած հարազատ Գողթան երգին մասերէն ընտրելու չափ դժուարութիւն կ'ունենայինք՝ թէ որ ասիկա չինողը գիտնար ան այնչափ անգամ ծանուցուած, բայց դեռ աղէկ միտք չառնուած՝ Էական զանազանութիւնը՝ որն որ Հայերէն գրաւոր լեզուն ժամանակագրօրէն երկու տիրող բարբառոյ (dialecteի) կը բաժնէ, մէյ մը հինգերորդ դարուն կէսէն դէպ ի վեր, մէյ մ'ալ հինգերորդ դարուն կէսէն դէպ ի վար ։ Բայց նոր Գողթան երգիչը կա՛մ դեռ չէ ճանչցած եւ կա՛մ չէ թափանցած աս Հայերէն բանասիրութեան պատմութեան մէջ դարագլուխ մը չինող գիտին ։ ... Նոր Գողթան երգին լեզուն ըստ գոյացութեան նոյն դարուն երկրորդ կէսէն սկսեալ տիրող եղած լեզուն է ։ ... Իր լեզուն չէ թէ միայն Ե․ դարու Բ․ կէսին լեզուն է, հապա նաեւ մեր ատեններուն նորաձեւ լեզուին կնիքը վրան ունի ։ Նախ աս կը ցուցընեն բառերը․ կամ իբրեւ մեզի հասարակ եղած բայց հիներուն անլուր բառ, ինչպէս ահռելի․ կամ հիներէն

տարբեր նոր նշանակութեամբ, ինչպէս՝ գեղապանծ (իբրեւ գեղեցիկ կամ վեհ, ուր որ հիներուն քով՝ գեղեցկութեանը վրայ պարծող կը նշանակէ)» եւն (էջ 57—58)։

Իր յօրինուածութեամբն ու բովանդակութեամբը նորութիւն մըն էր աշխատութիւնս։ Ցաւ է որ այն իր հիմնաքարերու վրայ մնաց անաւարտ։ Գիտութիւնը չի կրնար ըստ բաւականին չողբալ անոր դադարումը։ Կ. Մխլէր լսելով որ Գաթըրճեանի թարգմանութեամբ լոյս է տեսած Երկրաչափութիւնը զայրագին գոչած է. «Հանճարեղ հեղինակը փոխանակ Մոշնիքը թարգմանելու թող շարունակէր իր Մատենագրութեան պատմութիւնը»։ Բայց ունին քանքարաշատ մատենագիրներն ալ իրենց կամակը։

Թէ ո՛րչափ ցանկալի եղած է գործիս շարունակութիւնը, թող վկայէ հետեւեալ նամակը, զոր կ՚ուղղէ Հ. Ց. Գաթըրճեանի հայերէնագէտ Հ. Պետերման.

Մեծարգոյ Տէր.

Ներեսցէ ինձ անծանօթի Պատուականութիւնդ Ձեր զի յանդգնիմ գրել Ձեզ զտողս զայսոսիկ։ Ընկալեալ ձեռամբ պատուելի եւ սիրելի Հ. Վ. Առաջնորդին Թանգարանիդ որ ի Բէրայ զառաջին տետրակն պատմութեանն մատենագրութեան Հայոց՝ զոր Պատուականութիւնդ յառաջ

քան գերեքասան ամս ի լոյս ընծայեաց, եւ ընթերցայ զայդ մեծաւ ուրախութեամբ՝ վասն զի նոր լոյս բերէ ի վերայ սկզբան մատենագրութեանն Հայոց: Լուեալ զի Պատուականութիւնդ ի բազում ժամանակէ անտի պատրաստ ունի զամենայն զոր ինչ հետաքննութեամբ եգիտ ի վերայ մատենագրութեան յաջորդ ժամանակացն յայժ աղաչեմ զՁեզ ոչ միայն յիմում կողմանէ այլ եւս ի կողմանէ բազում Հայոց եւ ամենայն Հայասիրացն մի՛ յապաղել տպեցուցանել զայս օգտաբեր զործդ Ձեր, թէպէտ եւ ես ցանկայցեմ զի զայդ ի գրաբառ լեզուին եւ ոչ յաշխարհաբառին որ դժուարագոյն ինձ է իմանալոյ՝ գրել կամեցիք:

Յուսալով թէ ներեսջիք ինձ զայս համարձակութիւնս կամ եւ մնամ

Ձերում Պատուականութեանդ

անձնանուէր

Ի Բէրլայ H. Petermann

12 Հոկտ. Վարժապետ յՈւսումնարանի

1864 Բէրլինոյ որ ի Պրուսիայ:

15. ՀԱՆԳԻՍՏ ԵՐԱՆԵԼԻՈՅՆ ՅՈՎՀԱՆՆՈՒ ՍՏՈՒԳԵԱԼ ԻԲՐԵՒ ՎԱՒԵՐԱԿԱՆ. հանդերձ ծանօթութեամբք: Վիեննա 1877, 8°, էջ 53 (= Ecclesiae Ephesinae de obitu Joannis apostoli narratio ex versione armeniaca saeculi V. nunc primum latine cum notis prodita. Curavit P. Josephus Catergian. Viennae 1877):

*Կը հրատարակէ հօս Գաթըրճեան հայերէն Ե. դարու թարգմանութեամբ միայն ծանօթ բնագիրը եւ բանասիրական ուսումնասիրութեամբ կը ջանայ ապացուցանել անոր վաւերականութիւնը եւ Բ. դարու սկիզբը գրուած ըլլալը:*

16. ՀԱՆԳԱՆԱԿ ՀԱՒԱՏՈՅ ՈՐՈՎ ՎԱՐԻ ՀԱՅԱՍՏԱՆԵԱՅՑ ԵԿԵՂԵՑԻ: *Քննութիւն Հանգանակին ծագման, հեղինակին եւ ժամանակին վրայ: Վիեննա* 1891, 8°, *էջ* 49:

*Իբրեւ մաս «Ս. Պատարագամատոյցի» ուսումնասիրութեան ձեռնարկուած, այս ընդարձակուած եւ ճոխացուած իբրեւ առանձին գործ աւարտած է* 1870, *Փետրուարին ի Հռոմ: Իր մահէն իբր* 10 *տարի յետոյ միայն լոյս տեսած է:*

*Հեղինակին նպատակն է քննել Հանգանակին ծագումն եւ յընթացս դարերու կրած կերպարանաւորումը, այս առթիւ նաեւ նոյն սեռի պատկանող Հանգանակները առնուած են նկատի: Զուտ բանասիրական աշխատութիւն մըն է, հիւսուած պատմական տեսութեամբ: Թէեւ հայեացքներ, որոնք ժամանակ առ ժամանակ, նաեւ նորագոյն դարուն, յայտնուած են Հանգանակին շուրջը, կը քննադատուին տեղիս տեղիս եւ կը հերքուին:*

*Այս աշխատութիւնը հեղինակին կողմէն նաեւ լատին լեզուով խմբագրուած է. որ լոյս տեսաւ նոյն տարին. խորագիրն է.*

De Fidei Symbolo quo Armenii utuntur observationes. Viennae 1893, 8°, IV, 52:

17. ՍՐԲԱԶԱՆ ՊԱՏԱՐԱԳԱՄԱՏՈՅՑՔ ՀԱՅՈՑ. թարգմանութիւնք Պատարագաց Յունաց, Ասորւոց եւ Լատինացւոց. հանդերձ քննութեամբք, նախագիտելեօք եւ ծանօթութեամբք ի Հ. Յովսեփայ Վ. Կաթըրճեան: Հրատարակեալ հանդերձ Յաւելուածովք ի Հ. Յակոբոսէ Վ. Տաշեան: *Վիեննա* 1897, 8° *մեծ*, *էջք ԻԱ* + 782:

[ՔՆՆԱԿԱՆ ՀՐԱՏԱՐԱԿՈՒԹԻՒՆ ՄԱՏԵՆԱԳՐՈՒԹԵԱՆ ԵՒ ԹԱՐԳՄԱՆՈՒԹԵԱՆ ՆԱԽՆԵԱՑ ՀԱՅՈՑ. ՀԱՏՈՐ Ա:]

*Կաթըրճեանի Գլուխ-գործոց աշխատութիւնն է այս, որուն վրայ աշխատած է* 1864—1881 *տարիներուն, վերջին երեք տարիներուն որչափ ներած են իր հիւանդութեան ժամերը: Իր փափագը, որ յառաջ հրատարակուած տեսնել այս կարեւոր աշխատանքը, գոհացնելու համար աջակցած էր իրեն* 1878—1881 *տարիներուն Հ. Բ. Սպեննեան, որ առ սնարս հեղինակին մահճաց նստած, անոր թելադրութեամբք ջանք տարած էր դասաւորել ձեռագիրը եւ նոր խմբագրութեան ենթարկել: Նաեւ հեղինակին մահէն ետքը չարունակեց Սպեննեան վերջին կերպարանքը տալ գործին. բայց եւ այնպէս մնաց անտիպ, մինչեւ որ ուրիշ միաբանակից մը եւ հմուտ բանասէր մը Հ. Յ. Տաշեան ձեռք առաւ զայն եւ նոր լրացում-*

*ներով եւ յաւելուածներով ի լոյս հանեց սքանչելի կատարելութեամբ:*

*Բանասէրը, պատմաբանն եւ աստուածաբանը խօսք կ՚առնեն հոս Գաթըրճեանի գրչին տակ: Անտիպ բնագիրներ ի լոյս կը բերուին եւ կը լուսաբանուին, ծիսական եւ աստուածաբանական հարցեր կը գտնեն մեկնութիւն, լեզուաբանական շատ խնդիրներ կը լուծուին եւ պատմական եւ մատենագրական կնճիռներ կը հարթուին:*

*Միայն այս աշխատութիւնը բաւական էր հռչակելու հեղինակին անչափ հմտութեան համբաւը:*

*Մտադիր էր հեղինակը կարգ մը հայ բնագիրներ, որոնք առաջին անգամ հո՛ս երեւան կու գային, նաեւ ոչ-հայ շրջանակներուն ծանօթացնել լատիներէն թարգմանութեամբ: Բայց իր հիւանդութիւնը թոյլ չէր տուած իրականացնել այս ծրագիրը:*

18. ՔԱՂՈՒԱԾՈՅՔ Ի ԹԱՐԳՄԱՆՈՒԹԵԱՆՑ ՆԱԽՆԵԱՑ ՀԱՆԴԵՐՁ ՅՈՅՆ ԲՆԱԳՐԱՒ. *ի Վիեննա* 1849, 12°, *էջ Ժ* + 496:

*Որպէս զի գիտութիւն ընծայուի հայ բանասէրներուն յունարէնէ թարգմանուած բնագիրները համեմատել սկզբնագիրներուն հետ՝ ըմբռնելու թէ ի՞նչ արուեստով թարգմանուած են անոնք եւ թէ ի՞նչ իմաստ ունին բառերը թարգմանութեանց մէջ, արդէն 1845ին ծրագրած էին Հ. Յ. Գաթըրճեան եւ Հ. Ք. Սպենեան հրատարակել Քաղուածոյք մը դասական մատենագրութենէն. Հայերէն*

*եւ յունարէն բնագիրներով ։ Ի սկզբան մտադրութիւն կար կցել բնագիրներուն նաեւ ծանօթութիւններ ընթերցողի ուշադրութիւնը հրաւիրելու համար նորիմաստ բառերու եւ նաեւ թարգմանութեան արուեստին վրայ ։ Կը յանձնուին տպագրութեան առաջին փորձերը․ բայց կ՚ընդհատի՝ Սպենեանի առաքելութեամբ Զմիւռնիա մեկնելուն պատճառաւ ։ 1846, Նոյեմբ․ 19 թղթով յորդոր կը կարդայ Սպենեան, որ յանձն առնէ Գաթըրճեան անձամբ ի գլուխ հանել ծրագրուած աշխատութիւնը ։*

*Հրատարակուած են այս տեղ Յովհ․ Ոսկեբերանի Մատթէի Մեկնութեան Ա․ Ը․ ԺԳ․ ԺԵ․ ԺԹ․ Սեբերիանոսի Է․ ճառերն եւ բազմաթիւ հատուածներ Եւսեբեայ Քրոնիկոնէն, հայերէն եւ յունարէն ։ «Ազդարարութիւն» մը գործին սկիզբը վեր կը հանէ դասական մատենագրութեան լեզուի բարձրութիւնն եւ կատարելութիւնը եւ կը մատնանշէ մատենագիրներու լեզուի յատկանշականները ։*

19․ Սեբէոս եպիսկոպոս պատմագիր ։ *Եւրոպա* 1852, *թ*․ 21, *էջ* 82—83, *թ*․ 26, *էջ* 102—103, *թ*․ 31, *էջ* 123 ։ *Եւ* Նորագիւտ հայերէն մատեան մը [*Սեբէոսի ի Հերակլ*]․ *Մասիս*, 1852, *թ*․ 13 ։

20․ Ueber Petermanns Ausgabe der Ignatianischen Briefe, von P․ Joseph Katergi *ի թերթին* Zeitschrift für die gesamte katholische

Theologie, IV· Bd· (1852, Wien), էջ 315—320:

Jul· Petermannի *հրատարակութիւնն* S· Ignatii Patris Apostolici quae feruntur epistolae una cum eiusdem martyrio· Collatis edd· graecis versionibusque syriaca, armeniaca, latinis denuo recensuit notasque criticas adiecti J· H· P· Lipsiae 1849, *առիթ տուած է գրելու յօդուածս, ուր նկատի կ'առնէ յատկապէս հայերէն թարգմանութեան ժամանակը, եւ լեզուի ոչ-դասական նկարագրէն կը հետեւցնէ թէ թղթերուս թարգմանութիւնը չի կրնար Ե· դարուն կատարուած ըլլալ· «Գիտուն ուսուցչապետը կը համարի թէ հայերէն թարգմանութիւնս առանց տարակուսի Ե· դարուն կատարուած է:* Բայց հայ բանասէրները, որոնք իբր 10 տարիէ ի վեր սկսած են ճանչնալ իրենց լեզուի ոսկեդարու՝ այս ինքն Ե· դարու հայերէնի առանձնայատկութիւնները ամենաստոյգ նշաններով, չեն կրնար այս կէտին մէջ համակարծիք ըլլալ իրեն· *վասն զի այս թարգմանութիւնը թէեւ բովանդակութեան պատշաճ՝ սահուն հայկաբանութիւն մ'ունի, բայց կը պակսին անոր այն ռեպհական յատկանիշները, որոնք կարող ըլլային Ե· դար բարձրացնել զայն»: Այսպէս դասական հայերէնի գիտը սքանչելի կերպով կ'օգտագործէ Գաթըրճեան արդէն 1849ին, նաեւ ի լոյս Եւրոպացի գիտուններու՝ լուծելու բանասիրական հարցեր: Իսկ*

*ուրիշներ զբաղած էին այն ատենները քննադատելու, խծբծելու գիտին արժէքն, անտեսելով անոր բանասիրական մեծ նշանակութիւնը :*

21. Ի գրուածոց Հ. Յ. Վ.ի Գ. հատուկոտորք: *Հինգերորդ դարու չորս հայ պատմագրութեանց ժամանակները (Կորիւն, Մ. Խորենացի, Եղիշէ, Ղ. Փարպեցի)* : *Հանդ. Ամս.*, 1887, *էջ* 9—12:

— *Ագաթանգեղոս* : *Հանդ. Ամս.*, 1889, *էջ* 24—25:

— *Փ. Բիւզանդացի* : *Հանդ. Ամս.*, 1889, *էջ* 40—43:

— *Մաշտոցեան լեզուն*. 1913, *էջ* 719—723:

22. ՀԻՄՆԱԿԱՆ ՏԱՐԲԵՐՈՒԹԻՒՆ ԿԱԹՈՂԻԿԷ ԵՒ ԷՋՄԻԱԾՆԱԿԱՆ ԴԱՒԱՆՈՒԹԵԱՆՑ : Գրեց Հ.Յ.Գ.: *Կ. Պոլիս* 1864, 8°, *էջ ԻԷ* + 520:

*Լոյս տեսած է* 1865 *Մարտին* : *«Աս ձեռնարկութեամբ յայտնի վտանգի մէջ ենք շատերուն անհաճոյ ըլլալու, բայց իրաւամբք՝ եւ ոչ մէկու... համոզուած ենք թէ որչափ անկեղծ ըլլանք եւ սեթեւեթելով Աստուծոյ խօսքը մարդկան առջեւ չնենգենք (Բ. Կորնթ., Դ.* 2), *այնչափ աւելի օգտակար ծառայութիւն ըրած կ՚ըլլանք թէ՛ ճշմարտութեան եւ թէ՛ սիրոյ»* (*էջ ԺԲ—ԺԳ*) :

*Այս սկզբունքով եւ այս համոզմամբ կը ձեռնարկէ Հ. Գաթըրճեան ուսումնասիրել*

Հայաստանեայց Եկեղեցւոյ եւ Կաթողիկէ
Եկեղեցւոյ դաւանութիւններու մէջ նկա-
տուած հիմնական տարբերութիւնները, հեր-
քելու համար այն անճիշդ ըմբռնումը, որ կը
տիրէր ժամանակին՝ երկու եկեղեցիներու դա-
ւանաբանական կէտերու նոյնութեան մասին։
Հիմնուած հրապարակի վրայ շրջող «Քրիս-
տոնէական վարդապետութիւն» կոչուած
կրօնի դասագիրքերու վրայ, կը հանէ երե-
ւան հիմնական կէտեր, որոնք իրենց բառա-
կան առումովը կարող են կաթողիկէ վար-
դապետութենէն խոտորող տեսակէտներ
նկատուիլ։ Անշուշտ աւելի քան ուրիշ մը՝
ի՛նքը հեղինակն ուրախ պիտի ըլլար, եթէ
այս հիմնական կէտերը գոյութիւն չունե-
նային եւ եթէ ունէին՝ բարձուէին։ Որով-
հետեւ ինքն էր որ առաջին անգամ ազատա-
դէմ եւ անպատրուակ հրապարակի վրայ
դրաւ ինչ որ ըստ գոյացութեան ցայն վայր
կար հրապարակի վրայ, ժամանակը անակն-
կալի առջեւ զգաց ինք զինքը եւ այլայլեցաւ։
Գաթըրճեան որ վարդապետն էր Կաթողիկէ
վարդապետութեան եւ ջատագովը անոր տե-
սակէտներուն, արտայայտուած էր անաչառ
եւ համարձակ, նա՛եւ բանասիրական մանրա-
զնին քննութեամբ, որուն թերեւս պէտքը
չկար գոնէ ինչ ինչ կէտերու մէջ։

Ամբողջին մէջ կը փայլին հեղինակին
աստուածաբանական իրաց խոր հմտութիւնը

*եւ ազգային մատենագրութեան նուրբ ծանօթութիւնը :*

23. ԻՐԱՒԱԽՈՀԻ ԿԵՂԾԻՔ ԵՒ ԻՐԱՑ ՃՇՄԱՐՏՈՒԹԻՒՆՔ Ի ԲԱՆԻ ՎԱՐԴԱՊԵՏՈՒԹԵԱՆ ԵՒ ՊԱՏՄՈՒԹԵԱՆ : Գրեց Հ. Յ. Գաթըրճեան : *Վիեննա* 1873, 8°, *էջ* 164 :

*Եթէ ժամանակն այնպէս երեւցուցած է, թէ անհրաժեշտ է ցրել ջրել Զամուրճեանի «Իրաւախոհին» տարտամ խոհերը, բայց հետեւորդ ժամանակը ապացուցուց թէ զուր ժամավաճառութիւն էր անոնցմով զբաղիլը։ Գաթըրճեան ընդարձակ ծրագրով պատրաստուած էր պատասխանել, ինչպէս Ա. տետրակէս կը տեսնուի, որ նախաշաւիղ մըն է լոկ :*

*Յանձնած էր Բ. տետրակն ալ տպարան, եւ սկսած էր տպագրուիլ : Բայց յընթացս տպագրութեան հեղինակի կողմէն նոր յաւելուածներն եւ յապաւումները յառաջ բերին Տպարանի վարչութեան եւ հեղինակի մէջ անհամաձայնութիւններ — Գաթըրճեան այս միջոցին կը գտնուէր Հռոմ — որոնք պատճառ եղան տպագրութեան ընդհատութեան* (13 *Յունուար* 1874) :

*Հետաքրքրական էր Բ. տետրակիս երկրորդ մասը ; ուր հեղինակը յեցած յատկապէս Թղթոց գրքի նորագիւտ — այն ժամանակ անտիպ — վաւերագիրներու վրայ, կը լուսաբանէր հայ Եկեղեցական պատմութեան մէկ կարեւոր շրջանի, Զ.—Ը. դարե-*

*րու գէպքերը։ Այս մասերը կը գտնուին այժմ հեղինակին անտիպ գործերուն մէջ։*

24. ՄԱՍԻՍ ԼՐԱԳՐՈՅՆ ԱՍ ՏԱՐԻԱՆ 114 ԹՈՒՈՅՆ ՄԷՋ ՀՐԱՏԱՐԱԿՈՒԱԾ ՀԱՏՈՒԱԾԻՆ ՎՐԱՅ ՔԱՆԻ ՄԸ ԽՕՍՔ։ *Վիեննա* 1854, 8°, *էջ* 12։ [*Անանուն հրատարակուած*։]

*«Որչափ վէճեր սիրած չենք, որչափ վէճեր սիրելու չըլլանք, դիւրաւ չենք կրնար հրաժարել ան ատիթներէն ալ, որոնցմով հրաւիրուած ենք՝ ամէն կողմանէ քուէները նետուելէն ետեւ, գրեթէ երկու խօսք ալ մեր կողմանէ հանդանակելու»․ այս խօսքերով կ՚իջնայ ասպարէզ Գաթըրճեան հերքելու Մասիս լրագրոյն անճիշդ, միանգամայն անպատշաճ ձեւով արտայայտած տեսութիւնները, նկատմամբ Պիոս Թ.ի Հայոց հանդէպ ընթացքին։ Կուռ են Գաթըրճեանի մտքերը, ուժեղ՝ ճշմարտութիւնը, պայծառ արտայայտութիւնները, որոնք սլաքներ կ՚արձակեն հակառակորդին, բայց առանց վէրք պատճառել ուզելու։*

25. ԲԱՆ ԴԱՄԲԱՆԱԿԱՆ Ի ՄԱՀ ՊԵՏՐՈՍ ԷՖԷՆՏԻ ԵԱՂԼԸԳՃԵԱՆ ԽՕՍԵՑԵԱԼ Ի ՊԵՐԱ Կ. ՊՈԼՍՈՅ ՅԵԿԵՂԵՑԻՈՋ Ս. ԵՐՐՈՐԴՈՒԹԵԱՆ 330 ՄԱՐՏԻ։ *Վիեննա* 1875, 8°, *էջ* 15։

26. ԿԱՆՈՆԱԳԻՐՔ ՀԱՅՈՑ։
ՎԿԱՅԱԲԱՆՈՒԹԵԱՆՑ ՄԱՏԵԱՆ ՀԱՅՈՑ ԵԿԵՂԵՑԻՈՑ։
ՄԱՇՏՈՑ։
ՏՕՆԱՑՈՅՑ։

Ինչպէս Սրբազան Պատարագամատոյցներու, նոյնպէս Եկեղեցական միւս մատեաններու քննական հրատարակութիւնը գաղափարականն էր հայ մեծ բանասէրիս։ Շատ տաղձ հաւաքած էր Գաթըրճեան այս նպատակաւ։ Դժբախտաբար 1853—1877 տարիներուն իր բազմազբաղութիւնը դպրոցական, գործակալական եւ եկեղեցական-պատրիարքական գործերու մէջ չշնորհեցին իրեն ազատ ժամեր ի գլուխ հանելու այս ծրագրուած աշխատութիւնները։

Երկարագոյն ժամանակով զբաղուցած է զինքը մանաւանդ Կանոնագրքի քննութիւնը։ Կազմած էր արդէն Ներածութիւնը, դասաւորած էր նիւթերը եւ կը խորհէր սկսիլ հրատարակութիւնն մաս առ մաս՝ հանդերձ լատիներէն թարգմանութեամբ։ 1868ին կ՚առաջարկէր H. Petermann հայերէնագէտին յանձն առնել լատիներէն թարգմանութիւնը։ Բայց մնաց այն իր նախնական խմբագրութեան մէջ անաւարտ։

Այս գործը, որ Սրբազան Պատարագամատոյցքին կից իր նշանաւորագոյն աշխատութիւնն պիտի ըլլար, յուսանք թէ նման Ս. Պատարագամատոյցի պիտի տեսնէ օր մը քաղցր լոյսը եւ պիտի կանգնուի այսպէս բա-

նուաէր հեղինակին չիրմին վրայ նոր մահար-ձան մ'ալ, պատմող անոր բարձր Անուան:

## Հ. Յ. ԳԱԹԸՐՃԵԱՆ — ԲԱՆԱՍՏԵՂԾ

Զարմանալի՞ պիտի երեւամ, եթէ բա-նասէրի մէջ փնտռեմ բանաստեղծ մը: Գա-թըրճեան չէ պարծեցած երբեք իր բանա-ստեղծական հանճարով: Բայց պահանջած են առիթները բանասէրի գրչէն ալ տաղեր. եւ չէ խուսած Գաթըրճեան եղբարց իղձերու թարգմանն ըլլալ:

Մխիթարեան Տպարանի մէջ կը պա-տահիմ տաղի մը, որ Գաթըրճեանի ստորա-գրութիւնը կը կրէ: 1840 Նոյեմբեր 15ին իր չորս ուսումնակից ընկերները՝ Հ. Անանիա, Հ. Տիմոթէոս, Հ. Մատաթիա եւ Հ. Ղեւոնդ քահանայական ձեռնադրութիւնը կ'ընդու-նին: Այս ուրախական օրուան առթիւ կը ձօնէ նորընծայից իղձերու փունջ մը, ուր եթէ ոչ բանաստեղծական աւիւնով, բայց գոնէ վառ իղձերու ոսկեղէն ճառագայթնե-րու տակ կը հասունցնէ ծաղիկ երախտապար-տութիւնը պտուղներ, որոնք համեղ են նաեւ դար մը ետքը:

Ինձ թոյլ պիտի տամ ամբողջութեամբ ներկայացնել հոս սիրոյ նուագս, որ կարող է նաեւ նմոյշ մը ծառայել դասական հայերէ-նով առաջին թոթովանքներու, ոտանաւոր չափով: Գաթըրճեան տակաւին Կղերանոցի մէջ էր:

## ՆՈՒԱԳ

*Ահա ըմբիշ նահատակք,*
*Ոչ թաթաւեալ յիւղ խառնակ·*
*Ոչ պարկ առեալ ըստ անձին*
*Եւ ի մարտիկսըն անցին։*

*Այլ պընդակազմ վառեալ յոյժ*
*Օծեալ ըզձեռս յիւղ անոյշ,*
*Եւ գիրկ ընդ գիրկ խառնեալ աստ*
*Արկին ըզդեւսըն տապաստ։*

*Այժըմ գիւաց ձայն դուժկ,*
*Ի Հայաստան ի կուսէ,*
*Իբրեւ բարբառ ինչ փողոց*
*Ընդ հրապարակս ընդ փողոց։*

*Վասն էր են որդքն այն եւ ցաւ*
*Մի՛թէ մեհեան հարթեցաւ,*
*Եւ կամ յԵրեզն աւանի,*
*Երամ քըրմացըն վանի։*

*Այո՛ աւեն, զի չորք քաջք*
*Գան ի մօտոյ ընդ առաջ*
*Ձիք սուր ի ձեռս նոցայ*
*Խոցել ըզքուրմս յանխընայ։*

*Բայց Աստուծոյ բանըն սուրբ*
*Սուսեր զլեզուս արար հուրբ,*
*Ըզքահանայս մեր խոցել*
*Ցերկիր տապալ կործանել։*

*Ձայն ամոլոցն ինձ լըսի,*
*Հեծեն ի լուծն Ցիսուսի,*
*Եւ լան ըզհասկս ազազուն*
*Եւ զարտորայն Արտազուն։*

*Զի եւ արեամբ թացեալ դաշտ*
*Այժմ անջրդի եւ երաշտ*
*Զիք ինչ ի կալըս նորայ*
*Ոչ արմըտիք ոչ որայ:*

*Բայց հան ուէր զամբ պատզամայ*
*Հոսել զանձրեւըն կամայ*
*Արդ ցօղեցին ջուր մեղ ամըք*
*Եւ զընդըշէն մարդք ծաղկամըք:*

*Այսուհետեւ ոչ պատուէր*
*Ամպոց իւրոց տայէ ուէր,*
*Թէ մի զակօսըն կանուխ*
*Լըցցէ յամպոց ջուրցըն ուխ:*

*Բազմականաց աչք ամէն,*
*Ի քո երեսըդ դիմեն,*
*Ցորժամ ժըպտեալ հայիս Հայր,*
*Ընդ թիւ որդւոց եւ համար:*

*Ոչ այնպէս ինչ արադ հաւ,*
*Թեւովք թըռչունըս ծընաւ*
*Որպէս բազկօք զըրգեալ զուն*
*Ծնանիս զողիսըն թըռչուն:*

*Ցըսպխտակեալ արտորայն,*
*Ի հունձս հասեալ է որայն.*
*Եւ ի յալիսն ի սպիտակ*
*Ըզգաստութեանցըն վտատակ:*

1840 Նոյ. 15:

ԵՂ. ՅՈՎՍԷՓ ԳԱԹԸՐՃԵԱՆ

*Նուագս գեղազարդուած էր գեղեցիկ շրջանակով մը՝ գործ Վիչէն Այորնեանի ճարտար վրձինին:*

Այս տեղ կը բաժնուիմ Հ. Յովսէփ Գաթըրճեանէն, յուսով թէ չուտով պիտի ունենամ առիթ վերադառնալու իրեն եւ նկատելու իր ողին իր մնողակից ընկերներու եւ ձեռնասուն աշակերտներու մէջ, որոնք իր մեծ գիւտին՝ դասական հայերէնին հետեւողներն եղան:

## Է.

## ՎԻԵՆՆԱՅԻ ՄԽԻԹԱՐԵԱՆ ԴՊՐՈՑԸ
## 1840—1854

## Հ. Ց. ԳԱԹԸՐՃԵԱՆԻ ՈՒՍՈՒՄՆԱԿԻՑՆԵՐԸ

*Կարելի չէ խօսիլ Հ. Ց. Գաթըրճեանի վրայ եւ ըմբռնել անոր կատարած գործը, առանց մօտէն ծանօթանալու անոր սննդակից եւ ուսումնակից ընկերներու հետ, որոնք անոր գործակիցներն եղան «բանասիրութեան պատմութեան մէջ դարագլուխ մը շինող գիւտին»՝ ոսկեդարեան Հայերէնի յայտնութեան աշխատանքներու մէջ:*

*Անոնք կազմեցին այս* Բանասիրաց ժողովը, *որուն հոգութեան յանձնուեցաւ գիւտին անդրագոյն ուսումնասիրութիւնը, գործնականին մերձեցումն եւ տարածումը:*

*Այս ուսումնակիցներուն տրնթեր արժանի են յիշատակութեան նաեւ անոնց առաջին աշակերտները, որոնք մեծ ուսուցիչներու դաստիարակութեան տակ զարգացան դասական Հայերէնի ուսման մէջ, եւ մնալով հաւատարիմ գծուած յատակագծին՝ բարձրագոյն կատարելութեան հասցուցին ոսկեղինիկ բարբառը:*

*Գաթըրճեանի թէ՛ գործակիցներն եւ թէ՛ աշակերտները, այնու որ եղան մատենագիրներ դասական Հայերէնի, հաւատարիմ նմա-*

նողութեամբ ունեցէն դարու վարպետնե-
րուն, հանդիսացան հոյակապ եւ քաջանուն
իրենց ե՛ւ մեծ ե՛ւ փոքր ստեղծագործու-
թիւններուն մէջ:

---

## Հ. ՄԱՏԱԹԻԱ ԳԱՐԱԳԱՇԵԱՆ

Գաթըրճեանի երկրորդ ընկերն էր եւ
դասով մը բարձր՝ Անտոն Պէրպէրեան
(1840էն սկսեալ անուանուած Հ. Մատաթիա
Գարագաշեան). ծնած է 1818 Փետրուար 11ին
Կ. Պոլիս: Հայրը՝ Գրիգոր († 1846) իր
բազմանդամ գերդաստանէն երեք զաւակ
նուիրած էր Մխիթարնութեանս. երկրորդն
եղբայրներէն էր Անտոն, որ 1832 Օգոստոս
22ին կը հասնի Վիեննա եւ յառաջադէմ կը
գտնուի ուսումներու, մանաւորապէս
մայրենի լեզուին մէջ: 1836, Դեկտ. 8ին
կ՚անդամագրուի Մխիթարնութեանս եւ 1840
Նոյեմբեր 1ին կ՚ընդունի քահանայական ձեռ-
նադրութիւնը:

Ի բնէ տաքարիւն եւ հանճարեղ՝ աւելի
բանաստեղծական քան բանախրական բե-
րում կը յայտնէ իր մէջ: Տակաւին 16ամեայ
կ՚երգէ նա արդէն ուժնոտ տաղեր, ժԹ. դա-
րու ընկալեալ գրաբարով, խանդավառուած
դարուն հռչակուած բանաստեղծներու շուն-
չով:

Թէպէտ երեւակայոտ, աշխոյժ եւ աշխա-

տուէր էր Գարագաշեան, բայց կը պակսէր իրեն ծննդական միտքը, եւ բանաստէրի տրամադրութիւնը: Անոր հակապատկերն էր Գաթըրճեանի նկարագիրը, որ լրջութիւնը կը յարգէր եւ կ'ընթանար յամրաքայլ բայց շրջահայեաց: Սակայն եւ այնպէս դպրոցական սեղանի առջեւ սիրեցին զիրար երկու համշիրակներս. Գաթըրճեան իւր ծննդական մտքով եւ բանաստէրի տրամադրութեամբ, Գարագաշեան իր խանդավառ բնաւորութեամբ եւ ջանասիրութեամբ կազմեցին մէկ ամբողջութիւն. կնքեցին անոնք գաղափարակցութեան դաշն, եւ եղան ինչպէս Դաւիթ եւ Յովնաթան:

Մինչ Գարագաշեան 1835ին արդէն տիրացած մայրենի լեզուին, սկսած էր հիւսել երգեր, Գաթըրճեան նոր սկիզբ ըրած էր ծանօթանալ հին լեզուի տարրներուն: Բանասէրը շուտով խօսեցաւ իր մէջ. զգաց թէ դարերը ունին իրենց սեպհական բարբառները. ունեցած է հայերէնը իր զարգացման վերելքն ու վայրէջքը. եւ որովհետեւ գրաբարը մեռած լեզուներու թուին մէջ է, հարկ է նմանութեան օրինակ այն դարն ընտրել ուր լեզուն իւր վերելքի բարձրագոյն գագաթնակէտին վրայ կը գտնուի: Անոր անդրադարձութիւնները կը խանդավառեն Գարագաշեանը. ի միասին կը խորասուզուին լեզուի ուսումնասիրութեան մէջ եւ կը յայտնեն հայ

*լեզուի ոսկեդարը: Այս գլուխի մասին խօսե-ցայ արդէն ընդարձակ:*

*Գարագաշեան կը ստիպուի փոխել իր բարբառը: Ցընթացս երեք տարիներու նա կը տիրանայ դասական հայերէնի:*

*Սկսեալ դպրոցական շրջանէն մինչեւ* 1848 *Գարագաշեան Մխիթարեանութեան բերանն է, յայտնելու եղբարց խղճերը պատեհ առիթ-ներուն քաջարուեստ տաղաչափութեամբ: Բոսուէի Թարգմանութիւնը հրապարակ ել-լելէ ետքը կը գտնենք զինքը պատրաստ Ռա-սինի Կրօնքի երգը հայացնելու. ունի իր ձեռքին տակ նաեւ Վիրգիլիոսի Մշակա-կանքը, զոր նոյնպէս տաղաչափութեամբ կ՚աշխատի վերածել հայերէնի: Այս շրջանին կը հրատարակէ* Ճարտասանութիւնը *եւ* Ուս-մանց նկարագիրը: *Իբրեւ անդամ* Բանասի-րաց ժողովին *կը յանձնուի իրեն դասական հայերէնի վերածել Հ. Մաղաքիա Սամուէ-լեանի* Ուսումն Փիլիսոփայութեան *աշխա-տութիւնը: Նա զբաղած էր նաեւ Մատենա-դարանապետութեամբ եւ Կղերանոցի մէջ դասաւանդութեամբ:*

1848 *Յունիսին իբրեւ ուղեկից Գեր. Ա. Ազարեանի կ՚երթայ Տրիեստ, ուսկից քիչ ետքը (Օգոստ.* 15*ին) կը մեկնի Զմիւռնիա, գործելու հոն Մխիթարեան Վարժարանին մէջ: Յաջորդ տարին Յուլիս* 27*ին կը կոխէ հայրենի հողը՝ Կ. Պոլիս, ուր կը սպասէին իրեն անձկանօք Մայրն եւ եղբայրները:*

Դժբախտ արկած մը դրած էր իր վրայ պարտք անձամբ մխիթարութիւն ջամբելու ծնողաց: Նոյն տարւոյն, Յուլիս 6ին Դանուբի մէջ ջրահեղձ եղած էր ի Վիեննա իր հարազատն Եղ. Գրիգորիս:

Դեռ նոր էր բոլորած Գարագաշեան երիտասարդութեան 30ամեայ տարիքը: Անփորձ էր: Տէր տաքարիւն բնաւորութեան, վառուած ազգասիրութեամբ, սնած դասական հեղինակներու շունչով, կը փնտռէր Կ. Պոլիս գաղափարական աշխարհ, գործունէութեան վարուն ասպարէզ· բայց մայրաքաղաքը չէր ընծայեր իրեն այն երազած աշխարհը: Հայ կեանքը, մանաւորապէս հայ Կաթողիկէ Եկեղեցին շատ շփոթ պայմաններու մէջ էր: Մխիթարեան Վարժարանը, որ զոհ գացած էր հրդեհի, չէր կազմակերպուած ի նորոյ, թէեւ բարձրացած էր ի Բերա նորակառոյց շէնքը: Յուսախաբութիւնը չարաչար ազդեց երիտասարդ, խանդավառ Գարագաշեանի վրայ: Իր թղթակցութիւններն այս շրջանէն համակ եռանդ, անզուսպ մղում գործելու դպրոցական ասպարէզի վրայ, հրապարակի վրայ, դաստիարակութեամբ եւ քարոզչութեամբ, երեւան կը բերեն: Ոստումներ սիրող եռանդը չունեցաւ համբերութիւնը ժամանակի ընթացքով հասնելու իր ձգտումներուն:

Յուսահատ իր ճանապարհին վրայ զգաց կամաց կամաց թոյլ իր ոտքերուն տակ կրօ-

նական եւ կրօնաւորական հողը. եւ ահա երբեմնի եռանդուն վանականը, Մխիթարեան անուան վրէժխնդիր Գարագաշեանը, նա որ բուռն թափով կը բողոքէր վանական եւ կրօնական կարգերու յամրաքայլ կամ յետախաղաց ընթացքին դէմ, կը դեդեւի իր սկըզբունքներուն մէջ, կը մատնուի անտարբերութեան եւ ապաստան կը փնտռէ բողոքականներու քով: Զուր տեղ փորձեց Միաբանութիւնն յետս կասեցնել անդրադարձն սայթաքումներէ իր միաբանն, ընդ վայր աշխատեցան անոր սննդակից ընկերները շահիլ մոլորեալը: 1855 Օգոստոս 30ին յայտարարուեցաւ Գարագաշեանի, թէ կը դադրի Մխիթարեան Միաբանութեան անդամակցութենէ:

Թէ այս շրջանին արդէն պատրաստած ըլլայ իր միտքը Բիւխներեան նիւթապաշտ փիլիսոփայութեամբ, թոյլ չեն տար հաստատել իր նամակները:

Այնուհետեւ դեռ կէս դար ապրեցաւ Գարագաշեան († 1903) անձնատուր դպրոցական եւ հրապարակագրական գործունէութեան, նաեւ գրական աշխատանքներու: Իր բազմաթիւ դպրոցական-դաստիարակական աշխատութիւններն իբրեւ Դասագիրքեր տեսան շատ հրատարակութիւններ: Բայց իբրեւ լուրջ աշխատութիւն երեւելի եղաւ միայն Քննական Պատմութիւնն Հայոց, Ա.—Դ. մասերով, որ լոյս տեսաւ ամբողջութեամբ 1895 թուին: Դասական հայերէնի իր անչափ

համառօտութիւնը մնաց երկար ժամանակ ծածկուած յանթեղի: 1886—1888 տարիներուն, երբ միանգամ լեզու տուաւ ան իր գրչին տակ «Ճաշակ ոսկեղէն դպրութեան» ամսօրեայ հանդէսին մէջ, շատ այլազգ կը լուծէին արդէն հնչիւնները: Առանձին յիշատակութեան արժանի է հոս նաեւ իր աշխատութեամբ լոյս տեսած «Աստուածաշունչ մատեանն Հին եւ Նոր Կտակարանաց, ըստ ճշգրիտ թարգմանութեանց նախնեաց մերոց, համեմատութեամբ եբրայականն եւ յունականն բնագրաց. Կ. Պոլիս 1892—1895: Մեծ պատիւ չբերաւ իր անուան իր տարապայման եռանդը, որով ջատագով կը հանդիսանար գրաբար լեզուի, իբրեւ գրական լեզու անոր շահելու նախապատուութիւնը աշխարհաբարի ի վնաս: Իր գրաբարախառն աշխարհաբարը շատ քիչ հետեւորդներ ունեցաւ ժամանակին:

Բարձր տարիքի մէջ, գրեթէ 85ամեայ, կնքեց Գարագաշեան իր կեանքը († 17 Դեկտ. 1903, Կ. Պոլիս), հաշտուած Ս. Եկեղեցւոյ հետ: Քահանայաթաղի տխուր հանդէսը խմբեց իր շուրջը մարդկան բազմութիւնը տալու վերջին յարգանքը մեծ հայկաբանին: Եւ արդեամբք ալ Գարագաշեանի համբաւը կը հանգչէր իր 1840—1848 տարիներու գործունէութեան մէջ: Հոս եւ ոչ Ճաշակի մէջ պէտք է փնտռել քաջ հայկաբանը, քաղցրախօս լեզուն եւ զարդասէր մատենագիրը:

Իր գործերն են.

1· Բոսուետայ խօսք վասն Տիեզերական Պատմութեան· *Դպրութիւն Ա.* (1841) ։ *Տե՛ս վերադոյն*, *էջ* 215 ։

2· Դ· ՀՌԱԿԻՆԵԱՅ ԵՐԳ·Ք ՎԱՍՆ ԿՐՕՆԻՑ· զոր թարգմանեալ է Հ· Մատաթիայ Գարագաշ յաշակերտաց Մեծի հօրն Մխիթարայ եւ ծախիւք ազնուական Տեառն Անտոնի Ռոմաշկան դրոշմեալ ։ *Ի Վիեննա* 1842, 12°, *էջք Զ* + 496։

*Ոչ լոկ թարգմանիչ, այլ իբրեւ յարատեւ մը Ռասինի տողերուն հրապարակ եկած է հոս Գարագաշեան։ Ուզելով հայացնել գաղղիացի բանաստեղծին մտքերը նոյն յանգերով եւ դասական հայերէնով, զտնուած է անհրաժեշտ հարկի մէջ լայնել խօսքերը, չեղիլ բառական թարգմանութենէն, ինչպէս անձամբ կը խոստովանի· «Եւ չկնիցի ինչ խափան առ ի զնոյն օգուտ շահելոյ, եթէ ուրեք ուրեք հայերէնս քան զգաղղիերէնն ընդարձակագոյն իցէ· զի զդոյն առատ մեծատուն մեծութիւն լեզուիս այնպէս պահանջէր· նա եւ իշխանութիւն է մանաւանդ որոց գերդս չափով թարգմանիցեն, մի կարի կապեալ կալ ընդ օրինակին, այլ ընդ միտսն նայել ընդ մատենագրին· զոր իշխանութիւն եւ մեզ եւս շնորհիցես, ուսումնասէր դու, յորժամ ի ձեռն առեալ ընթեռնուցուս զգեղեցիկ ճառսդ· արդարեւ զուարճանայցես, զուարթանայցես, անկանիցիս ի բարւոք կափուլն…» (Յառաջաբան)* ։

Ժամանակակիցներն եւ նորագոյնները թարգմանութեանս մէջ գաղղիերէն բնագրին ճշգրիտ անդրադարձութիւն մը փնտռեցին եւ գտան կատարեալ ազատութիւն կալէ եւ կապէ: Արդարացումը, զոր կը կանխէր թարգմանիչը խնդրել ընթերցողներէն, արժանի էր գիջող ունկնդրութեան: Երիտասարդ բանաստեղծէն եւ քաջ հայկաբանէն կրնար պահանջուիլ ուժեղ հայերէն եւ կանոնաւոր տաղաչափութիւն. ա՛յս պիտի ըլլար իր նուէրը հայ մատենագրութեան: Կար այն տեղ ամենաճոխ վերջաւանկով, հեզասահ ընթացքով, քաղցրալուր հոսանքով չափաբերութիւն, հարուստ բառամթերքով եւ օրէնքներուն համապատասխան դասական հայերէն: Ամէն պահանջքի տրուած էր լիուլի բաւականութիւն. անթերի էր յաջողութիւնը:

Ինչպէս 1843ին կանխագուշակ եղած էր Հ. Արսէն Բագրատունի, պիտի չյապաղէր Հին Դպրոցը կրկին թարգմանութեամբ տալ Ռասինը հայ ընթերցողներուն: 1844ին արդէն երեւցաւ Բազմավէպին մէջ (էջ 102) հատուած մը Ա. Երգէն «հաւատարիմ թարգմանութեամբ». իսկ ամբողջութեամբ լոյս տեսաւ 1873ին՝ Լուդովիկոսի Ռասին Երգ ի Կրօնս. թարգմանութիւն Հ. Եդուարդայ Հիւրմիւզ, Արքեպիսկոպոսի Տիրակայ ի Մխիթ. ուխտէն: Վենետիկ 1873:

Կրկին թարգմանութիւններէս ճաշակ մը պիտի տամ ընթերցողներուս, համեմատութեան դնելով հատուած մը Ա. Երգէն:

ԳԱՐԱԳԱՇԵԱՆ, էջ 40—45:

ԱՅԼ դու՝ որ զայդչափ նշանս
 իբրեւ ոչինչ համարիս,
Ցետ աննախանձ եւ առատ
 վայելելոյ ի բարիս:
Որ զարարիչըն թողեալ
 կենդանութեան եւ տարեր,
Ըղձխղուածոյն պատահար
 քեզէն Աստուած արարեր:
Այլ աղէ եկ մեկնեա ինձ
 դու ըզծիծառնըն վաստակ,
Որոյ ոչ արահք են յետոյ,
 ոչ յառաջոյ անդաստակ:
Ճարտարապետ իմաստուն՝
 որ ըզձեղուն իւր արկաւ
Նըշանակերտըն գեղով,
 պատըսպարել ընդ յարկաւ:
Զիա՛րդ նըստեալ խընամով
 ըզկըրկնակերտըն շինէ,
Բաղեալ կըրկաւ բերանով
 ի մօտաւոր իւր շինէ:
Եւ կամ զի՛արդ առ ի պէտս
 իւրոյ ազնիւ շինուածոյ,
Ծեփէ ըզկաւըն մանրեալ
 բոլորաձեւ մանուածոյ:
Ուստի՛ թըռչունս այս ուսաւ
 շինել իւր տուն դադարման,
Տըքնեալ ըզտիւ եւ զգիշեր
 առնել ծնընդոցըն դարման:
Ո՛րչափ զահոյս բեհեզեայս,
 եւ յօրինեալ անկողին
Ի մէջ ոստոց եւ ծառոց
 յետ ծնընդոցըն թողին:
Հայրըն թռուցեալ հեռանայ
 խընդրել ի դաշտըս պարէն,

*Եւ ցանկալի ամուսնոյն*
*հանել բաժին յաւարէն:*
*Վարուժանին մընալով*
*պահէ ըղրոյն իւր մարին·*
*Ջեռեալ ի թուխըս նըստի*
*մինչեւ աւուրք կատարին:*
*Ըզթըշնամեացն ասպատակ*
*մարտ եդեալ ինքըն վանէ,*
*Տըկար անձամբըն վառեալ*
*չմեկնի ուրեք ի տանէ:*
*Ձի եւ ծընունդքըն նոցա*
*որ սընդունակ ողոքին,*
*Իւրեանց որդւոցն առ յապայ*
*զայն հատուցեն եւ նոքին:*

ՀԻՒՐՄԻՒԶԵԱՆ, էջ 14—17:

*Այլ դու որ ոչ չարժիս հրաշիցդ ի դընին,*
*Ապուշ դիտօղդ էից՝ որ դքեւ բոլորին,*
*Եւ որ պաշտեալդ խօլարար ըղձիպուած,*
*Ե՛կ եւ ըղրոյնըն զայն ի յայս աղէ ա՛ծ,*
*Զոր այնպիսեաւ գործէ ծիծառն արուեստիւ,*
*Շուրջ մածուցեալ ծայրիւք կըտցին իւրոյ գկիւ,*
*Ճարտարապետ հաւատարիմ միշտ ըզնոյն*
*Անայլայլակ կալեալ ըզկարգ հաստատուն:*
*Առ ի գյանդուգնըն զայն կանգնել ըզշինուած,*
*Զի՞որդ չաղեալ նա շուրջ ըզծեփ իւր կած:*
*Ի՞րր այդոցիկ նախահօպակ հաւուց դունդ*
*Ըզգաւակացըն դուշակեն ըզծընունդ:*
*Տե՛ս քանիօ՛ն որրանք կախեալ զուղէշիւք,*
*Եւ յարդարեալ ի բամբակ բարձք ի փափուկ:*
*Թանի ի դաշտ պարենից հայրն ի խընդիր,*
*Առ ի բերել հարսինըն զայն սիրալիր·*
*Եւ դէտ նըպաստիցըն կալով մայրն ի յանդոյր,*
*Տածէ զսիրոյն իւրեանց խայրիս ի ծոց իւր·*

Յարժամ օդ քաղցր աւետեաւ,
եթէ գարուն ժամանեաց,
Ըզպարկեշտ բոյլըն վառէ
պարկեշտութեան հարսանեաց,
Իւրաքանչիւր սերտ սիրով,
կապեալ ի գութ ընկերին,
Ըստէպ նորովք բընակչօք
զարդարեն զօղըս վերին:
Առանց թըռչոց գերդաստանք,
ուր այնչափ ազգ գըտանի,
Մինչեւ ոչ հայր ճանաչել,
եւ ոչ զիւրեանց բնտանի:
Որոց յաչնան փութացեալ
ի սահմանացըս մերոց,
Վաղ ի մարմանդ տեղիս ինչ
չըւեալ երթան ի ձմերոց:
Զի ձմերական փոփոխման,
զալ յանկարծուստ ոչ թողուն,
Մեկնին մինչ չեւ թառամեալ
իցեն ծաղիկ եւ ցօղուն:
Բանգի մեծաւ խարհըրդով
գոյ ժամադիր եւ պայման,
Ուր զումարեալք յիչխանաց
զան ըստ աւուրն ընծայման:
Արդ իբրեւ այն օր լընու,
եւ ինքեանք եւըս տակաւ,
Երամովին ձագախառն
ելեալ երթան բանակաւ:
Հայեցեալ չուրջ ըզըրունովք
անդ մանկաղայնքըն կամին
Ի հարց իւրեանց ուսանել,
եթէ ի զալ մեւս ամին,
Ե՛րբ դառնայցէ այն զարուն,
յորում եւ այնչափ ժողով
Յիւրեանց կաւուածըս դարձցին
ուրախութեամբ եւ փողով:

Ի ՁԵՌԱԿԵՐՏՍ Աստուծոյ
Թուիցի՞ ինչ քեզ անկատար.
Ձեռուն կայտառ՝ որոյ տիգմն
է ընակութիւն եւ սատար,
Ըզմեզ յառեան իւր կոչէ,
իբրեւ անհաշտ թըշնամի,
Յորոց ըղնայն անարգեն
առնուլ համարըս կամի:
Զի՞ թըշնամանըս խօսիս
դու ըզփոքրիկ կայտառէ,

## ՀԻՒՐՄԻՒԶԵԱՆ

Յաճախ ի բաց ըզթըշնամեաց վարեն հեռ,
Վառի ի տկար մարմնի կորով դեր ի վեր:
Եւ այսօրէն ըննեալք զաւակըքն սիրով,
Ըզնոյն երբեմըն հատուցեն ըզգորով
Զաղուց իւրեանց, յորժամ հասեալ նոր զեփիւռ
Ի բարեբաստ ըզհիմնենեանն ի չունչ իւր
Լուցանիցէ հարաւնեկան ջահ նոցին.
Յայնժամ ի զօղ քաղցրիկ կըցորդք անմեկին,
Քաղաքացուովք լըցցեն զերկինըս նորովք.
Ազգատոհմ մեծ, կամ մանուանդ եղբարց ջոկ,
Որք ոչ ըզծնողըն ճանաչեն ինչ բընաւ,
Եւ ոչ թոռունք ըզնախածնօղ իւրեանց հաւ:
Որք ի հինից խոյս ի ձմերաց մերոց տան,
Ի քաղցրագոյն զօլ ի նահանգս ապաստան:
Ոչ զըժընդակ եղանակին երբեք սաստ
Անպատրաստիցըն ժամանէ յուլիցն աստ.
Համախըմբեալ ի ժողով պէտքըն խոհեմ,
Սահմանեն զօրն հանուրց ի չու տարադէմ.
Հասանէ օրն եւ մեկնի չուն համօրէն.
Անդ մին, թեւերս մանկաղոյն յերամէն,
Ակնարկելով անդր ի ծնընդեան ի վայր.
Ե՛րբ արդեօք դարձ, ասէ, գարունն արարեալ,
Այսօրէն ըզմեզ՝ որ գնամք այժմիկ տարագիր՝
Դարձուսցէ այսր ի հայրենին մեր երկիր:

Որ քաջ յաղթէ քեզ զարդուն,
  եւ ոչ լեզուդ պատկառէ։
Յորժամ պէսպէս անկուածով
  ծիրանեգոյն եւ դեղին,
Պայծառացեալ յորում կան
  չուրջ զարդարեն ըզտեղին։
Որչափ նոցայն յօրինիչ
  ծածկել զիւր ձեռըն ջանաց,
Նոյնչափ գործեաց առաւել
  զանձն արժանի զարմանաց։
Թէպէտ եւ փիղ մեծանդամ
  եւ յաղթ մարմնովն, անարի
Բան ըզգազանս ամենայն,
  եւ հրաշակերտ համարի։
Յորժամ ի գլուխ բանակաց
  կայցէ ընդդէմ յաղթողին,
Աշտարակօքն ի վերայ
  Թիկանց իւրոց եւ ողին։
Ո՞չ ապաքէն տեսեալ քո,
  զի խընկալից զինեզէն
Ընդահատակըն վանէ,
  զարմանայիր դու քեզէն։
Այլ ի միջատս հայեաց արդ
  յազգ մըժղըկաց եւ ըրխոայ։
Որոց զանչափ ըզպատիւն,
  ոչ ոք թերեւըս գիտաց։
Դու յայնմխի չընչենոց,
  որ ոչ արեամբ քով յագին,
Բազում անգամ ապաքէն
  նեղեալ հարեր զայրագին։
Յարդորիչ քո է, ով մարդ,
  եւ վարդապետ լուսատու,
Որ զարարչէն պատմէ քեզ
  դրոշմեալ յիւրում ճակատու։
Զի անսանիկն այն փոքրիկ,
  որ այդպէս քեւ անարգի,

Եթէ մեղմով նայիցես,
զտանի անչափ մեծարգի:
Լոկ ի պատեանս հայեաց դու,
զոր ունի այն անտուն,
Նըկարակերտ յօրինեալ
գեղեցկութեամբ ըսպառուն,
Անդէն եւ անդ առնուցուս
ըզհանդէս այնըր ձեռին,
Որոյ մատունք զայն նըկար
անդր ի գործուած իւր յեռին:

## ՀԻՒՐՄԻՒԶԵԱՆ

ԸԶՀԵՏԱԶՕՏ աչաց փոխեալ ըղտեսիլ,
Աղէ անդրէն դարձցուք խոնարհ ի յերկիր,
Ուր եւ ժըժմակն իսկ ի տըղմին անդր ի ժահ
Կոչէ ըզմեզ, ընդ իրաւունս իւր վըստահ,
Եւ խորախաղդոյնըս բողոքէ ընդդէմ մեր,
Զանարգանացն ի մէնջ խընդրեալ ըզվասն էր:
Աներեւոյթ գեղեցկութեանց քանիօ՛ն
Հոյլք ամենայն ուրեք ծածկեալ ի սմա գոն.
Որչափ հաստիչն ի նոսա նուազ տեսանի,
Այնչափ մեծաց են զարմանաց արժանի:
Թէպէտ ընդ փիղն իսկ զարմանամ ընդ վայրագ,
Որ յուսն ի յաղթ կրէ զանհեթեթն աշտարակ,
Եւ ընդ ծանու կահիւն երթայ անըրկուն,
Արհամարհեալ զայն որպէս բեռն իմըն խուն.
Այլ ոչ նուազ ընդ հողաբնակդ իսկ ընդ քեզ
Ապշիմ որ զհետ քոյին ըզբանտ քո ձըգես,
Եւ զոր յաճախ սըրտմըտութիւն իմ արդար,
Պիղծըդ ժըժմակ, խորտակէ զքեզ ոտըն հար,
Մինչ դու զքոյոց երկայնաձիգ դիտակաց
Մերթ ամփոփես ըզհրաշակերտ յօրինուած,
Եւ վեր ի վայր պարզես մերթ զայնս ըստ հաճոյս.
Եւ յանդիման առնես աչաց իմ ըզքոյս,
Որ ամբառնան ըզմոյթ իւրեանց եւ ըզխէչ,
Ըզշարժականս ատաքձանու յելեւէջ:

*Ամէն փորձրդածութիւն երկու թարգմանութիւններուս թարգմանական արուեստին, ինչպէս նաեւ տաղաչափական հասանքին եւ լեզուին յատկութեան մասին կը թողում ընթերցողներուս ազատ դատաստանին: Պէսպէս են ճաշակները, կարող են այլազան հնչուիլ նաեւ դատաստանները:*

*Ինչպէս ինծ կը թուի, Գարագաշեան կարդացած է Բանաստեղծին միտքը, ամեհնչին լեզու տուած է անոր՝ արտայայտելու հայերէն, ո՛չ ինչպէս գաղղիացի միտքը կը խորհի, այլ ինչպէս հայ լեզուն կը պահանջէ, ըլլալու հեշտալուր հայ ականջին, դիւրահնչին հայ շրթունքին, քաղցրաբարբառ հայ լեզուին: Ուր միտքը ուժեղ արտայայտելու համար բառ պահանջած է, գտած է հայ բառամթերքին, առանց հաշուի առնելու բնագրին բառերուն քանակը: Միտք եւ բառ պատշաճեցուած են հայ նկարագրին: Իբրեւ այսպիսի՝ մեծագին մարգարիտներ են թարգմանութեանս իւրաքանչիւր տողերը, անմրցելի թէ՛ լեզուի ընտրութեամբը, եւ թէ՛ տաղաչափական արուեստի կատարելութեամբը:*

Յառաջաբանն *եւ* Տեղեկութիւններու *բաժինը, ուր զարդարիչ ոճն եւ ուժեղ դատական արտայայտութիւնը գրական հրաշակերտ մը կը կազմեն, կը պսակեն Հիւրմիւզեանի թարգմանութեան:*

3· ԱՐՈՒԵՍՏ ՃԱՐՏԱՐԱԽՕՍՈՒԹԵԱՆ, զոր յօրինեալ է Հ· Մատաթիայ Գարագա–

չեան, յաշակերտաց մեծի հօրն Մխիթարայ։
*Ի Վիեննա* 1844, 8°, *էջ ԺԴ* + 308։

*Գարագաշեանի խնամեալ գործերէն մէկն է այս, ուր ոչ միայն հոգ տարած է ծաղկալից լեզուաւ երեւալ, արժանի բանիբուն ուսուցչի, այլ եւ ջանադիր եղած է առեղծել ճարտարախօսական նոր ասութիւններ, ատակ արտայայտուելու ճշգրիտ եւ համաձայն լեզուի դասական նկարագրին։ Սովորական, առօրեայ բառերու փոխարէն կիրառած է այնպիսիներ, որոնք դասական մատենագրութեան ընտելական, բայց յընթացս դարերու մատնուած են մոռացութեան կամ տեղի տուած յունաբան դպրոցի նորակերտ ասութիւններու։ Ամէն թիւրիմացութեան առաջն առնելու համար կցած է գործին «Անուանք ճարտարախօսութեան», այսինքն բառացանկ մը ճարտարախօսական գիտական բառերու՝ յունարէն, լատիներէն, յաճախ նաեւ նորաձեւ հայերէն համազօրներով։*

*Յառաջ կը բերեմ այս նկատմամբ հեղինակին տուած բացատրութիւնը, որով կը ձգտի արդարացնել իւր ընթացքը·*

Տեղեկութիւն վասն անուանց ուսմանց։

*«Տեսանեմք զի անուանք ուսմանց հանապազ փոփոխին ի մեզ, վասն վայելչութեան եւ վասն պատշաճ մտաց։ Մեզ բարւոք թուի զհասարակաց սովորութեան թարգմանութեան զհետ երթալ, զոր այլ ազգք եւ մեր իսկ թարգմանիչք առաջինք ի թարգմանութիւնս առնեն. որում եթէ խնամով զգու–*

չասցի, ոչ միայն վայելչութիւն պահի, այլ եւ միտք անուանց պատշաճագոյնք լինիցին։ Եւ այս են օրէնք Թարգմանութեան. նախ ուր մարթ եւ պատշաճ է, գրանս այնր լեզուի ի կիր արկանել, յորմէ Թարգմանին. որպէս եւ է ի մեր լեզու ի սովորութենէ նախնեաց ասել Հոմերոս, Պղատոն, Փիլիսոփոս, Հիւղ, Իղոս, Որթոդոքս եւ այլ բազում ինչ. միայն թէ ըստ օրինաց լեզուին չրջեացին նշանագիրք, որպէս ի մեզ չրջին β ի բ, γ ի գ, λ ի ղ, φ ի փ այլովքն համդերձ[1]։

Երկրորդ եւ բազում անգամ, ճշգիւ եւ որչափ մարթ է նմանագոյնս զանունն Թարգմանել։ Արդ մեք զամենայն յունական բանս, որ յուսմունս զտանին, որպէս ինչ Թարգմանեալ գտանեմք յառաջին Թարգմանչաց Աստուածաչունչ գրոց, Ոսկեբերանի, Եւսեբեայ, Կիւրղի, Բարսղի եւ այլոց, ի կիր արկանեմք։ Ըստ այսմ օրինակի զἰδέα Տեսիլ ասացաք, զի է յἰδω բանէ որ տեսանել նշանակէ, եւ Թարգմանի տեսիլ ի գիրս Մակաբայեցւոց (Բ. մկ. Գ.), Իմաստութեան (ԺԳ.) եւ Ոսկեբերանի (Մատթ. ԺԸ.). զոր այժմ Գաղափար Թարգմանեն. բայց այս բան ոչ միայն յամենայն Թարգմանութիւնս առաջին Թարգմանչաց զուն ուրեք եւ անօր գտանի, այլ

[1] Ջհամեմատութիւն եւ զընտրութիւն ազփաբետաց Հայոց ուսուցանէ Թարգմանիչ Թրակացւոյն, յորմէ եւ ի վերայ հասանեմք թէ ոչ վայրապար յունական նշանագիրք ի մեզ չրջելով Թարգմանին, այլ թանձր եւ անօր ընութիւն նշանագրոյն ի հարկէ ինն պահանջէր, որպէս յայտ է որոց հմուտն էցեն չափոզութեան երկոցունց լեզուաց։

եւ յետ նոցա ոչ նովին մտօք առի. զի Դաւիթ անյաղթ եւ այլք ըստ նմանէ Իդէա ասեն, իսկ Գաղափար զτύποςն թարգմանեն, որ յառաջնոցն Օրինակ թարգմանի: Նոյնպէս զὑπερβολή որ այժմ Զափազանցութիւն, եւ զγένος որ Սեռ առի, մեք Առաւելութիւն, Ազգ ասացաք, զի յամենայն աստուածաշունչ գիրս եւ յայլ եւս թարգմանութիւնս առաջնոց գրոց ասացաք, նոյնպէս թարգմանեալ գտանեմք:

Իսկ զյօդուածոյ անուանս նոյնպէս ըստ նմին օրինակի առնեմք. զի ուր ոչ վնասի վայելչութիւն լեզուին եւ միտք յայտնին դարձուցանեմք ի հայ. որպէս μικρόσκοπος, τηλέσκοπος, Մանրադէտ, Հեռադէտ ասացաք. իսկ ուր չէ մարթ վայելչութեամբ շրջել[2], երկոքումբք բանիւք ասեմք, որպէս եւ այնց նախնեաց սովորութիւն է, որ թարգմանեն Փոխանակ բդեշխի, Հակառակ Քրիստոսի, ուր ի յոյն լեզու մի բան է ἀνθύπατος, ἀντίχριστος: Ըստ սմին օրինակի զδίλημμα որ ցայժմ Երկայրաբանութիւն ասէր, Երկառած թարգմանեցաք. զի λῆμμα յունարէն ոչ այլ նշանակէ, այլ է ի λαμβάνω բանէ որ է առնուլ, եւ ի սուրբ գիրս առած թարգմանի, ուստի պատշաճագոյն թուեցաւ մեզ երկառած

---

[2] Առ չառնելոյ փոյթ սմին բազում բանք մուծեալ են եւ ի հայ, որպէս Փաղատորդութիւն, Տրամաբաշխութիւն, Ներընդունական, որ թող զվայելչութիւն, եւ միտս եւս ոչ յայտ առնեն, փոխանակ այսոցիկ այլ պատշաճագոյն բանք եղեալ են ի Փիլիսոփայութեան որ նորոգ ելանէ:

*տանել, թէպէտ եւ Դիդեմայ եւս տալ չթուի մեզ օտար, որպէս եւ առ Նախնիս տեսանեմք զի անխտիր տան Դիփիլէս եւ Երկրոյս, Որթողոքս եւ Ուղղափառ, Սինհոդոս եւ ժողով, այլովք բազմօք հանդերձ. զնոյն եւ զայլոց ինչ անուանց պարտ է իմանալ: Զայդպէս տանել պատշաճ համարիմք ի գրոց բարբառ, զի մի վայելչութիւն լեզուին եւ ճարտարութիւն թարգմանութեան առաջնոցն խափանեսցի, եւ ոչ եթէ օրէնս ինչ կամիցիմք դնել, եթէ ոք այլազգ ինչ տանել, կամ զոր այժմս տային պահել արգելիցէ. եւ վասն այնորիկ յետ իւրաքանչիւր գրոց ուսմանց դնեմք զանուանս ուսմանն հանդերձ յոյն եւ հռոմ բանիւք, եւ կամ այլով իւիք լեզուաւ. եւ զորս փոփոխեցաքն նոյնպէս առընթեր դնեմք: Բայց ակնունիմք թէ եւ մեզ մի մեղադիր ոք լինիցի, թէ նորաձեւս ինչ առնիցեմք, զի ոչ ի մէնջ, այլ որչափ մարթ է զառաջնոցն թարգմանութիւնս օրինակ արարեալ, որոց քաջութիւն ամենեցուն յայտնի է, ջանամք զի հանդերձ ուսմամբ եւ լեզուն յառաջադէմ գտցի»:*

4. ՆԿԱՐԱԳԻՐ ՈՒՍՄԱՆՑ որ է բնութիւն, պատմութիւն, հարկ եւ օգուտ իւրաքանչիւր մասանց գրագիտութեան. զոր յօրինեալ է Հ. Մ. Գարագաշեանց: *Ի Վիեննա* 1845, 8°, *էջ ժ* + 366:

*Նկարագրութիւնն է գիտութիւններու, անոնց ներքին բովանդակութեամբ եւ արտա-*

քին պատմութեամբ: Բանաստեղծ հեղինակին ծաղկազարդ ոճովն եւ զարդախօս հայերէնովը ստացած է մատեանս վայելչութիւն մը՝ որ կարող է նոր-դասական մատենագրութեան ընտրելագոյն զարդը նկատուիլ:

Եթէ իւրաքանչիւր գլուխ ունի իւր հրապոյրը, եւ բովանդակ մատեանն կը ներկայանայ դասագիրք մը հայերէն դասական լեզուի, բայց յատկապէս էջ 25—46 արժանի է մասնաւոր ուշադրութեան, ուր «Հայ բարբառը» իւր դասական դարուն եւ յետ դասական շրջաններուն նկատի կ՚առնուի եւ առաջին անգամ հրապարակին լսելի կ՚ըլլայ Վիեննական դպրոցի տեսութիւնը հայերէն լեզուի շրջաններու մասին:

Գարագաշեան լեզուն է հօս Մխիթարեան Դպրոցին. իւրաքանչիւր բառ եւ խօսք կանխաւ գտած է հեղինակին ընկերներուն հաւանութիւնը: Ե. դարու առաջին կէսի մատենագրութիւնը — որ յանուանէ կը մատնանշուի — կը հրապարակուի որպէս բուն դասական լեզուի. եւ ինչ որ անկէ դուրս է, կը համարուի ոչ-դասական:

5. Վասն Առասպելախօսութեան (mythologie) կամ պաճուճեալ պատմութեան դիցն հեթանոսաց:

1849ին, երբ կը խնդրէր Գարագաշեան իւր ընկերներէն, որ ուղարկեն իրեն իր անտիպ աշխատութիւնները՝ յատկապէս Քերականութիւնն եւ Հատընտիր քաղուածքը,

կ՚աւելցնէր թէ պէտք չունի «Դիցաբանութեան»: Այս աշխատութիւնը ունիմ այժմ աչքիս առաջ, գրուած մեծադիր թղթի վրայ գեղեցիկ նոտր գրով, եւ է 46 երես: Նկարագրութիւնն է յոյն եւ հռովմէական դից աստուածաբանութեան, տրուած իւրաքանչիւր դից յատկանիշներն եւ անոնց մասին ըմբռնումները: Գարագաշեանի գարդախօս լեզուն կը բարբառի նաեւ հոս յստակ եւ հնչիւն:

6. Ուսումն փիլիսոփայութեան, զոր յօրինեալ է Հ. Մաղաքիայ Սամուէլեան. Հատոր Ա. Խօսուն փիլիսոփայութիւն: Հատոր Բ. Մետաֆիզիկեան փիլիսոփայութիւն: Վիեննա 1845—1848, 8°, էջք 168 + 156 (անուարտ մնացած):

Այս աշխատութեան հեղինակն է Հ. Մաղաքիա Սամուէլեան, որ ըլլալով ոչ–դասական շրջանէն, անհմուտ խօսելու ոսկեղէն դարու բարբառով, հարկադրուած է յանձնել գործը Բանասիրաց ժողովի քննութեան եւ ուղղագրութեան: Գարագաշեան ստանձնած է այս ուղղագրութեան գործը: 1845—1848 տարիներուն իր գլխաւոր զբաղումն էր համաձայն դասական հայերէնի սկզբունքներու յերիւրել այս աշխատութիւնը, որ մաս առ մաս կը տպագրուէր: Վերաքննութիւնը կը կատարէր հեղինակը, որ այն միջոցին կը գտնուէր Հռոմ: Տպագրութեան դանդաղ ընթացքը մէկ կողմէն եւ միւս կողմէն Գարագաշեանի տեղափոխութիւնն Զմիւռնիա

*եւ Սամուէլեանի՝ Կ. Պոլիս, կը հանդիսանան խափանարար արգելք աշխատութեանս հրատարակութեան: Տպագրուած թերթերը կ'ոչնչացուին այսպ. ձեռագիրը կը գտնուի ամբողջութեամբ Մխիթարեան Հայրց անտիպ աշխատութեանց մէջ, Գարագաշեանի ուղղագրեալ օրինակութեամբ եւ հեղինակին նոր յաւելուածներով:*

*Ուրբագրիչը յերկուած է ամէն բառ եւ տառութիւն համաձայն Ե. դարու խորհելու կերպին, պարզ եւ դիւրընկալ ոճով: Ցաւ է, որ չվայելեց այն պայծառ լոյսը:*

7. Եկեղեցական Պատմութիւն:

*Մխիթարեան Հայրց անտիպ ձեռագիրներու թուին մէջ պահուած է նաեւ այս աշխատութիւնը Գարագաշեանի գրչէն, ընդարձակ ծրագրով, բայց թողուած անաւարտ:*

8. Առակք Լաֆոնդենի. թարգմանութիւն Ա. Մ. Գարագաշեան: *Վիեննա* 1894, 8°, *էջ* 478:

9. Ճաշակ ոսկեղէն դպրութեան. Հանդէս Ամսօրեայ պատմական, գիտնական, բանասիրական այլովք հանդերձ: Ընդ խնամով Ա. Մատաթիայ Գարագաշեան եւ Յ. Գուրգենի: *Կ. Պոլիս* 1886—1888, *Ա.—Գ. տարի*:

ԳԱՐԱԳԱՇԵԱՆ — ԲԱՆԱՍՏԵՂԾ

*Ցիշեցինք վերագոյն թէ Գարագաշեան արդէն 1835ին կը յօրինէր կրակոտ տաղեր: Եւ ճարտար էր նա այս արուեստին մէջ.*

գրեթէ սակաւ բացառութեամբ ձոխ վերջավանկերով։ Այս ձոխութեամբ ջանացած էր հայացնել Թասսոն։ Ինչպէս տաղաչափութեան մէջ արուեստ, նոյնպէս մտքերու մէջ բարձրական իմաստ եւ արտայայտութեան մէջ յստակ, անբռնազբօսիկ լեզու, դիւրասահ եւ հնչիւն, աշխատած է երեւցնել։ Ամէնուն վրայ կ՚իշխէ բանաստեղծին ոգեւորութիւնը․ ան կը բարձրանայ կը վերանայ բարձրագոյն եթերներ, լսելի ընելու համար Աստուածականին զգածումներու ուղերձները, ըղձակաթ ըլլալու եւ հայցելու երկնահոս ցօղը մերթ լեռներու բարձրաբերձ գագաթներուն, մերթ մարգերուն նաեւ ռազմադաշտերուն վրայ։

Իր քնարին երկնասլացիկ ձայնը կը պատռէ օդը, կը սահի կոհակաձեւ ջուրերու մկանունքներու վրայէն, առանց շառաչի, առանց ալէկոծութեան․ մեղմախառն զեփիւռ մըն է որ կը շարժէ կոհակները, որոնք կը բաշխեն համբոյրներ եզերքին։

Քնարերգակ է Գարագաշեան իւր նուագներու մէջ, միշտ ուղերձող, երբեմն աղաչաւորի, երբեմն պաղատաւորի, երբեմն թախանձողի, նաեւ պահանջողի դերին մէջ։ Ամէնուն համար բառ պիտոյից կը մաղթէ երկնատուր ձիրքեր, թաթաղուն եւ գեղուն։ Իւր շնորհաց հետ նաեւ սեպհական ոյժին գործակցութիւնն է կարեւոր, հոն կը հնչեցնէ խրախոյսի փողը, քաջալեր կը կարդայ, կը

արտայայտէ՝ անշուշտ յաղթութեան ակնկալութեամբ:

Բայց ան ունի նաեւ հովուերգութեան ժամեր: Նստած լուսնկայ գիշեր մը խաղաղ եզերքը աղբիւրին, որ կը բղխէ անմահութեան ջուրը իր ծոցէն արծաթափայլ, ու կը դիտէ անոր կարկաջասահ հոսանքը որ Մխիթարեան բուրաստանէն վար ի վար կը դրդլէ հասնելու ընդգրկելու յորդահոս ջուրերը Դանուբին: Ու կ'երգէ երախտապարտ հովուերգուն իր մեներգը, արձակ եւ հնչիւն·

Ցակնաղբիւրն Վանաց ի Կլոստերնայբուրգ·

«Աղբի՛ւր, զակունս քո ոչ պեղեաց ձեռն այնորիկ, զորոյ զերկրաւ քերեալ փախստական՝ մտանես ի մայրն, յասպնջական ջուրց, որ յարեւմտից երթայ յարեւելս պատանդ:

Ո՛ խնամ, որոյ զքեզն զնացուցանէ, կեցուցիչ ջուրդ, բարուք մատուռակիս որոյ շրթունք սուրբ յարենէ, ոչ ըմպեն զարիւն խաղողոյ:

Բարեհնչան քան զԱրամազդայն աղբիւր, յորոյ ի սպիտակն ալեաց ծիրանաւորք ծնան. արժանի կատարեան աղբերացն մարմարապատն աւազանաց, որ ամփոփիւք յանձուկ այսր, զտիւ գործան եւ զգիշեր արթուն:

*Քո պղպաջուն չիթք են, ուստի սաւինք վանականն, ուստի պաղի մարգարիտ, որ գոյն արծաթի եւ զսպիտակ պարանոց զարդարէ կուսի որ գնայն արկանէ։*

*Մի՛ տեսցէ զքեզ, փարելի, արեգակն պարապ, մի լուսին ի քուն, մի ծարաւեսցի զքեւ դեղ դալար, մի յամպս ժլատս հայեսցի մշակ, մի զսափորն ունայն դարձուսցէ ի տուն պարկեշտ աղախին։*

*Յանկա՛րծ թէ զայ այր յուղւոյ, որ զփոշին փչէ, որ զփրփուր շնչէ, ի կարկառել բաժակին, զնացակա՛ն դու, կասեցո՛ զալխ, եւ հա՛ր զփափաք արեգակնակէզ լեզուի։*

*Երգեսցէ զերգս զայս ե՛ւ տոյգ պատանի, ե՛ւ մատաղ աւրիորդ զայս երգ երգեսցէ, ե՛ւ գիրգն ծերունի, ե՛ւ այր պնդակազմ աճառապատ բազկաւք, յորժամ խաղան անիւք արեգական ի ծովէ, յորժամ ի կողմն լինի վաստակեալ երեկոյ»։*

*Տողերս Մուսայից ներշնչման տակ գրի չե՞ն առնուած։ Բայց ոսկեղէն գրիչն է, որ մարմին զգեցուցած է զգածմանց։*

*Մխիթարեան Տպարանէն պիտի հրատարակեմ ստորեւ ինչ ինչ հատուածներ, զորոնք երգած է Գարագաշեան* 1835, 1838—1847 *տարիներուն։ Յառաջբերութիւններուս նպատակն է ցոյց տալ թէ ինչպէս առ տա—*

կաւ տակաւ կը զարգանայ Գարագաշեան ոչ–
գասականէն դէպի դասական լեզու եւ զար–
ձեալ թէ ի՛նչ արուեստով կը սիրէր նա ար–
տայայտել իւր իղձերը։

## ի դարձին ի Հռովմայ Գեր՛ապայծառ Աբբահօր Արիստակէսի

Մինչ Արգոնեան սիգաճեմ բա՛
ճեմէր Նաւակն ընդ դողդոջուն ալեաց վայր
Գեղածածան երբ տատանէր յաստարէգ յաղթ՝
ըղկոհակաց սանձեալ դար·
Էր չուարկի գերթ երխվար դող յերերուն
նայէր փառօք դաշտավայր,
Էր գեղապանծ գերթ Թըռուցիկ սըլանայր ճեպ
յաստեղընթաց ի կատար։

Անդ հըրացայտ չանթիս ի վառ ամպըոպել Զեւս,
այլ ոչ զօրէր ի փայլած,
Եւ Ողիմպոս ոչ սիրաշարժ յամբոց ի կոյտս
ցօղէր տարափս ի կաթուած.
Ոչ Ուրանոս հընչէր վերուստ բամբիւն ահեղ
որոտ ընդոստ ի կառաց,
Եւ Պխիզոյնն ի սաստ կոհակս ոչ փըրփըրադէզ
յուզէր անդուլ ի յալեաց։

Այլ՝ վարդամատն Նիմփայն քաղցրիկ ըզդաստ սիրուն
յերկնից ի սեամս կարկառէր,
Ոսկեկառոյց գնդլխեայ նիզս պարզել համակ
առ Սիրայնոյն հըրաւէր.
Պերճ Տիտանէս անդուստ ճախրեալ զանուոց ըղծիրս
միշտ ի հոլով բոլորէր.
Կարմըրապարդ փոկոց սարխ ձըգեալ ձեռամբ
ի Թափ ընթացս վերճեմէր։

Միրուն եթեր ատտ պատեցաւ, Նըսեմաձիգ
  ի քող արխուր կապուտակ,
Զի չարախանձ հետ Երերոս սեւապարոյր
  ծըպտեաց Արփւոյն հեշտ դիտակ·
Զերեքժանոյն ճեմ սրբաչարժ յածուն հողմովք
  յուղէ Նեփթունն ի ծովակ·
Մերթ յափնածիր մերթ բացավայր թողու վըթար
  յալեաց խորոջս վայրահակ:

Աւա՜ղ բախտին· Այն ինչ խաւարն աղջամըղջիւ
  այսպէս պատէր ի ծաւալ·
Ժանտ Կըռոնոս ընդ Ատրոպեայ արձակ դիմէր,
  ըղձայր ժանեաց յխտանեալ·
Սիրտ ի թառանչ Դիցազանց ջոկ յԱնդըրին վայր
  զօգցես ձայնէր, ձեռըն կալ,
Դըժոխարձակ Պըղուտոնեան ի բաց անուլ
  զանդուլթ արկած անժուժկալ:

Ահա անդուստ լուսապատար շողոյ Փեբոս
  կըրկին ի տես ոսկեար·
Ցամք ի հոլով դըլեալ զանխւս· նոյն՝ եւ կառաց
  բոցակնագոյն երիւար·
Ցոր Պառնասեան ահեղ կատարք սիրայորդոր
  ծափեն ի կայթ ակընկառ·
Եւ կամենայք խումբք երջանիկ ոսկեքընարս
  հարեալ երգեն քաղցրարար:

Արփիափիւղ յանկուած շըքեղ ահա հանդէպ
  ՎԵՀԻԴ պատկեր փառունակ,
Զոր ոչ եառուն ամք սիրաչարժք եւ ոչ տացեն
  թէեւ զարձցին Ոսկեդարք·
Առ որ ընդ պարծ ցընծան ծաղու յամայր աւանդ
  այն Քաջազունք ձայնարձակ·
Երջանկաւէտ միշտ պերճանան ի ճոխ հանդէս·
  Նա ի սիրտն ի փայլակ:

*Ափ ի բերան հերիք այաչափ, Ապողոնի*
*կացցէ ջութակ Պիերեան,*
*Դադար առցէ ի լուր քընար եւ Թալիա*
*հընչել գեղմոս քաղցրաձայն.*
*Զի Հողերդակ Ցէսուէածնին ասա չարժեցաւ-*
*սուրբ Տասնադեան երգարան*
*Աշխարհալուր հընչել ի բաղխ զըւարթ ի ձայն*
*տալ գուեախս խընդութեան:*

*Ահա ձայնէ փայլեն ի բոց բարձրելոյն աչք*
*յեօթնաստեղեան ի կամար,*
*Եւ շըրջափիւռ տես զինչ զործեն այն ցոլացմունք*
*ձըգեալ յերկնից բոցավառ,*
*Երկնատարափ ազատ յամբոց զող զորհնութիւն*
*ցօղագնեն վայր հեղարար.*
*Ակնանկուռ Նազելույն Թագ կապեն այս*
*ի ծամս վարսից ոսկեչար:*

*Ոսկեխս յանեղծ պերճ մըրցանակ երգէ կիթառ.*
*Երջանկացի անսըլխեղծ,*
*Ցորչափ ի զարձ անցէ բազմեալ գիւր Դիտապետ*
*յարժանին զահ բարձրերէց.*
*Եւ գըրենայս յանջինջ ի տառ ՎԵՀԻԴ անմահ*
*զարձցի ի գող սին քերթուած,*
*Զոր Հայներգուն սըրտանըւէր յանձուկ ի ժայժ*
*հիւսէ յուղերձ գետախայծ:*

Ի Քլոսդեռնայպուրկ, յամի 1835:

Անտոն Պէրպէրեան:

## ՅԱՒՈՒՐ ԱՆՈՒԱՆ ԱՄԵՆԱՊԱՏԻՒ ԱԲԲԱՀՕՐ

*Ես տաւել զուարթարար կարծեմ ըզլոյս աւուրս այս*
*Որ ըզծագումն իւր եցոյց, արկեալ գգիշերըն յորսայս:*
*Այժմ երեկոյս վաղորդայն եւ խոր գիշեր ախ. կարծի,*
*Զի զքեզ ո՛ Հայր, տեսաք զուարթ բազմեալ ի դոյն*
*յայգ բարձի:*

Զէ այս պատկերն պսակք նուաճատեաց հին զննման,
Այլ յիշատակ կամաւոր սուրբ վըկայիցըն զննման:
Այսօր եւ հարսն Ցիսուսի նոր զարդարի իւր զար–
դուն
Բանզի արեամբ յաղթապսակ մտանեն հովիւք իւր ար–
թուն:
Սակայն չմատոյց մեզ եւեթ սա զուարթուն խըն–
դութեան,
Այլ եւ ոչ դոյզն ըսփոփանք, ո՛վ Տէր, ի սիրտ քո զար–
թեան:
Զպատկեր աւուրցն առաջնոց այս տարեկան նըկարէ,
Զոր մարդկեղէն հընարից ճարտարութիւն չըկարէ:
Զզարմ եւ զորդիս Գրիգորի զժառանգեալըն թագին
Պատմուճանին սըրբութեան եւ ոսկեհուռ դիպակին:
Ո՛ ոք ի սոյն պատկերի տեսեալ անդուստ ի վերուստ
Ոչ ըղձացայն տարաժամ լացցէ եկիցըն կորուստ:
Զի որոց դէմ յանդիման հարք մեր բերկրեալ ցըն–
ծային,
Մեզ նըշմարանք մեծութեան այնըր փառաց ընծային:
Այլ զի՞ լամք ձեռն ի ծնօտի որպէս յաւուրըս հըն–
ձոց,
Վրիպեալ ուրուք յամալոյ ըղտոհմականս յիւրըն ծոց:
Մեզ այս ամիս է քաղոց, յարտորայս մեր հայիմ ես
Ի հընձոց ժիր մըշակին եւ հասկ առոք կայ ի մեզ
Այո՛, որպէս ըղկայծակն որ ծածկեալ կայ յանթեղի
Կամ որպէս լոյս ընդ աղօտ վառեալ ի լոյս կանթեղի:
Այսպէս զու Հայր ըղփառաց որ նըւաղեալ դադարէր
Ըզյիշատակըն տըխուր դարձեալ զըւարթ արարէր:
Բայց զարմացեալ եմ ես յոյժ ընդ ձեռն յաջող եւ
ճարտար
Որ անաչառ ի խըլել եւ ի տընկելն է արդար:
Փոխանակ հարց են որդիք արժանաւոր պայազատ,
Ընդ վայր հարեալ է աթոռն այլ փառք պատուոյն կայ
ազատ:
Այլ ի բանալ բերանոյ չիք ինձ այլ բան արժանի,
Զի ուր սէր սուրբ բարբառի լեզու ի զուր տարժանի:

*Վայելչական տըւընջեան ոչ ըսպասեալ կաթողին.*
*Ըզգիշերայն են հասեալ ողջունարեր քեզ դողին:*
*Մին ըզտըւիչն աղերսէ զանտըրտմական ըզըրարեաց.*
*Միւսն ի բարւոք ծերութեան քեզ բիւրս ամաց եւ*
*տարեաց:*
*Արդ ո՞ւմ արդեօք լըւիցէ Տէր կամարար մըտադիւր,*
*Բայց թէ անձնիւր զիւր խընդիր տացէ, ըզվարձ իւր*
*ընդ իւր:*
*Եւ դու ով տէր լիցիս ասա թագ ի ձեռին Աստուծոյ,*
*Եւ յաշխարհին հանդերձեալ պըսակ յաննիւթ կազ–*
*մածոյ:*

1839, Յունիս: ԽՂ. Մ. Գ.

## ՅԱՒՈՒՐ ՏՕՆԻ ԱՆՈՒԱՆ

*Ոչ ըզպինդարեան խընդրեմք հնարաւոր երգոց պա–*
*ճուճանս*
*Ոչ զիշխանական յատեան խօսելոյ ծաղկեալ պատմու–*
*ճանս*
*Լըռեսցեն տաւիղք, ըստ գըրոյն բանի, քընարք եւ ծըն–*
*ծղայք.*
*Ասցեն պարզախօս երգս տաղասաց մանկունք եւ*
*տըղայք:*

*Նոր երկինք այսօր նոր էլք արեւու նոր աւուր*
*ծընունդ*
*Հովուաց փեսայից հարսին Քրիստոսի նոր վըկայից*
*գունդ*
*Զպահլաւեանց պըսակ եւ ըզպարթեւեան որ երբեմն*
*ի Հայս*
*Զոր եղծին աւուրք նորոգեն անեղծ պսակեալք յա–*
*ւուրս յայս:*

*Այլ որ ընդ նոցայն ցընծամբ յիշատակ ի բարբառ տաղիս*
*Քեզ Հայր ժամ է արդ նոցին համանուան փոփոխել գաղիս*
*Տեսցեն ըզքեզ Հայք եւ Մարք եւ Արիք եւ բարձրըն Մասիս*
*Զի ոչ լոկ անուամբ յարդեանցըն Թափուր ընդ նոսայն դասիս:*

*Այսօր ոչ նորիք եւ ոչ տուր երեաց դառանց ընծային*
*Այլ սիրոյն նըւէրք որ յայս ժամ հերու ըզքեւ ցընծային*
*Մի բարձցէ զաւուրս ըզսէր եւ զպատիւ վառեալ ընդ յուսոյ*
*Որ տարաժամեալ զոր այգուն ճաճանչ երեր ընդ լուսոյ:*

*Գիտեմք եւ այս օր անցցէ յերեկոյս նըժդեհ եւ պանդուխտ*
*Զոր ոչ հաճեսցեն պաշտամունք խընկոց ոչ աղերս եւ ուխտ*
*Այլ չըրջանք ամաց աղատք ընդ երկինս կան մեզ ի հարկի*
*Դարձուսցեն անշուշտ ամ յամէ ըզնոյն անդրէն ըստ կարգի:*

*Զոր ճըղնին ի զուր արգելուլ ձըմեռն եւ ծով ընդ ալեաց*
*Եւ կամ մեծարգոյ ծաղկեալ բազմամեայ հընութիւն ալեաց*
*Ծով եւ ձիւնաբեր դարձցին ծաղկաբեր եւ ձմեռըն գարուն*
*Դու նոյին ալեօք զըւարճացեալ հասցես երանեալ գարուն:*

1840 Յուլիս 21: Հ. Մ. Գ.

## ՅԱՄԱՆՈՐՆ

*Դարձեալ ըսկիզբըն տարւոյ*
*Աւետաւոր ըզբարւոյ,*
*Մէն մի խընդալ ընդ անձին,*
*Զի նոր աւուրքըս գանձին:*

*Մէն մի այո՛ ընդ անձին*
*Ցընծայ ուրոյն առանձին,*
*Այլ քեւ բոլորքըս խընդան.*
*Քեւ, Տէր, հիմունքըս թընդան:*

*Զասեմ հիմունքըս խընդան,*
*Զանկինեակալ վէմըն տան.*
*Որ ոչ խըտրէ օր տարի,*
*Եւ միշտ յանկեան դադարի:*

*Ոչ Ցիններորդ, ոչ տարի*
*Ըսկիզբն հընձոց եւ վարի,*
*Ոչ Թողութեան ամք պիտին*
*Ի սահմանեալ ժամ կիտին:*

*Ոչ եւղ եւ մեղըր պիտին*
*Ուրուականացըն դիտին.*
*Ոչ գինի սեռն յամանոյ,*
*Նոխազ խուռն Նըմանոյ:*

*Թէ եւ բաշխեմք յամանոյ*
*Նըւէր պըտղոց դարմանոյ,*
*Գինի պարզեալ ի կըթոց*
*Այգեստանեացըն գըթոց:*

*Էանց ամխըն կըթոց*
*Զիք այլ հընծան եւ կըթոց.*
*Այլ այժմ, ով Տէր, ի տաշտի*
*Կենդանութիւն մեզ պաշտի:*

*Անապակաւս ի տաշտի.*
*Թէ Տէր ի ձայն մեր հաշտի,*
*Կեցցես ոչ մի, այլ հազար,*
*Առհաւատչեայ քեզ Ղազար:*

*Ո՞ւր են որ բեւր եւ հազար*
*Ոսկի լուծեալ եւ ասար.*
*Ըզկենաց դեղըն կազմեն,*
*Լաւ քան Հայոց ըզգազպէն:*

*Զի՞ զանդեղեայըն կազմեն,*
*Ընտրեալ զընտիրն ի բազմէն.*
*Զհընդիկ մըրջեանն ընթանալ,*
*Զանխուլ մըթերըն բանալ,*

*Ի ձենաց ծովն ընթանալ,*
*Ի Սելովամըն թանալ*
*Մի թէ զաւուրս յերկարէ՞,*
*Խընդրելով շունչ ի քարէ:*

*Եւ զի՞ երգս իմ յերկարէ,*
*Թէպէտ լըռել ոչ կարէ.*
*Առ Տէր աղօթք նորայ են,*
*Որ տայ մեզ հունձ յորայէն:*

*Կեանք ի կամաց նորայ են,*
*Լըսայ յիւրում ծառայէն:*
*Աղէ հիւսիս եւ հարաւ*
*Ո՞յր հրամանաւ արարաւ.*

*Ամք՝ որ պատեալ ընդ հարաւ*
*Ածեն զաւուրս համարաւ,*
*Եւ արդ ձըմեռըն խորին.*
*Որ հրամանաւն է նորին.*

*Մինչեւ յալխողդ խորին*
*Դառնալ ի մէնջ յորդորին:*

*Մի՛, Հայր, լսեր Յակոբայ,*
*Այլ արութեանըն Յոբայ:*

*Կարճ են աւուրք Յակոբայ,*
*Որպէս եւ ինքըն գոփայ,*
*Զերկոտասանըն ծընաւ,*
*Անկաւ որդւով եւ կընաւ:*

*Թեւ բիւրաւորըս ծընաւ,*
*Հողւով ի կաթըն սընաւ.*
*Ոյր վասն ամաւք ես սակաւ,*
*Այլ բիւրամեան հասակաւ:*

*Ասեմ, ամաւք ես սակաւ,*
*Բայց անըսպառ պըսակաւ:*
*Եւ ո՞ տայր դոյզըն բանիւ,*
*Որչափ երկրիս մեր անիւ.*

*Դառնայ վարչին իւր բանիւ,*
*Նոյնչափ եղէգն իմ ջանիւ.*
*Ըզայն պատիւ՝ զոր պարտի,*
*Հատուցանէր ի քարտի:*

*Թէպէտ եւ զայն միշտ պարտի,*
*Քանզի եւ ոչ հանդարտի.*
*Այլ քաջ յըսկիզըն տարւոյ*
*Աւետաւոր ըզբարւոյ:*

1841, Յունուար: Հ. Մ. Գ.

## Հ. ՂԵՒՈՆԴ ՅՈՎՆԱՆԵԱՆ

*Յովնանեան ծնած է 1817 Հոկտ. 28ին Կ. Պոլիս. մտած է վանք 1835 Օգոստոս 12ին, հետեւելու հոն իր եղբօր՝ Հ. Պօղոս Յովնանեանի օրինակին: Ուխտած է Հ. Յ. Գաթըրճեանի հետ եւ ձեռնադրուած Գարագաշեանի հետ 1840, Սեպտ. 27ին: Վախճանած 80ամեայ 26 Յունուար 1897: Կենսագրական գծեր իր մասին տեսնել Հանդէս Ամսօրեայ, 1897, Թ. 2:*

*Դասական հայերէնի վերածնունդը ողջունողներէն մին էր Յովնանեան: Երկար տարիներ եղաւ անիկա անդամ Բանասիրաց ժողովին, եւ բանիւ եւ գործով ջատագով եւ պահապան հանդիսացաւ գծուած սկզբունքներուն:*

*Տեսանք զինքը վերագոյն մին այն թարգմանիչներէն, որոնք դասական հայերէնով կը փորձէին խօսեցնել տալ Բոսուէին:*

*Իր երկրորդ գործը, որ լոյս տեսաւ ոսկեղէն դարու բարբառով, եղաւ.*

1. ԿՈՌՆ. ՆԵՊՈՏԱՑ ՎԱՐՔ ԶՕՐԱԽԱՐԱՑ ԱՆՈՒԱՆԵԱՑ, զոր թարգմանեալ է Հ. Ղեւոնդեայ Յովնանեանց, յաշակերտաց մեծի հօրն Մխիթարայ: *Վիեննա* 1842, 12°, *էջ Ը* + 370: [Թարգմանութիւնք Հռոմայեցւոց մատենագրաց. Ա:]

*Լատին մատենագիր մը դասական հայերէնով փորձ կ'ընէ թարգմանել երիտասարդ*

*Յովսաննեան. Ղեւոնդ Վանանդացի մը վերակենդանացնել կ'ուզէ իր գրչին տակ՝ երգելու անուանի զօրավարներու քաջութիւնը: Լուրջ, զարդախօս, բայց զգաստ ոճ մը կ'իշխէ հոն, համաձայն հռովմայեցւոյն լրջութեան:*

2. Գիտութիւն տէրութեանց Եւրոպայ, այս ինքն է նկարագիր արդի հանգամանաց եւրոպական տէրութեանց, զոր յօրինեալ է Հ. Ղ. Յ.: Տոմար Ա.: *Վիեննա* 1847, 8°, *էջ ԺԱ* + 422:

3. Պատմութիւն տիեզերական ժողովոց եկեղեցւոյ որք յարեւելս գումարեցան. զոր յօրինեալ է Հ. Պօղոս վարդապետի Յովնանեանց: *Ի Վիեննա* 1847, 8° *մեծ*, *էջ ԽԷ* + 596:

*Հեղինակն է Հ. Պօղոս, եղբայրն Հ. Ղեւոնդի, որ յօրինած էր զայն Հին Դպրոցի հայերէնով: 1846ին, երբ Կ. Պոլիս կը գտնուէր հեղինակը, հրաման կը հասնի յանձնել զայն տպագրութեան: Եւ որովհետեւ Բանասիրաց ժողովը չէր կրնար հանդուրժել, որ ոչ-դասական լեզուով տպագրուի այն, կը ձեռնարկէ Հ. Ղեւոնդ, համաձայնութեամբ իր եղբօր՝* վերածել *լեզուն դասական հայերէնի: Թէ այս որքան յաջողած է, կարող են վկայել այս շատ օգտակար մատենին ընթերցողները:*

## Հ· ՂՈՒԿԱՍ ՏԷՐՏԷՐԵԱՆ

*Չորրորդ ընկերն է Հ· Յ· Գաթըրճեանի եւ ուսումնակիցը։ Ծնած է Կ· Պոլիս,* 1819 *Մարտ* 31*ին, Վիեննա եկած* 1831, *Սեպտ·* 26*ին, ձեռնադրուած Գաթըրճեանի հետ միաժամանակ* (26 *Մայիս* 1841) ։ 1872*ին հեռացած է Միաբանութենէն եւ վախճանած* 1897, *Դեկտ· ի Զմիւռնիա։*

*Տէրտէրեան յարեցաւ իւր ընկերներուն գաղափարին, նկատմամբ դասական Հայերէնին. ինքը ուսողական եւ բնագիտական գիտութիւններու սիրահար՝ ջանք տարաւ նաեւ գիտութեան այս ճիւղերուն պատշաճեցնել դասական լեզուին դիւրաթեքութիւնը։ Իր գրչին պարտական ենք.*

1· Խոնարհագոյն ուսողութիւն, զոր յօրինեալ է Հ· Ղուկայ Տէրտէրեանց յաշակերտաց մեծի հօրն Մխիթարայ։ *Ի Վիեննա։*

Ա· Տոմար· Համարողութիւն եւ նշանագրովք համարողութիւն։ 1843, $8^0$, *էջ ԺԶ* + 456։

Բ· Տոմար· Պարզ երկրաչափութիւն· 1846, $8^0$, *էջ* 350։

Գ· Տոմար· Երեքանկիւնաչափութիւն եւ հատածք կոնի։ 1846, $8^0$, *էջ* 134։

*Անշուշտ յանդգնութիւն էր դասական հայերէնի սկզբունքներուն հաւատարիմ մնալով յօրինել Ուսողութիւն մը իւր սեպհական բառերով։ Ճարտար հեղինակը յաջողած է*

սակայն սեպհականել գիտութեան բառեր, որոնք թէեւ անսովոր լուէին ի սկզբան, կարող էին ճշգրիտ արտայայտել միտքը եւ իրենց պարզութեան մէջ դիւրընկալ ըլլալ: Ա. եւ Գ. հատորին կցուած են բառացանկեր՝ հայերէն, գերմաներէն եւ գաղղիերէն, երբեմն նաեւ լատիներէն, ուր յաճախ քննութեան կ՚առնուին ընկալեալ ասութիւնները եւ մանաւանդ կ՚ըլլայ անոնց անհարազատ կիրառութիւնը: Քննադատուած էր ժամանակին Երկակտուր (հմմտ. էջ 180), Durchmesser, Diameter, diamètre բառը, որուն փոխարէն ընդունուած էր Տրամագիծ: Գ. հատորի բառացանկին մէջ կ՚ըսուի. «Այսպէս թարգմանեալ կայ (բառս) յԵւկղիդեայ Երկրաչափութեան, որ կշռի իսկ քաջ անուանդ Diameter, իսկ անունդ Տրամագիծ, թող զի չէ բառ յատկութեան լեզուի ասացեալ, չայ բնաւ միտս, զոր յայտնելն կամիցի» (Գ. էջ 124—125): Այս եւ շատ մը նման բառերու ընտրութիւնն եւ յարմարումը կը կատարուէր միշտ խորհրդով Բանասիրաց Ժողովոյն:

Տէրտէրեան ունի ուրիշ գործեր ալ, աշխարհաբար հայերէնով, որոնք չեն հետաքրքրեր զմեզ այս տեղ:

—

Հրահանգք աստեղագիտութեան ի վերայ երկնագնդոյ· յօրինեալ ի Հ· Աղեքսանդրէ Վ· Պալենեան: *Ի Վիեննա* 1845, 8°, էջ 72:

Հեղինակը՝ Հ. Ա. Պալճեան Հին Դպրոցին կը պատկանէր: Ինչպէս կը պահանջէր ժամանակը՝ նոր ըմբռնման համաձայն պէտք էր բարեփոխուիլ լեզուն. Բանասիրաց ժողովը ի գլուխ հանած է զայս պատչաճեցնելով նաեւ ստուգաբանութեան դասական հայերէն բառեր եւ ասութիւններ: Ամէն թիւրիմացութեան առջեւն առնելու համար կցուած է աշխատութեան հայերէն–գերմաներէն–գաղղիերէն բառացանկ:

## Հ. ՔԵՐՈՎԲԷ ՍՊԵՆՆԵԱՆ

Ծնած է 1817 Մարտ 13ին Կ. Պոլիս. մտած Մխիթարեան վանքը 1831 Սեպտ. 26ին, ձեռնադրուած 1838 Սեպտ. 8ին, վախճանած 1886 Դեկտ. 2ին ի Վիեննա:

Երբ կը բաժնուէր Սպենեան Վարժարանէն՝ նոր սկիզբ առած էին հոն վէճերը դասական հայերէնի շուրջը: Նա հեռուէն կը հետեւէր վիճաբանութիւններու արդիւնքին. երբ պատկուեցան անոնք յաջողութեամբ՝ յարեցաւ խելոյն դասականներուն եւ մնաց մինչեւ իր կեանքին վերջը ջատագով դասական հայերէնի: Յաճախակի թղթակցութեան մէջ ապրած է Հ. Յ. Գաթըրճեանի հետ, որուն մեծ յարգողն էր. տեսանք զինքը առնարս մահամերձ Գաթըրճեանին: Ամենայն հետաքրքրութեամբ հետեւած է ի սկզբանէ անտի դասական հայերէնի շուրջը յուզուած



Հ․ ՔԵՐՈՎԲԷ ՍՊԵՆԵԱՆ

*խնդիրներուն. եւ անձամբ խորամուխ եղած ոսկեղէն դարու հայ մատենագրութեան ուսումնասիրութեան մէջ:*

*Որովհետեւ երկար տարիներ գործած է դպրոցական ասպարէզի վրայ, հարուստ չէ իր գրական աշխատութիւններու թիւը. բայց կայ անոնց մէջ երկասիրութիւն մը, որ պիտի անմահացնէ իր անունը դասական հայերէնի պատմութեան մէջ: Իր յորդորմամբ հանած է Հ. Գաթըրճեան* Քաղուածոյքն ի մատենագրութեանց նախնեաց:

*Դասական լեզուով իր աշխատասիրութիւններն են.*

1. Սրբոյ հօրն Բենեդիկտոսի Կանոնք, զոր թարգմանեալ է աշակերտաց մեծի հօրն Մխիթարայ: *Ի Վիեննա* 1842, 12°, *էջ* 144: *Լոյս տեսած սրբագրութեամբ Բանասիրաց ժողովոյն:*

2. Սաղմոսարան ի պատրաստութիւն եւ ի գոհութիւն Ս. Պատարագի [եւ Աղօթք ի պատրաստութիւն եւ ի գոհութիւն Ս. Պատարագի]. *Ի Վիեննա* 1884, 8°, *էջ* 216:

3. Ուսումն հայերէն դասական լեզուի (*անտիպ*): *Ծրագրած էր Բանասիրաց ժողովը առանձին աշխատութեան մը մէջ ամփոփել իր տեսութիւնն եւ նկատողութիւնները դասական հայերէնի եւ անոր առանձնայատկութիւններու մասին: Լոյս չտեսաւ*

*սակայն այս աշխատութիւնը։ Սպենեան, որ կը հետեւէր թէ՛ Բանասիրաց ժողովոյն աշխատանքներուն եւ թէ՛ իւրաքանչիւր անհատի բանասիրական հետազօտութիւններուն եւ անձամբ միջամուխ էր դասական հեղինակներու ուսումնասիրութեան, հաւաքեց ի մի ցիր եւ վայրավատին տեսութիւններն եւ դիտողութիւնները եւ կազմեց սեփական յօրինուածութեամբ «Ուսումն հայերէն դասական լեզուի»։ Այս տեղ տուած է դասական հայերէնի յատուկ եւ խորթ կէտերու ուսումնասիրութիւնը. ոսկեղէն մատենագրութեան առաւելութիւնները, նկարագրականները. եւ ոչ–դասական մատենագրութեան յատկանշականները, ի վերջոյ դասական լեզուի շուրջը յուզուած խնդիրները։*

*Այս ամէն կողմէն պատուական եւ շահեկան աշխատութիւնը դժբախտաբար մնաց մինչեւ օրս անտիպ։ Մեծ. Հ. Յ. Տաշեան 1900ին ձեռնարկած էր անոր հրատարակութեան ճոխ յաւելուածներով։ Ընտրուած ճոխ ծրագիրը հնարաւորութիւն տուաւ լոյս հանել գործին Ա.—Դ. պրակներն միայն եւ այսպէս հիւանդութեամբ հրատարակչին կասեցաւ կարեւորագոյն մասին հրատարակութիւնը։ Յուսանք սակայն թէ լաւագոյն ժամանակները հնարաւոր պիտի ընեն այս կարեւոր գործին տպագրութիւնը։*

## Հ. ՓԻԼԻՊՊՈՍ ՃԱՄՃԵԱՆ

*Կարեւոր դէմքերէն մէկն է Ճամճեան, որ բերած է մեծ մասնակցութիւն դասական հայերէնի վերանորոգութեան գործին մէջ, երկար ժամանակ գործած է Բանասիրաց ժողովին մէջ, եւ անուանի հայկաբաններէն մին եղած թէ՛ տեսականօրէն եւ թէ՛ գործնականօրէն։*

*Ծնած է Հ. Փիլիպպոս (նախկին անունն՝ Անտոն) Կ. Պոլիս,* 1819 *Օգոստոս* 3*ին։ Թէպէտ* 17*ամեայ եկած է վանք* (17 *Հոկտ.* 1836), *բայց ինչպէս խանդավառ երիտասարդ ոգեւորուած է շուտով հայերէն լեզուի նորոգութեան նախանձով եւ արագ ընթացքով հասած միացած դասականներու խմբին։ Քահանայական ձեռնադրութիւնը ընդունած է* 1844 *Սեպտ.* 8*ին։ Վախճանած է վաղամեռիկ* 1853 *Յունիս* 21*ին ի Վիեննա։*

*Ճամճեան բանասէր եւ լեզուագէտ երիտասարդ էր, տեղեակ բազմաթիւ հին եւ նոր լեզուներու։ Թէ՛ իբրեւ սննդակից Հ. Գաթրճեանի եւ թէ՛ իբրեւ աշակերտ, իւրացուց դասական հայերէնի ոգին բարձրագոյն չափով եւ հմուտ ծանօթութեամբ այլ եւ այլ լեզուներու նպաստեց մեծապէս՝ բանասիրական եւ բնագրաքննական աշխատութիւններով Բանասիրաց ժողովին՝ ճշդելու եւ ընտրելու դասական բառերու եւ ասութիւններու իմաստն եւ ազնուութիւնը։ Գոր–*

*ծեց ապա նաեւ իբրեւ խմբագիր* «Եւրոպա» *թերթին, ուր ունի բազմաթիւ բանասիրական հատուածներ: Թողլով մինչեւ հոս իր աշխարհաբար երկասիրութիւնները՝* Չորեքլեզուեան *եւ* վեցլեզուեան խօսակցութեան գրքերն *եւ* Վագների ի Հայս ճանապարհորդութեան *թարգմանութիւնը, որոնք հարուստ են բառամթերքով, թուենք իր վաստակները դասական հայերէնի համար:*

1. Հօրն Ադփոնսոսի Հրոդերիկեայ Հրահանգք կատարման եւ քրիստոնէական առաքինութեանց: Տոմար Թ. Գ. մասն Գ. գրոց: *Ի Վիեննա* 1844, 12°, *էջ* 316:

*Նուիրուած՝ «Առ մեծապայծառ եւ մեծապատիւ տէր Արիստակէս վարդապետ, արքեպիսկոպոս Կեսարիայ առաջնորդ համօրէն Մխիթարեանց Վիեննացւոց յաւուր տօնի անուանն», այսպիսի ընծայական խօսքերով.*

Կրկնեցան մեզ յամս քո
ամք բերրիք հօր մերոյ Մխիթարայ:
Դու ետուր մեզ զիղձս քո,
ա՛ռ ի մէնջ այսօր զարդիւնս նորա.
Սերմն էր այն եւ բուսոյց —
քեզ զայս զոր տեսանեն աչք քո
զուարճացեալք:
Մի խնդրե՛ր գտանել դարձուած
փոխանակ պարգեւիս մերոյ.
խնդութիւն քո ի ժամու
լի եւ կատարեալ հատուցումն
վաստակոց մերոց է:

*Ընծայականիս ոսկի խօսքերը ոչ միայն որդիական հայրագութ խղճեր կը բովանդակեն, այլ նաեւ չնորհամիտ որդւոց չնորհակալութեան եւ երախտագիտութեան հաւատիքը՝ փոխարէն այն հովանաւորութեան, զոր ցուցուցած էր Գեր. Ազարեան հանդէպ Մխիթարեան աչակերտներուն՝ մանաւորապէս դասական հայերէնի գիտոյն։ Ազարեանի կողմէն գիտոյն բարձր գնահատութիւնն եւ հաւանութիւնը, որ երիտասարդներէն դասական անուանուած հայերէնը պարտաւորիչ լեզու նկատուի Մխիթարնութեանս Վարժարանին եւ առ հասարակ հրատարակութիւններու մէջ, քաջալերիչ եղան նոր սերունդին աւելի խանդավառութեամբ պայծառացնելու գիտոյն արժէքը։ Այդ քաջալերութիւնը զովարար ջուրն էր նորատունկ ծառին ծաղկելու բարգաւաճ եւ առատապտուղ ըլլալու։ Այս անգամ Մխիթարեան Վարժարանը կ՚ընծայէ երեխայրիքը իւր բուրաստանին. եթէ համաձայն էր Մատենին բովանդակութիւնը նուիրաբերողներու խղճերուն, որոնք հաւատարիմ կրօնաւորական հրահանգներուն կ՚ուխտեն կանոնապահ ըլլալ, բաց սրտով առաջնորդի առջեւ եւ յօժար ունկնդիր անոր հայրական ազդարարութիւններուն, նաեւ Մատենին լեզուն կը ներկայացնէր իւր յատակութեամբն, բառերու ընտրութեամբը, ընտիր հայկաբանութեամբը հաւատարիմ այն*

սկզբունքներուն, զոր փափագած էր Ազարեան տեսնել իր որդւոց դրչին տակ։

Ծամճեան այդ օրը (Յունիս) դեռ կղերանոցի մէջ կը գտնուէր, տակաւին չէր ձեռնադրուած։ Եւ եթէ նկատի առնենք թէ 24 տարեկան էր, 7 տարիէ ի վեր կը գտնուէր Մխիթարեան Վարժարանի մէջ, պիտի ըմբռնենք թէ ի՛նչպէս կարճ ժամանակի մէջ յառաջադէմ նկրտած է հայկաբանութեան մէջ եւ թափանցած Ե. դարու խորհելու կերպին եւ իւրացուցած ճաշակը։ Անշուշտ չատ բան պարտական էր Հ. Յ. Գաթրրճեանի եւ Հ. Մատաթիա Գարագաշեանի, որոնք իր ուսուցիչներն եղած էին։

Դժբախտաբար թարգմանութեան նիւթը չափազանց անձուկ շրջանակի մը համար միայն հետաքրքրական եւ ընթեռնլի ըլլալուն, չէ գտած մատեանս մուտք ընդարձակ շրջաններու մէջ եւ այսպէս աննկատելի մնացած թարգմանութեան արուեստի ճարտարութիւնը, լեզուին վսեմութիւնը, հրապոյրն եւ գեղեցկութիւնը։

Բարեբախտաբար կայ հրապարակի վրայ այս գրքին երկրորդ թարգմանութիւն մ՚ալ, կատարուած մեծանուն եւ յայտնի բանաստեղծ եւ հայկաբան Հ. Մկրտիչ Աւգերեանէ, Հայկազնեան լեզուի Բառգրքին հեղինակէն[1]։

[1] Երանելւոյն Ալփոնսոսի Հռոզերիկկայ Ցիտուսեան կրօնաւորի ճառք. Թարգմանեայ Հ. Մկրտիչ Վ. Աւգերեան։ Վենետիկ 1854։

Թէեւ այս թարգմանութեան մէջ տեղ տեղ համառօտուած է բնագիրը, բայց եւ այնպէս կարող ենք բերել համեմատութեան համար հատուածներ, ցոյց տալու թէ որպիսի՛ ճաշակով եւ ընտիր հայկաբանութեամբ գիտէ Ճամճեան հայացնել օտար բնագիրներ:

ՃԱՄՃԵԱՆ, էջ 3—5:

Ա. Ցերախտին զոր աստէն ի վանս ընդ մեզ արար Տէր, կարի մեծ է եւ այն՝ զի այսչափ եւ այսպիսի կանոնօք եւ խրատուք սրբովք եւ հրահանգօք ամրացուցանէ զմեզ, եւ որպէս թէ չուրջ իմն պատեցէ. զի այնպէս ի սաստկութենէ բռնութեան մերոյն թշնամեաց անկասկածք եւ զգուշագոյնք լինիցիմք: Նմին իրի եւ կարի իսկ ի դէպ Հարքն սուրբք զիրատոն ուխտարանականս՝ պատուարի իմն քաղաքի եւ արտաքին պատնիշի նմանեցուցանեն: Զի որպէս քաղաքի յայնժամ առաւել պահպանութիւն եւ ամրութիւն է, յորժամ ոչ պարիսպ միայն՝ այլ եւ պատուար եւս գուցէ. քանզի թէպէտ եւ արտաքինս այս ամրութիւն քանդեալ յերկիր կործանիցի ի թշնամեաց անտի, կայ մնայ տակաւին ներքին պարիսպն՝ որում յաղթելն պարտ է, յորմէ եւ արգելեալ մերժին. այնպէս եւ վանորայն կրկին իմն պարսպօք ամրանայ եւ պատի. «Քաղաք զօրութեան մերոյ Սիոն, փրկիչ կացցէ ի նմա՝ պարիսպ եւ պատուար»: Զի նախ ամրական անառիկ պարսպաւ իւրոցն օրինաց եւ պատուիրանաց, ապա եւ այլով իմն արտաքին պատնիշաւ կամ պատուարաւ, կանոնօք ասեմ եւ հաստատութեամբք վանաց ամրացոյց զմեզ եւ պատեաց Աստուած, զի յորժամ թշնամիքն ի մեր վերայ յարձակիցին, քանզի հանապազորդ եւ մշտնջենաւոր կռիւ է նոցա ընդ մեզ, յարտաքին կազմութիւնս աշխատ լինիցին եւ լքցին, մինչ չեւ ի հարկանել զներքին ամ-

բուժութիւնս հասանել. եւ եթէ ուրեք երբեք վճարիցեն ինչ, ի պատուարէ աստի միայն մասն ինչ քանդել յերկիր ընկենուցուն. այլ բուն ներքին պարիսպ օրինաց եւ պատուիրանացն Աստուծոյ անեղծ եւ անվթար հաստատուն մնացէ, եւ զմեզ ողջս եւ անարատս պահեսցէ:

Յայտ ամենայնէ որ այլատացիկ բարբառով տառցան, յայտ իմն առնի եթէ այս առանձինն չնորհք Աստուծոյ են պարգեւեալ կրօնաւորաց, զի փորձութիւնքն՝ յորոց պատերազմն կրեն, թէ յաղթիցեն ինչ, ի փոքու ինչ կանոնի միայն յանցուցանիցեն, որ ոչ ինչ ի ներելոյ մեղս համարիցէ. զոր եւ դու աստէն ի վանս առաւել մեծ իմն համարիս, քան թէ յաշխարհի ի մեծամեծս ինչ մեղուցեալ էիր:

## ԱՒԳԵՐԵԱՆ, էջ 315—316:

Ա. Ի կարգի բարերարութեանց Բարձրելոյն առ մեզ ի կրօնի՝ երեւելի է եւ այս, զի բազմապատիկ կանոնօք եւ խրատուք սրբութեան ամրացուցանէ եւ պատեալ պարապէ, զի անքոյթ լիցուք ի բռնութենէ թշնամեաց մերոց:

Բ. Վասն այնորիկ իմաստութեամբ սուրբ հարք զխրատս աւետարանականս կոչեն պատուար եւ պատնէշ արտաքին քաղաքիս այսմիկ. զի ունի զպարիսպ եւ զնախապարիսպ ամենայն քաղաք ամուր. որպէս զի թէ արտաքին վտանգեսցի ի թշնամւոյն՝ ի ներքնաբերդ անդր ամրանալ լիցի. նմանապէս իմա եւ զկրօնէ. յորոյ ի տիպ ասէ ամոլածինն. «Ահաւասիկ քաղաքս զօրացեալ, եւ փրկութիւն մեր կանգնեսցէ պարիսպս եւ պատուարս»:

Գ. Քանզի նախ ամրացոյց եւ պատեաց զմեզ մեծազօր եւ անառիկ պարսպաւ օրինաց եւ պատուիրանաց իւրոց, եւ զկնի արտաքին պատուարաւ կանոնօք եւ սահմանադրութեամբ կրօնի. զի թէ թշնամիք հողւոց խախտեսցին իւիք զարտաքինս զայս նախապա-

ըխալ՝ որ եւ պատուար սա, անխախտ պահեսցուք զներքին պարիսպն պատուիրանաց։

Դ. Այլաբանութիւնս զայն յայտ առնէ, թէ առանձին շնորհ է այս կրօնաւորաց՝ առ դիւրաւ յաղթելոյ վերահաս փորձութեանց. զի թէ իւիք գթեսցեն ի կանոնս, չլինիցի մեղք ինչ. այլ զգուշութիւնն ի պահպանութիւն նոցին՝ որպէս յաշխարհի լինէր զգուշանալ ի պատուիրանապահութիւն, տացէ կրօնաւորաց չանկանիլ երբեք ի պատուիրանազանցութիւն։

## ՃԱՄՃԵԱՆ, էջ 47—49։

Ա. Այր մեծատուն եւ հզօր զօրութեամբ էր Նեեման, որպէս ի թագաւորագիր մատեանս կարգեալ կայ, եւ Ասորւոց արքային բարեկամ, իբրեւ զի իշխան հրամանատար ի վերայ զօրաց նորա կայր. այլ զգածեալ էր բորոտութեամբ։ Սա իբրեւ ծանեաւ թէ մարգարէ ի Շամրտացւոց քաղաքին կայ Եղիշէ անուն, որ զամենայն ազգ հիւանդութեանց բժշկէր, նա եւ զմեռեալս իսկ ի կեանս կոչէր, հրովարտակ եւ թուղթ ընծայութեան առնույր յարքայէն Ասորւոց առ թագաւորն Իսրայէլի, զի յորժամ եկեալ հասեալ զհրովարտակն մատուցանիցէ, անդէն գնա ի բորոտութենէն աւաքիցեն։ Արդ այսպէս մեծաւ կազմութեամբ եւ բազմութեամբ կառացն եւ երիվարաց դէմ եդեալ խաղայր հասանէր ի Սամարիա, եւ իբրեւ գայր կայր առ դուրս տանն Եղիշայի, հրաման տայր ծառայիցն՝ զի ի ներքս անդր հրովարտակաւ հանդերձ մտանիցեն։ Այլ Եղիսէի չելեալ արտաքս առ Նեեման, առաքէր առ նա ասել. «Երթ լուա եւթն անգամ ի Յորդանան, եւ դարձցի մարմին քո եւ սրբեսցիս»։ Զայրացեալ Նեեմանայ ընդ պատասխանիս ընդ այս. «Ես ասէի, ասէ, թերեւս ելցէ առ իս եւ կացցէ յաղօթս եւ կարդասցէ զանուն Տեառն Աստուծոյ իւրոյ, եւ դիցէ զձեռն իւր ի վերայ տեղւոյս եւ աւաքեսցէ զբորոտութիւնս». եւ ահա ոչ այլ ինչ ասաց, բայց

մինչ զի լուացայց ի Յորդանան. «ո՞չ լաւ իցեն Նա-
բանա եւ Փարփարա գետք Դամասկոսի քան զամենայն
ջուրս Իսրայէլի. եւ ընդէ՞ր ոչ երթայց եւ լուացայց
ի նոսա եւ սրբեցայց: Արդ ի բաց գնասցուք աստի,
քանզի եւ ոչ վասն այսորիկ հարկ ինչ ինձ ի վերայ
կայր գալ այսր այնչափ աշխատութեամբ»: Եւ մինչ
դեռ դարձուցեալ զերեսս կամէր գնալ, այնու զի զայս
անարգ իմն եւ արհամարհ կարծէր, մատուցեալ ծա-
ռայքն իմաստնագոյնք քան զնա, «Հայր, ասեն, եթէ
մեծ ինչ բան խօսեցեալ էր ընդ քեզ մարգարէին, ո՞չ
ապաքէն պարտ էր առնել, թող թէ զի ասաց, լուացիր
եւ սրբեցիս»: Յաղթեցաւ հաւանեցաւ Նեեման, գնաց
ի Յորդանան եւ մկրտեցաւ անդէն եւթն անգամ եւ
յետ լուանալոյն «Դարձաւ մարմին նորա իբրեւ զմար-
մին մանկան մատաղոյ եւ սրբեցաւ»: Արդ յայն ինչ,
որ նմայն անարգ եւ արհամարհ կարծէր, հաստատեալ
կայր առողջութիւն եւ բժշկութիւն նորա: Այսպէս եւ
ի հոգեւորս դիպի. զի ի դուզնաքեայ եւ ի մանրա-
մասն իրս անդ, զոր կանոնքն սահմանեն, մեր առող-
ջութիւն եւ յառաջադիմութիւն եւ կատարումն եղեալ
է: Նոյնպէս եւ պատկերի իրիք կատարումն եւ վայել-
չութիւն ի նշանախեցս ինչ եւ ի նրբագոյն գիծս կայ:
Արդարեւ թէ առ ըմբռնել զհոգեւորն առողջութիւն
եւ զյառաջադիմութիւն եւ զկատարումն՝ դժուարինս
ինչ եւ դժնդակս ասէաք, ո՞չ ապաքէն պարտ էր քեզ
առնել, եւ զվաստակն զոր յայն ծախէիր, համարել
թէ ի բարւոք պէտս ծախի եւ պաշտի. իսկ արդ ո՞ր-
չափ եւս առաւել յորժամ զդիւրինս ասեմք վասն այնմ
հաստատելոյ: Նմին իրի այն՝ զի կանոնք վասն այնպիսի
դիւրին իրաց են եւ փոքունց, չէ պարտ թէ մեզ ծու-
լութեան եւ անփութութեան պատճառք լինիցի, այլ
մանաւանդ քաջալերելոյ եւ զօրանալոյ առ այնց պահ-
պանութիւն. որովհետեւ տեսանեմք, զի յայսպիսի եւ
յայսչափ փոքր եւ դիւրին իրս բովանդակեալ կայ մեր
օգուտ եւ կատարումն:

ԱՒԳԵՐԵԱՆ, էջ 338—339։

*Ա․ Նեէման տարի՝ այր հզօր եւ փառաւոր, որ եկն առ Եղիսէ մարգարէ ի դարման բորոտութեան իւրոյ, իբրեւ լուաւ՝ զի ասէր այրն Աստուծոյ, «Երթ լուա եօթն անգամ ի Յորդանան, եւ դարձցի մարմին քո, եւ սրբեսցիս»․ բարկացաւ այրն, եւ ասէ․ «Ես ասէի, թերեւս ելցէ առ իս, եւ կացցէ եւ կարդասցէ զանուն տեառն Աստուծոյ, եւ դիցէ զձեռն իւր ի վերայ տեղւոյս, եւ ատաքեսցէ զբորոտութիւնս․ ո՞չ լաւ իցեն գետք Դամասկոսի... եւ ընդէ՞ր ոչ երթայց, եւ լուացայց ի նոսա, եւ սրբեցայց»․ եւ կամէր դառնալ սրտմտութեամբ։ Իսկ ծառայք նորա իմաստնագոյն քան զնա գտեալք՝ ասեն ցնա․ «Հայր, եթէ մեծ ինչ բան խօսեցեալ էր ընդ քեզ մարգարէին, ո՞չ ապաքէն պարտ էր առնել, թող թէ զի ասաց, լուացիր, եւ սրբեսցիս»։ Յայնժամ անսաց, եւ արար ըստ բանին Եղիսէի․ եւ դարձաւ մաքրեցաւ մարմին նորա իբրեւ զմարմին մանկան մատաղոյ, եւ սրբեցաւ։ Տեսանե՞ս՝ զի ի փոքուն յայնմիկ, որ արհամարհ ինչ թուեցաւ Նեէմանայ, հաստատեալ էր առողջութիւն եւ կեանք նորա։ Յարեւնման այսմ ի հոգեւորս հանդիպի․ զի զթեթեւ իրաց եւ զգոյզն կանոնաց կախեալ կայ յոլովակի եւ կեանք հոգւոց մերոց․ վասն որոյ մի՛ եւ զփոքումբք իրօք քամահեսցուք, այլ առաւել զնդապահ լիցուք․ զի անքոյթ լիցի բարին մեր փափաքելի, եւ մի՛ կորուսցուք զառիթս չահեկանս։*

2․ Տովբիթ․ Փլորիանու վիպասանութիւն հանեալ ի Գրոց սրբոց։ *Թարգմանեաց Հ․ Փիլիպպոս Ճամճեան։ Ի Վիեննա* 1849, $4^0$, *էջ ժ* + 13։

*Նուիրուած է Մխիթարեան Միաբանութեան կողմէն «ի բարենշան աւուր մեծապայծառ հարսանեաց ազնուական եւ հոյա-*

կապ Միհրանայ Չելեպւոյ Տիւզեանց»: Ըն–ծայականը, գրուած գործին սկիզբը, կ'ար–տայայտուի·

### ԱԶՆՈՒԱԿԱՆ ԵՒ ՄԵԾԱՇՈՒՔ ԻՇԽԱՆ

Ի զուարթ մարգաց Նինուէի Երբեան ժիր պատանեակ
Ըզսուրբ ծաղկանց իւր յըղէ զՈսկիդարեան ըզմանեակ
Ու իւր դրայի աշխարհին մեծ դիւցանց Շառաւիղ,
Որ ըզնախնիսն ըզգեցեալ՝ ճեմի նոյուն ի շաւիղ:
Զի յասպարէզ Դու ելեր՝ Այրարատեան սիրտ ցընծայ·
Զանձըն քո, քա՛ջ, նըշմարեա իբր՝ հայելւոջ յայս
ընծայ:
Քեւ բարգաւաճ՝ մեր ազգիս եւ Հայակապ Քոյ զարմին
Եղիցին փառք· Ա՛ստըղ նոր, ծագեսցես նոր Իմարմին:
Գանձ մեծազին հայրենեաց՝ բազմութիւն սուրբ զա–
ւակի·
Ազնիւ զարնան, որպէս Քոյն, ազնիւ եւ հունձք հա–
ւաքի:

Գաղղիացի մատենագրին Ֆլորիանի գող–տրիկ բանաստեղծութեան հայերէն թարգ–մանութիւնն է: Իւր աշխատութեան մասին կը գրէ թարգմանիչը· «Զան յանձին կալաք զպարզութիւն նորա (այսինքն սկզբնագրին) եւ զբնականն վայելչութիւն լի բովանդակ եւ ի հայ այսր հանել ճշգիւ, եւ զհանդարտ եր–գիչ բարձրարերձ լերանցն Սըւեննայ եւ զխտա–ղալից դաշտաց Մասանայ, ըստ իւրում հե–զութեանն եւ ըստ մեղմական զգօնութեան տակաւին մի ածել ճեմեցուցանել եւ յամե–նածին հովիտս Արարատայ»:

Թարգմանութեան չափ ընտրուած է

3—3—4—3· *ճաշակի համար յառաջ կը բերեմ հատուածս.*

**Տովբիդ կը սպասէ իւր որդւոյն՝ Տուբիայի.**

*Էր, էր արդ հասեալ ժամ*
*զի Տուբիա պատանի*
*Ըզկեանս հօրն եղկելւոյ*
*դիցէ յագնիւ պայմանի։*
*Մինչ նա գնաց, ծերունին*
*կացեալ տըրտում առանձին*
*Համարէր ըզնորայն*
*դարձի վայրկեանս որ անցին։*
*Հանապազ տառապեալ՝*
*Դրանց Նինուէի մօտ գայր նա.*
*Ցամբաքնաց գընացիցն*
*առաջնորդէր միշտ Աննա.*
*Ալեւորն որ առ ուղւոյն*
*նըստէր միայն միայնուկ,*
*Առ անցնիւր ուղեւոր*
*տարածանէր զիւր բազուկ.*
*Վարէր գնայր անցաւորն,*
*եւ Տովբիթ կայր անդ լուռ մուռ,*
*Ցուսոյ թէ՛ւ ակն ունէր,*
*Թէպէտ եւ այն խակ ի զուր։*
*Սողալով ընդ լերինս,*
*որ շուրջ կային, նորա կին՝*
*Ջաչսածեալ ըզվայրօք՝*
*դէտակն ունէր որդեկին.*
*Զո՛վայր նա, զի չետես*
*զորդին աղեաց եւ զընտիր,*
*Եւ լըռէր ի լալոյ՝*
*անդրէն լինել ի խընդիր։*
*Այլ որդին գայր մօտէր.*
*զիւր յամելոյն ամբաստան,*

Եւ զանդեայն արարեալ
  յիւրեանց հովիւն ապաստան,
Ցառաջեաց հրեշտակաւ:
  Մօրն՝ որ դիտէր իւկ յայգուէ՝
Ցակն անկաւ յանկարծուստ,
  զի գայր ճեպէր ի Նինուէ:
Ձի մի յամր ինքն հասցէ,
  առ Տուբիթ անդըր պընդէր,
Այլ արագ քան զնա շունն՝
  էր իւկ ծերոյն աընթեր,
Ծանուցեալ նա զիւր տէր
  հաջէր կոընչէր, տայր քըծինս,
Առնէր յայտ զգութ սիրոյն
  եւ զիւր խայտանս բընածինս:
Ձաշացուն հէք առնոյր
  ի միտ յայն ձայն զոր լըւաւ,
Թէ այսրէն ի Տեառնէ
  որդին ողջամբ նմա տըւաւ.
Եւ վաղեաց նա ի վեր,
  դողդոջ ոտիւք եւ ընդ փոյթ՝ —
Տարածեալ զիրկս՝ երթայր,
  ոչ առաջնորդ գոյր, ոչ մոյթ:
Որդեա՛կ իմ, գոչէր նա,
  դու ես, դու ես․․․: Եւ յանյոյս՝
Պատանեակն արտասուօք
  դիմեալ գայր յիւր գոգըն կոյս.
Ծերն ըզնա ընկալաւ,
  զնովաւ պատեալ փարէր կայր,
Լի առնոյր ըզճաշակ
  ընդգըրկելով զնա յերկար:
Հայրենին իւր ձեռամբ,
  առ չըգոյէ իւրն աչաց,
Զայն մեծ բախտ՝ զոր դեռ ոչ
  կարծէր ըստոյգ, ճըշմարտեաց:
Անդուստ մայրն հասանէր՝
  սիրտ ի բերան, կաթոգին,

*Հրաշակերտ բարձրաձայն*
*ըղձոյն տեսիլ մեծագին,*
*Ամենայն ակն հեղոյր*
*խնդութեան յորդ արտասուս,*
*Հրեշտակն անդ համարէր*
*թէ յերկինս եմ, չիմ դասուս:*

3· Բառգրքարան իտալերէն–գաղղիերէն–հայերէն–տաճկերէն· Nuovo dizionario italiano–francese–armeno–turco compilato··· dai Padri della Congregazione Mechitarista· Vienna 1846, 8° *մեծ*, էջ 1120:

*Շատ քիչերուն ծանօթ է Բառագիրքս, այս պատճառաւ ալ նուազ գնահատուած է անոր արժէքը: Թէեւ նպատակն է առ ձեռն առաջնորդ ըլլալ հայ մանկտւոյն իտալերէն լեզուն սորվեցնելու, բայց յիրականին կը ներկայանայ Բառագիրքս շտեմարան մը համբարելու իր ծոցը դասական հայերէնի բառամթերքը: Մխիթարեան հարց անուան տակ հրատարակուած է Բառագիրքս, գլխաւոր աշխատակիցն եղած է սակայն Հ· Փ· Ճամճեան, որ երկար տարիներ նուիրած է անոր եւ ջանացած է շտեմարանել հոն արդիւնքը այն հունձքին, զոր ոսկեդարեան մատենագրութեան լայնատարած դաշտին վրայ հընձած էր ինքը իւր ընկերներուն, յատկապէս Բանասիրաց ժողովոյն անդամներու հետ: Ի մի ամփոփուած են հոս դասական հայերէնի այն բոլոր բառերն ու ասութիւնները, որոնք մանրակրկիտ ուսումնասիրութեամբ,*

ճշդուած իմաստով եւ բաղդատութեամբ յոյն բնագիրներու ճանչցուած են ընտիր եւ ընդունելի։ Ցօրինուած են նաեւ շատ բարդութիւններ, համաձայն դասական հայերէնի սկզբունքներուն։

Սքանչելի է հոն մանաւանդ համանիշ բառերու ճոխ համադրութիւնը։ Իբրեւ այսպիսի աւելի հա՛յ լեզուի ուսման համար մեծարժէք է Բառագիրքս. թէեւ ամէն խնամք տարուած է նաեւ իտալերէն բառերու իմաստն ճշդիւ ներկայացնել գաղղիերէն եւ տաճկերէն լեզուներով։

Յառաջաբանը, ուր դասական հայերէնի սկզբունքներու մասին բացատրութիւն կը տրուի, արժանի է առանձին մտադրութեան։

Կարեւոր մասերը յառաջ կը բերեմ հոս ամբողջութեամբ.

«Բ. Զհայերէնն արժան էր յատակագոյն յօրինել, մանաւանդ թէ ամէն աւելագոյն ունել փոյթ եւ հոգաբարձութիւն իբրեւ մերում սեպհականի, որչափ ինչ տեղին եւ իւրացն ժամանակքն առնուցուն յանձն։ Նմին իրի իսկ ամենեքին ի բարբառարանս, յորս նոր կամ հին լեզու նոցա ի մէջ խառնիցի, բազում իմն հոգաբարձութիւն ի կիր արկանեն, զի այն իսկ է պատեհ տեղին, եւ որպէս յայտ յարդեանց իւրացն է, ի ձեռն այսպիսի գրոց ե՛ւ լաւն ե՛ւ յոռին զանցնիւր միտս իբրեւ երանգ ինչ հաստատուն անդէն ի սկզբանն ներկանէ։

Գ. Արդ յառաջ քան զամենայն, որչափ յուժի կայր, աշխատ եղեաք զգոյշ լինել եւ զգուշացուցանել յամենայն օտարոտի եւ ի մուրացածոյ բանից եւ անուանց, որ սպրդեցին մտին ի լեզու մեր, յամենայն խոտոր նշանակութեանց, որ ի միտս բազմաց մինչեւ ցայսօր տնկեալ կան. որպէս Իշխանաւոր, Մարդավար, Շամանդաղ, Մարդելոյզ, Բանիրուն, ի կիր արկեալք իբրեւ Իշխան, Կրթեալ, Մանրամաղ փոշի, Սուտակապատ, Գրագէտ, որ ըստ նախնեաց նշանակէին Հպատակ, Մարդածախ, Մէգ, Մարդադող եւ Ճարտարախօս: Եւ միանգամայն իսկ աւել ըստ կարի խորշեցաք յայնմ ամենայնէ, որ ձեռնհաս էր իւիք խանգարիչ եւ պղտորիչ յստակութեան մերոյ լեզուիս լինել: Ընտրութեան անդ զՍակի դարու գրիչս միշտ նախամեծար արարաք, որպէս եւ կարգ արդարութեանն պահանջէր, եւ յորդորէր տեղեկացն միաբան հաւանութիւն. բայց սակայն ուր պակասէր ուրեք ինչ ի սոսա, զայն յերկրորդականաց անտի ըստ պատշաճութեանն լցուցաք. իսկ ի կարի յետինսն բազում անգամ վստահ չկարացաք լինել, եւ ոչ առանց այլ ինչ հաւանեցուցիչ պատճառաց ի նոցա վկայութիւնն միայն յենուլ, քանզի կամ ամենեւին գռեհիկ էին, կամ լի անհնարին օտարոտի բանիւք, յորս չերեւին ինչ նշմարանք գրոց բարբառոյ: Այս ընտրութիւն մասն մի ինչ գլխաւոր ի մասանց լեզուացն գիտու-

թեան է, մինչ զի ամենեւին իսկ զարմանք ունին զմարդ, յորժամ միտ եդեալ նայիցի թէ ո՛րչափ այն փոյթ զգուշութեան եւ անաչառութիւն է զոր անդատին խնդրանէ վասն սոցին իրաց ի կիր արկեալ վարեն ազգքն բաղդատանք որոց կիրթ ճաշակելիք են եւ առողջք քիմք։ Թէ այնպէս իցէ, ապա ի մոլորութիւն ուրեմն կործանէաք, եթէ խառն ի խուռն վարեալ՝ խտիր ի միջի ոչ դնէաք, կամ թէ զառաջինն, զազնուագոյնն եւ զբունն յամենայնի իսկ եւ ի բնաւի կշիռ հաւասարակ յետնոցն, եւ հանդիսապատիւ խոնարհագունից եւ բազում մատամբք եղծելոց համարէաք[2]։ Որ հմուտքն եւ ճշմարտասէր քննիչք եւ իրաւընտիրք են, կարող են վկայութիւն հաստատութեան մատուցանել բանիցն ասացելոց։

Դ. Բայց եւ ոչ այս ընտրութիւն շատ եւ բաւական էր, այլ պիտոյ էր յամենայնի եւ աւելագոյն ի գիտութիւնս ճշդութիւն եւ անուանք նորոգք. վասն այնորիկ եւ մեր երկրորդ հոգաբարձութիւն զսոցունց էր։ Միով միայն գոյր հնար ի կէտ անդր հասանելոյ, այն իսկ է քննելովն եւ խուզելով թէ ո՛րպէս կամ ո՛րզունակ մեր նախնիք զայս նիշ կամ զայն նիշ անուն թարգմանեցին, յոր եւ բազում դիւրութիւն նպաստ լինէր անուանեալն

² Զայս ընտրութիւն իմաստուն եւ հաստատուն պատճառօք ընծայեցուցէ քեզ Նկարագիրն ուսմանց. Վիեն. 1845, էջ 25—46։

Նոր բառգիրք, երկայնժամանակեան գործ մեծարգոյ Հարց Սրբոյն Ղազարու, եւ մանաւանդ բազմապատիկ մատենագրութիւնք եւ թարգմանութիւնք նախնեաց. զի այս մատեանք են, որ բազում կարեւոր եւ նորագիւտ անուանս մատակարարեցին, յորոց մինչեւ ցայսօր զրկեալ գտանէր բարբառ մեր, որպէս թէ չունէր անդուստ ի վաղուց, եւ եթէ պէտք ինչ նոյնպիսեացն լինէր, հնարեալքն եւ կարկատեալք գրաւեալ ունէին զնոցին տեղի: Բայց բազում անգամ հարկ եղեւ մեզ վասն պէսպէս պիտոյից անձամբ ի խոյզ արկեալ որոնել զհին եւ զնոր մատեանս ոչ գրոշմեալս, եւ ընթանալ անդր իսկ ի բուն աղբերս յունական օրինակաց գրոցն թարգմանելոց, նա եւ ուրեք ուրեք քննել զարաբացին եւ զպարսիկն առ մտաց հայերէն անուանցն քաջ ի վերայ հասանելոյ: Այսպիսի աշխատութեամբ բազում անուանց միտք եւ զօրութիւն յայտնագոյն եւ ուղղագոյն գործեցաւ, եւ ոչ սակաւ նորագիւտք ի մէջ եկին: Այլ զորս միանգամ յետ գրոշմելոյն գտեալ է մեր, եւ ի բուն կարգի անդ գրոցս չիք, զայն ի յաւելուածին խնդրեալ գտցես:

Ե. Այլ յորժամ ի նախնեաց անտի չգտաք առ այժմ զանուանսն որ պիտոյ էին եւ կամ չգոյր իսկ հնար գտանելոյ վասն նորոգ իմն գիւտիցն լինելոյ, հարկ լինէր այնուհետեւ նորս ինչ մարթել յօրինել. այլ ոչ եթէ այնմ

հարկէ զիջաք ամենայն ուրեք, եւ ոչ իբրեւ տէրութեամբ եւ իշխանութեամբ ի վերայ լեզուին ձեռն արկաք ժպրհել յանդգնել անուանս անխտիր ստեղծանել, այլ յորժամ անհնարին կարեւոր էին եւ հարկ ի վերայ կայր ստէպ արկանել ի կիր, եւ միանգամայն յորժամ մարթ էր հաստատուն եւ անկասկածն կանոնօք ինչ յօրինել: Ուր այս ամենայն պայմանք ի միասին միանգամայն գտան, յայնժամ նոր ինչ հայերէն անուն իշխեցաք կազմել, եւ այն մեծաւ երկիւղածութեամբ· այս ինքն, վասն մէն մի անուան, զոր յօրինելն կամէաք, հինգ, վեց, տասն եւ երբեմն յիսուն եւ աւելի եւս օրինակս նոյնպիսի անուանց ի նախնեացն գիրս գտեալ եւ ստուգեալ զնոցին կանոնս, նման նոցին յօղեցաք, կամ զնոյնպիսի յօղելս յայլոց ընկալաք· որպիսի ինչ Ipotenusa, Ներքնաձիգ (Հակուղիղ)· Elioscopio, Արեւադէտ· Trapezzoide, Սեղանակերպ (տրապիզիտ, տրապիզեան քառանկիւն)· Zecca, Լումայանոց (փողերանոց)· նոյնպէս Կռնաւաքաղ (Թռչուն), Շնչափոխութիւն, Բարբառարան, Հեռագրութիւն, Երկնախօսութիւն, Շոգենաւ, Շոգեկառք, այլովք հանդերձ: Այլ երբեմն եւս վասն վայելչութեան երկոքումբք անուամբք զիրան յայտ արարաք· որպիսի ինչ Margravio, Սահմանակալ կոմս· Buzzago, Ջրամարգագ անդղ, եւ այլք· զորոց ամենեցունց վստահութեամբ մարթեմք ասել, թէ երկայն քննու-

թեամբք եւ խորհրդովք, եւ որպէս հաւանեցուցիչ պատճառօք հաստատեալ են: Եւ թէպէտ, որպէս մարթ է եւ յօրինակացդ եղելոց առնուլ ի միտ, ի յօրինել մերում զանուանս զայսոսիկ, յոլովագոյնս քննեալ յաւելցաք զայլ եւս հին եւ զնոր լեզուս զհամեմատս մերում բարբառոյ առ ի զտանել ի նոսին անուանս յօղուածոյս եւ ըստ մտացն թարգմանել վայելչութեամբ. սակայն մեծապէս զգուշացաք առնուլ մուծանել ի նոյանէ ի մեզ անուանս այլազգիս եւ օտարս: Այլ ավին ոչ եթէ զաղատութիւն լեզուին, զոր ի ամին ըստ իւրում չափու վայելէ, բառնալ ինչ կամէաք. վասն որոյ ուր այնպիսի էին անուանքն, զի չէր ինչ մարթ նոցին հայերէն վայելուչ անուանս կազմել, որպէս Սղաթ, Զինկ, Ագկաղի եւ այլք, յայնժամ զնոսին առեալ եդաք, սակայն զնշանագիրն փոխեցաք զի մի մեզէն ինքնակամ եւ առանց ինչ պատճառաց խոտորեցիմք ի կանոնէն, զոր այնպէս միաբան եւ անխախուտ յամենայն իսկ ի գիրս իւրեանց, պահեցին նախնիքն որ իշխանքն են լեզուին. որպիսի ինչ Բաղսամոն, Ագկիոլն, Կորալիոն, Ցակինթ, Ցասպիս եւ այլ եւս նոյնպիսիք. ընդ որ հայեցեալ եւ մատենագրաց յետին դարուց ուր հարկ իմն էր բանս ինչ ուսմանց յայլոց լեզուաց առնուլ հանապազ փոփոխելով զնշանագիրն առնուլն, որպէս Հորիզոն, Զոդիակոս, Զենիթ, Նադիր, Ազիմութ, Ապոգէ,

այլովքն հանդերձ: Իսկ ուր ոչ այնչափ ինչ կարեւոր էին անուանքն, կամ կարի խիտ մանր խրաց էին, եւ կամ կարօտ առաւելագոյն քննութեամբ, նոցին առաջի առ այժմ համառօտ մեկնութիւնս միայն կարգեալ, այլում գործոյ եւ ժամու պահեցաք միում միում ի նոցանէ ճշգրիտ հայերէն անուանս պատշաճեցուցանել կամ դնել: Օրինակք նախնեացն ուղղագրութեան հաւանեցուցին զմեզ բազում ուրեք ա, եւ երկբարբառովք դրոշմել զանուանս, որպէս բազում անգամ առնէր եւ բազմահմուտ մեծարգոյ Հայր Գաբրիէլ Վարդապետ Աւետիքեան եւ այլք ի տեղեկաց. բայց ոչ եթէ օրէնս ինչ սահմանեմք աստէն ի մին, թէ արդեամբք այնպէս պարտ իցէ ընթեռնուլ:

Զ. Բազում անգամ վասն դիւրիմաց զմիտս բանից գործելոյ նշանս տառեղ ի կիր արկաք զայնպիսին ի սովորական անուանց անտի, որ կամ գռեհիկք էին, կամ թիւրեալք ըստ նշանակութեան, եւ կամ տակաւին կասկածելիք. նշանս տառեղ դրոշմեցաք դարձեալ եւ ի վերայ այնոցիկ, որ յօրինեալ էին օտար եւ ոչ ուղիղ ճաշակաւ. որպիսի ինչ Մականուն, Բաղհիւսական, Ընթակայութիւն, Որակութիւն, Արտունութիւն, Ներտարամագրեալ, Տրամախոհութիւն, Բացասել, Ստոտանել եւ այլք բազումք, զորոց իմաստութեամբ զնոյն զատատատան զատեցաւ եւ բազմատեղեալ մեծարգոյ Թարգմանիչն Բանա-

կան արուեստին Սուաւէի [3], եւ զբաղումս ի նոյանէ իբրեւ եկամուտ եւ խուժդուժս ի բաց Թողեալ, գաղնուագոյնան եւ զբունան կարգեաց եդ ի տեղւոջն: Զայսմ ամենայնէ եւ զորոց մինչեւ ցայսր խօսեցաք, յառաջագոյն իսկ ճառեալ է մեր յայլեւայլ գիրս [4] եւ նոյնպէս արարեալ· եւ աստէն այնչափ ինչ միայն ճառեցաք, որչափ կարեւորն էր առ ի ծանուցանելոյ զկարգն եւ զպայման, որով վարեցաք ի մատենիս: Թէպէտ եւ գիտեմք, զի առ քաջ եւ ուղիղ իմանալոյ զբովանդակութիւն այս ամենայն կարգաց եւ ընտրութեան՝ երկայնագոյն բանից պէտք էին, սակայն զայնր ամենայնի զընդարձակագոյնն բացում այլ կարեւորօք հանդերձ հաստուացուք յառանձինն մատենի, ուր պէսպէս օգտակար տեղեկութիւնք ընծայասցին մերազգեայ ժողովրդեան, եւ նախնեացն ազգի ազգի կանոնք, որ մինչեւ ցայժմ անյայտ են մնացեալ կամ Թէ սակաւուց ծանուցեալ, ի լուսաւորութիւն գայցեն»:

—

---

[3] Բանա. Արուե. Սուաւ. Վեննետ. 1825· ի սկիզբն, Թարգմանիչն առ Ընթերցօղս· եւ էջ 314, 332, 333, եւ այլ բազում ուրեք:

[4] Համ. Բառարան Տճկ. եւ Հայ. Վիեն. 1841· Յոջր.: Բնական Պատմ. Վիեն. 1842· Յոջր.: Ճարտաբախօս. Վիեն. 1844· Յոջր.:

Յիշենք այս տեղ նաեւ

Համառօտ բառարան տաճկերէն–հայերէն յօրինեալ ի Հ· Յակովբոս Վ· Պօզաճեան: Վիեննա 1841, 8°, Բ· տպ·, 1858, 8°:

Գործիս բառերուն զտութեան եւ ճոխութեան նպաստամատոյց եղած են Պօզաճեանի երիտասարդ աշակերտները, Գարագաշեան, Գաթըրճեան, Յովնանեան եւ այլն:

## Հ· ՍՐԱՊԻՈՆ ԷՄԻՆԵԱՆ

Հ· Գաթըրճեանի աշակերտներէն է Էմինեան: Ծնած է 1823 Յուլիս 23ին Կ· Պոլիս· իբրեւ 15ամեայ պատանի մտած է վանք 1838, Սեպտ· 8ին: Ձեռնադրուած է 26 Հոկտ· 1845 եւ վախճանած վաղամեռիկ 12 Դեկտ· 1854, ի Վիեննա:

Դասական հայերէնի վերածնութեան դարուն ապրած, ընդունած է ինքն ալ կայծ մը այն կրակէն, որ հրդեհած էր Մխիթարեան Վարժարանը: Այս Գաթըրճեանի եւ Գարագաշեանի առաջնորդութեան տակ զարգացաւ աւելի յառաջագէմ: Իւրացուցած դասական հեղինակներու խօսքի եւ արտայայտութեան նկարագրականները, ձուլած զանոնք իր քնքոյշ եւ նուրբ արտայայտութեան ձեւին հետ ընծայած է իր գրչին տակ բարբառ մը, որ քաղցրախօս եւ փափուկ հնչիւնով կը գերազանցէ նախորդները եւ զգալ

*կու տայ ոսկեղէն լեզուի հմայքը իր երանդներուն մէջ:*

32*ամեայ վախճանեցաւ Էմինեան: Իր թարգմանութիւնները խորհրդապաշտ* (mystique) *բովանդակութեամբ չեն գտած տարածում. բայց անոնք պիտի մնան թանկագին գոհարներ հայ մատենագրութեան մէջ, իբրեւ յաջողագոյն երկեր նոր դասական լեզուով:*

1. Հ. Նիկ. Աւանկինեայ վարք եւ վարդապետութիւն Յիսուսի Քրիստոսի բաժանեալ ի մտածութիւնս վասն աւուր տարւոյ: Թարգմանեաց Հ. Սրապիոն Էմինեան: *Ի Վիեննա* 1848, 12°, *էջ ԺԱ* + 655:

*Անծանօթ թարգմանութեանս՝* 1852*ին թարգմանած է մասեանս նաեւ Հ. Ռափայէլ Երկայնեանց (Ուզունեան) «ի լատին բնագրէ»: Ուզունեան Հին Դպրոցի աշակերտ էր, Վիեննայի Մխիթարեան Միաբանութենէն: Որպէս զի տուիթ ընծայեմ ընթերցողներուս ծանօթանալու Էմինեանի ոճին եւ թարգմանութեան արուեստին, կը դնեմ հոս երկու հատուած այս կրկին թարգմանութիւններէն:*

ԷՄԻՆԵԱՆ, էջ 162:

*Ա.* Եւ վաղվաղակի մատուցեալ առ Յիսուս ասէ, ողջ եր վարդապետ, եւ համբուրեաց ընդ նմա (*Մատթ. ԻԶ*): *Մատնեաւ վաղվաղակի անամօթագոյն եւ նենգութեամբ, երեսք զուարթագինք էին նորա, այլ ի սրտին մթերեալ կայր թոյն ժանտաբեր: «Որում զմահաբեր զարանոն զործէր, նմա ողջոյն տայր» ասէ*

Վիկտոր անտիոքացի։ Վարդապետ կոչէ, յորոյ աշակերտութենէ զրժեալ ի բաց կայր։ Համբուրէ, «Լըրբեալ եւ ժտեալ զգլխաւոր նշանակ սիրոյ՝ գործի սատանայի առնել» (Ս· Ամբր·)։ Եթէ տեսանէիր դու զայդ ամենայն, զի՞ա՛րդ կշտամբեալ յանդիմանէիր զնա վասն այնպիսի բանից եւ գնացից։ Եւ սակայն ո՛րչափ մեծ չար այն է զոր դուդ գործես։ Զէ բաւական զարտաքին նշանակս եւեթ բարւոյ քրիստոնէի եւ վանականի ընծայեցուցանել։ Տես զուցէ թոյն չարաթոյն ի ներքս ծածկեալ կայցէ։ Արդարեւ ոչ կշտամբեսցես ի մարդկանէ, այլ յԱստուծոյ դատեսցիս՝ որում ամենայն ինչ յայտնի է։

## ՈՒԶՈՒՆԵԱՆ, ձեռագիր, էջ 341—342։

Ա· Եւ վաղվաղակի մատուցեալ առ Յիսուս ասէ· ողջ եր՝ վարդապետ· եւ համբուրեաց ընդ նմա (Մատթ· ԻԶ· 49)։ Մատեաւ վաղվաղակի· որչափ անամօթարար· նոյնչափ կեղծաւորապէս· զուարթ երեսօք, թունաւոր մտօք։ *Որում զմահացու նիւթեր զարանս, նմա զողջոյն մատուցանէր, ասէ Վիկտոր Անտիոքացի։ Վարդապետ կոչէ· յորոյ աշակերտութենէ անզգամութեամբ մեկնէր։ Համբուրէ· *իշխելով զգլխաւոր նշան սիրոյ կազմած սատանայի գործել (Ս· Ամբրոս· ի ԻԲ գլ· Ղուկ·)։ Եթէ տեսեալ էր քո զայսոսիկ՝ զի՞նչ ի բանս եւ ի գործս սոսկեալ էր քո։ Եւ սակայն ո՛վ մեծի չարեացս։ Զէ չատ ցուցանել զարտաքին նշանս միայն քաջ քրիստոնէի կամ կրօնաւորի։ Տե՛ս զի մի՛ ի ներքս թոյն զօղիցի։ Ո՛չ տրտմեցիս ի մարդկանէ, այլ զատեսցես յԱստուծոյ։

## ԽՄԻՆԵԱՆ, էջ 169—170։

Ա· Ածին զնա առ Աննա (Յովհ· ԺԸ)։ Որ ինչ ինչք անցին ընդ նա զճանապարհայն՝ դիւրագոյն եւս իցէ քեզ ըղձիւք ժողովել եւ նկարել ի մտի, քան բա-

*նիւք յանդիման կացուցանել։ Ո՛րչափ այլազգ այսօր երեւի տեսիլ այնորիկ որ յԸրուսաղէմն մտանէր, քան զայն որ սակաւիկ մի յառաջագոյն։ Իբրե՛ւ զի զարմանալի են միտք մարդկան որ արագ արագ փոփոխին ի խնդութենէ ի կատաղութիւն, ի գովութեանց ի Թշնամանս, եւ ի մեծարելոյ յանարգել։ Եւ դու յուսայցե՞ս ի մարդ։ Հաւանեցո զանձն քո զի զամենայն որ ինչ միանգամ դժնդակութիւն մարմնոյ, որ ինչ զրկանս պատուոյ մարթիցես ածել զմտաւ՝ զամենայն զայն Տեառնն մեծվայելչութեան հասուցին։ Վշտակից լեր վշտացն. զքեզ ծանիր նմին պատճառս. սարջացիր։ Եւ յորժամ տեսանիցես զՅիսուս զի յամենայնի լուռ կայ, ուսիր եւ դու սրբով իմն լռութեամբ զրկանաց հասելոց ի վերայ որ յոյժ նուազագոյնք քան զնորայն իցեն, եւ կամ թերեւս ի միտս եւեթ նկարեալ՝ ժուժկալեալ համբերել։*

ՈՒՉՈՒՆԵԱՆ, *ձեռագիր*, *էջ* 357—358։

Ա. Եւ ածին զնա առ Աննա (*Յովհ. ԺԸ.* 13)։ *Թէ զի՛նչ յայսմ ճանապարհի եղեւ՝ սրբագոյնս ի սրտի քում խոկա՛, քան թէ ի բան բերցես։ Ո՛րպէս ա՛յլ տեսարան է այսօր այնմ որ յԸրուսաղէմ մտանէ, եւ ուրեք կանխաւ։ Զի՛արդ յեղյեղուկ են միտք մարդկան. յուրախութենէ ի մոլեգնութիւն, յօրհնութեանց ի նախատինս. ի սպասուց յայպանս։ Եւ հաւատայցե՞ս մարդոյ։ Զոր ինչ նեղութիւնս մարմնոյ, զորինչ անիրաւութիւնս պատուոյ մարթ է քեզ զմտաւ ածել՝ հաւատա՛ թէ զայդ ամենայն արարին Տեառն մեծվայելչութեան։ Կարեկի՛ց լեր, ծանի՛ր զքեզ պատճառ. ապաշաւեա՛։ Եւ մինչդեռ ակնարկես ի Յիսուս, որ առ բնաւս լռէ, ուսի՛ր սուրբ լռութեամբ զկարի փոքրագոյնս հասուցեալս քեզ, կամ թերեւս զըմբռնեալ եւեթ զրկանս անցուցանել։*

Կ՚ըսուի աւանդութեամբ թէ Հ. Ա. Բագրատունի երբ ձեռք առած է թարգմանութիւնս, գոչած ըլլայ. «Այս գրքի վրայէն մտածական աղօ՞թք ընեմ թէ հայերէն սորվիմ»: 1848ին, Օգոստոսին, երբ կը նաւէր Գարագաշեան դէպի Զմիւռնիա, իր ուղեկցին՝ Յովհ. Ասլանեանին կը մատուցանէր գիրքս ըսելով. Առ կարդա՛ մատեանս, որ Ս. Սահակի եւ Մեսրոպի ոսկեդարեան հայերէնով գրուած է. եւ օգտուելով առիթէն կը ճառէ դասական հայերէնի յատկութիւններուն վրայ:

2. Յիշատակարան քահանայական վարուց կամ մեծի հովուապետի Յիսուսի Քրիստոսի. խրատք ոգէշահք առ հովիւս Եկեղեցւոյ իւրոյ եւ առ այլ քահանայս: Թարգմ. Հ. Ա. Էմինեան: *Ի Վիեննա* 1852, 12°, *էջ* 358:

3. Երեքլեզուեան բառագիրք, այս ինքն գաղղիերէն–հայերէն–տաճկերէն. զոր յօրինեաց Հ. Ա. Վ. Էմինեան: *Ի Վիեննա* 1853, 8°, *Բ. տպ.* 1871:

---

## Հ. ԵՓՐԵՄ ՋԱԳՐՃԵԱՆ

*Ծնած է* 30 *Յունուարի* 1824 *Կ. Պոլիս. վանք եկած* 1 *Յուլիս* 1839: *Ձեռնադրուած է* 1 *Նոյեմբ.* 1845 *եւ վախճանած* 1911, *Դեկտ.* 23 *Կ. Պոլիս:*

*Իր ընկերներէն եղած են Այտընեան, Էմինեան, Սիպիլեան եւ այլն: Աշակերտած է Գա–*



Հ. ԵՓՐԵՄ ՁԱԳՐՃԵԱՆ

*թըրճեանի: Իր աշխատութիւնները՝* Հայոց Պատմութիւն *եւն գրուած աշխարհաբար, պիտի չըլլայցնեն զմեզ հոս: Զաղըճեան իբրեւ աշակերտ Գաթըրճեանի եւ Գարագաշեանի եւ ուսումնակից Ճամճեանի, հետեւած է դասական հայերէնի ուսման եւ ձեռք բերած անչափ հմտութիւն: Թէպէտ մէ՛կ գործ միայն ունի դասական հայերէնով, բայց այն մէկին մէջ ալ կը փայլի իր ճաշակը շատ բարձր նրբութեամբ:*

1· Մ· Տ· Կիկերոնեայ Ղեղիոս կամ վասն Բարեկամութեան առ Տ· Պոմպոնիոս Ատտիկոս: Թարգմանեա՛ց Հ· Եփրեմ Զագըճեան: *ի Վիեննա* 1852, 4°, *էջ* 50:

*Մխիթարեան Միաբանութեան կողմէն նուիրուած է մատեանս ի նշանակ խնդակցութեան «ի բարենշան աւուր ուրախութեան հանդիսի հարսանեաց քաջատոհմ եւ ազնուական Գրիգորիկ Պէյի Ալլահվերտեան»:*

*Երկրորդ դասն է նոր թարգմանչաց, որ լեզու կ'առնէ հոս եւ հրապարակ կ'ելլէ: Թէ՛ թարգմանութեան արուեստն եւ թէ՛ դասական լեզուն կը նրբանայ, կը կատարելագործուի· անոնք մեծ ուսուցիչներու ձեռնասուններն են եւ կը գործեն անոնց առաջնորդութեան տակ: Թերին կ'ուղղուի, ճաշակի աւելի ուշադրութիւն կը դարձուի, հնչականութիւնը, մեղմական հոսանքը աւելի զուարթութիւն, կենդանութիւն կը զարթուցանէ:*

*ժամանակը հաստատութիւն, կենդանութիւն, առնականութիւն բաշխած է լեզուին:*

*Ընծայականը գեղեցիկ ծաղկեպսակի մէջ այսպիսի ուղերձներ կը մաղթէ պսակաւորներուն.*

*«Զհոյակապ քաղաքին զՀիւպատոն քաջանուն, յայտարար իմոյ ցնծալից ուրախութեան քեզ, Քա՛ջդ, յղեմ: Զջերմեռանդն իմ զիղձս փոխանակ ընդ իմ սա քեզ բարբառեսցի: — Կացցէ անթարշամ յամայր ամս պսակն բոլորաձեւ՝ զոր այսօր քո զարդաթն ընդունիս: Ցաճախեսցին փառք Արամայ՝ ի յաճախել քոց ծննդոց, զոր եւ մաղթէ Ուխտս, լինել քեզ ի հազարս եւ ի բեւրս»:*

*Պէտի ուզէի մատրուակել ընթերցողներուս բաժակ մը բարեկամութեան ճառէս, եթէ չունենայի երկիւղ, թէ յառաջբերութիւններու յաճախութիւնը պիտի չըլլայ գդլխէ:*

2. Նոր բարբառարան համառօտ հայերէն–տաճկերէն. զոր յօրինեալ է Հ. Եփրեմի Զագրենեան: *Ի Վիեննա* 1850, 8°, *էջ* 465:

*Հայերէն նոր բառագրքի պահանջքը հարկ դրած է հեղինակին վրայ, ձեռնարկել աշխատութեանս: «Զի ոչ մանկանց միայն եւ անտեղեկաց հայերէն լեզուի, այլ եւ յառաջադիմելոցն եւ զարգացելոց ի նմին չահաւէտ լինիցի մատեանս, զամենայն անուանս եւ զոձս մատենագրաց Ոսկեղէն դարուն եդաք ի նմին, յորոց միջի են եւ բազում անուանք՝*

*որ զայս առաջին նուագ ի նախնեացն մատենից արտաքս ելեալ՝ ի կարգ անուանց բարբառարանացն մտին. Հանդերձ սոքիմբք եւ* զբազումս յանուանց յետին մատենագրաց, եւ զայն եւս՝ որ յայժմու մատենագրաց յօրինեալ իցեն՝ կարգեցաք»։ *Ոչ-դասական մատենագիրներէն ներս առնուած են յատկապէս Ղ. Փարպեցւոյ, Եղիշէի եւ Մ. Խորենացւոյ բառերը, որոնք աշակերտաց ձեռքը սովորական ընթերցանութեան նիւթ էին ոչ-Վիեննական Մխիթարեանց դպրոցներու մէջ։*

*Շատ ցաւ է, որ այնպիսի Համեղաբան դրչէն չեն ծորած ուրիշ գործեր դասական հայերէնով։*

## Հ. ԱՐՍԷՆ ԱՅՏԸՆԵԱՆ

*Ծնած է* 1823, *Յունուար* 20*ին Կ. Պոլիս, Վիեննա հասած* 1835 *Օգոստ.* 12*ին. ձեռնադրուած* 1845 *Նոյեմբ.* 1*ին. Աբբահայր ընտրուած* 1886 *Օգոստ.* 18*ին. եւ վախճանած՝* 1902, *Յուլիս* 21*ին ի Վիեննա։*

*Թէպէտ* 12*ամեայ մտած է Մխիթարեան Կղերանոցը, բայց ցուցուցած է մտքի վաղաժամ արթնութիւն եւ գեղարուեստասէր ճաշակ։ Իր աղերսը Գաթըրճեանի հետ եղած է եղբայրական եւ սերտ։* 1840*ին, երբ Գաթըրճեան կը ձօնէր իւր ուղերձը Գարագաշեանին եւ ընկերներուն, առթիւ անոնց ձեռնադրութեան, Այտընեան գեղեցիկ նկարա-*



Հ· ԱՐՍԷՆ ԱՅՏԸՆԵԱՆ

գարդութեամբ կը պճնէր շրջանակը: Իբրեւ ուշիմ պատանի հետեւած է գրական շարժման, որ սկիզբ առած էր իր աչքերուն առջեւ: Ապա իբրեւ ձեռնասուն Գաթըրճեանի աւելի խորացած է դասական հայերէնի ուսման մէջ եւ իր սուր յիշողութեամբ, ճաշակընտիր քիմքով եւ լեզուագէտի հանճարով վարպետ հանդիսացած: Անձամբ ականջալուր եղած եմ 1900—1902 տարիներուն, թէ ինչպէս Այտընեան կը պատմէր ոգեւորութեամբ 1838—1840 տարիներու գրական շարժման մասին. իսկ իր դասական հայերէնի նրբութիւններուն անհամեմատ հմտութեան վկայ են իր կրկին Քերականութիւնները:

Դասական հայերէնի վարպետիս գրչէն փոքրիկ ճառ մը միայն ծանօթ է ինձ տպագրութեամբ, այն ալ առանց հրատարակութեան մնացած: Եթէ ուղիղ է թէ Առիւծը ըղունգէն ալ կը ճանչցուի, աչքի առաջ ունենալով Այտընեանի այս թարգմանութիւնը, պիտի հռչակեմ զինքը դասական հայերէնի գերագոյն վարդապետը: Ծանօթացանք դասական հայերէնով անուանի շատ հեղինակներու, մին քան զմիւսն սքանչելի, բայց Այտընեան կը խլէ պսակը ամէնուն ձեռքէն, ինչպէս ինձ կը թուի: Նա գիտցած է գեղեցկին, վսեմին տալ նաեւ գեղարուեստական գոյն եւ երաժշտական ներդաշնակութիւն: Չեմ տարակուսիր թէ այս կատարելութեան նպաս–

*տած է նաեւ մեծ ուսուցիչը՝ Գաթըրճեան, որուն ձեռքին տակ կ'աշխատէր Այտընեան:*

*Այս գրուածքը առանց ճակատի վերնագիր կը կրէ.*

Ճառ երրորդ վասն ուխտի աղքատութեան:

*Բուն մատենին խորագիրը պիտի ըլլար՝*

Հօրն Աղփոնսոսի Հրոդերիկեայ վասն երից ուխտից վանական կենաց:

*Որուն մասերն են՝*

*ա.* Վասն ուխտի աղքատութեան.

*բ.* Վասն ուխտի զգաստութեան.

*գ.* Վասն ուխտի հնազանդութեան:

*Այտընեան թարգմանած է այս երեք մասերն ալ, եւ 1846ին յանձնած տպագրութեան: Հնարաւոր եղած է սակայն ստանալ Ա. (= Գ.) ճառին տպագրութիւնն միայն եւ այնպէս ընդհատուած: Ունիմ աչքիս առաջ ձեռագիր Բ. (= Դ.) եւ Գ (= Ե.) ճառերու թարգմանութիւնն ալ:*

*Պիտի չուզէի առանց ճաշակ մը տալու այս գրուածքէն՝ բաժնուիլ անկէ:*

*Համեմատութեան պիտի դնեմ Հ. Մ. Աւգերեանի թարգմանութիւնը:*

ԱՅՏԸՆԵԱՆ, էջ 73—76:

*Բ. Երկուց իրաց միայն կամի Հայրս մեր զի զգուշ կայցեմք վասն հանդերձի. մի՝ վայելչութեան եւ պարկեշտութեան, եւ երկրորդ՝ զի զմեզ ի ցրտոյ պահել բաւական իցէ, զի վասն երկուց այսոցիկ՝ հանդերձից ագանելոյ սկիզբն եղեւ, եւ այս իսկ է նորին վախճան: Եւ նոյն դարձեալ է վարդապետու-*

թիւն երանելւոյն Բարսղի որ յայս տօնի զԱռաքելոյ ասացեալն է, «Ունիմք կերակուր եւ հանդերձս, եւ այնու շատասցուք»: Ցորում վայրի մի ումն ի Սրբոցն ասէ. Մեա գիր, ասէ, կերակուր ասաց Առաքեալ, եւ ոչ փափկութիւնս, եւ հանդերձ եւ ոչ եթէ պաճուչքեղութեան: Պարտ եւ պատշաճ է մեզ կարեւորօքն եւեթ շատանալ. եւ զաւելին քան զայն՝ որ ինչ փառաւորութեան է եւ ընդունայնապարծ փառաց, ամենեւին իսկ արտաքոյ վանացն մերժել հանել տարագիր, եւ մի՛ իւիք օրինակաւ ներել, վասն զի ընդունայնութիւն է եւ աշխարհական իրք: Ո՛ն անդր ի բաց տար զայն ամենայն. մի՛ մացէ աշխարհ ընդ այս՝ ի ներքս:

Որչափ եւ քանիոն վասն սոյին իրաց զանգիտեալ երկնչէր երբեմն ի վանսն իւր սուրբն Փրանկիսկոս: Զի, որպէս ի ժամանակագրութիւնս նոցա գրեալ աւանդի, մի ումն յիւրոցն՝ Եղբայր Եղիա անուն, այր մեծանուն երեւելի, որ եւ պաշտօնեայ համօրէն վանացն կացուցեալ էր, հանդերձս երկայնս եւ փառաւորս արար իւր, լայնեալ ձգեալ թեզանեօք՝ յաղնիւ ինչ եւ ի ծանրագին նիւթոյ: Զնա կոչեցեալ սրբոյն Փրանկիսկեայ յանդիման առաջի եղբարց բազմաց ժողովելոց, հրաման տայր ի բաց մերկանալ զհանդերձն զայն զոր զգեցեալն էր: Եւ ապա ինքնին Երանելին առեալ արկեալ զանձամբ զհանդերձն, սկսանէր կապել խորշս խորշս զմիջովքն, եւ յարդարէր զքուսիթայն, կրկնէր եւ զթեզանիսն զբազկօքն. եւ այնպէս մեծաւ շքեղութեամբ պերճացեալ յորանայր: Ցայնժամ ուրեմն եւ զպարանոցն ի վեր ուղղեալ, այտուցեալ լանջօքն՝ ի մէջ անցեալ այնպէս շրջէր գնայր, ճեմս առեալ յամրագնաց գնացիւք: Եւ անդէն ձայն արձակեալ ծանր եւ հնչական՝ առ եղբարսն մօտակայս բարբառեալ ասէ. Ողջոյն ընդ ձեզ, ազգ մեծարեալ: Զարմացեալ յապուշ հարեալ կային եղբարքն, իբրեւ տեսինն եւ լուան զոր ինչ գործէր եւ ասէր այրն երանելի: Ապա յետ այնորիկ մեծաւ

եռանդմամբ եւ նախանձու բորբոքեալ, լի ցասմամբ զայրագին մերկանայր զհանդերձն, եւ խոտէր անարգէր, եւ հանեալ յիւրմէն ընկենոյր ամենայն զօրութեամբն ի բաց: Եւ ցնցղայրն Եղիա առէր լու ի լու ամենեցուն. Այս ա՛յդպէս զգեցեալ շրջին որդիք օտարացեալք՝ կարգաց վանականութեան: Եւ մնայ ինքն խորձ զձուձ եւ անպաճոյճ եւ նեղ եւ կարճ զգեստուն, եւ զդէմս երեսացն ի զուարթութիւն հեզութեան փոփոխեալ ամօքախառն քաղցրութեամբ ընդ եղբարսն սկսանէր բարբառել, եւ բազում մեղմական զգօնութեամբ զամենայն հեզութիւն եւ զաղքատութիւն եւ զխոնարհութիւն ուսուցանէր նոցա:

Եւ արդ, ե՛ղբարք, մի՛ լիցուք խորթք եւ որդիք օտարացեալք ի կրօնաւորութենէ, այլ լիցուք որդիք հարազատ, որպէս զի ամենայնիւ գտանիցիմք նմանող մօր մերում արդոյ, որ է ինքն աղքատութիւն:

## ԱՒԳԵՐԵԱՆ, էջ 84—85:

Ե. Ընդ վայելչական պարկեշտութեան եւ զայն է գիտել, զի հանդերձն պաշտպանեսցէ զմեզ յերեսաց ցրտոյ, յոր կարգեալ իսկ է: Վասն որոյ ի բանն Պօղոսի, «Ունիմք կերակուր եւ հանդերձս, եւ այնու շատասցուք», ասէ սուրբն Բարսեղ. «Տես, զի առաքեալն ասէ, կերակուր ի սնունդ, եւ հանդերձ ի ծածկոյթ. եւ ոչ հեշտալիս փափուկս, կամ զգեստս պատուականս»: Մեզ բաւական պարտի լինել հարկաւորն. իսկ մեծածախն եւ փառացին ի բաց տարադրելի է ամենայն իրօք:

Զ. Գրի ի քրոնիկոնն Մինորից, թէ եղբայր Եղիա այր երեւելի յայնմ կարգի, որ եւ եղեւ հանրական առաջնորդ, արար իւր զգեստ երկայն ի բարակ չուխայէ, փայլուն, եւ թեզանաւոր: Կոչեաց զնա սուրբն Փրանկիսկոս ի մէջ եղբարց, եւ ասաց տալ ինքեան զայն զգեստ փառացի: Եւ առեալ զայն՝ արկու ի վերայ զգեստու իւրոյ, յարմարեաց զծալս առ լանջօք, զկնգուղն ի գլուխն, եւ զթեզանիսն ծալ ի ծալս՝ բատ

*աշխարհիկ ձեւոյ: Եւ սկսաւ ճեմս առնուլ ահիպարա-նոց եւ լանջաւորաց, եւ սիգաքայլ ոտիւք. եւ ահեղա-ձայն բարբառով եւ իշխանական պերճութեամբ ողջոյն տայր բոլորից. Ողջ լիք ժողովեալքդ պատուաւորք: Եւ մինչդեռ զարմացեալ կային եղբարք ընդ անակ-նունելի գործ եւ բան առն Աստուծոյ, նա յանկար-ծակի իբրեւ զայրացեալ յոգի իւր՝ ի բաց եհան յանձնէ զզգեստն զայն զգօփ, եւ արհամարհանօք ըն-կէց հեռագոյնս ի բաց. եւ առէ ցնզիս լուիլու ամե-նեցուն. Այսպէս ազանին եւ ճեմեն օտարախորթ որ-դիք կարգիս: Եւ այնպէս մնացեալ իւրով զձուձ ձեւով, եւ զդէմս ի հեզութիւն զուարթութեան փո-խեալ, քաղցրութեամբ խրատեաց զնոսն՝ յորդորե-լով յաղքատութիւն եւ ի խոնարհութիւն: Այս եւ մեք, աղաչեմ եղբարք, մի՛ լինցուք խորթացեալ զա-ւակք կրօնիս, այլ որդիք հարազատք. զի յամենայնի նման գտանիցիմք մօր մերում՝ սուրբ աղքատութեան:*

Շատ ցաւ է, որ չէ հասած մեզի Կիկե-րոնեայ վասն Միլտոնի ճառին Թարգմանու-թիւնը, զոր կատարած էր Այտընեան նոյն դասական լեզուով:

## Հ. ՍԱՄՈՒԷԼ ԳԱԹԸՐՃԵԱՆ

Հ. Յովսէփ Գաթըրճեանի կրտսեր եղ-բայրն է Հ. Սամուէլ, ծնած է 1827 Մարտ 19ին Կ. Պոլիս, վանք եկած 1841 Յունիս 2ին, ձեռնադրուած 1850 Հոկտ. 13ին, վախճանած 1895 Ապր. 12ին, ի Տրիեստ:

Վայելած երկար տարիներ իր եղբօր վե-րակացութիւնը Կղերանոցին մէջ՝ ուսած է առ այս մեծ ուսուցչին նաեւ հայերէն լե-զուն: Դժբախտաբար չէ ունեցած նա նոյն

*Եւանդը նշանաւոր Հանդիսանալ դասական Հայերէն Հեղինակութիւններով: Թերեւս նաեւ ժամանակի ճաշակին փոփոխութիւնը պատճառ եղած է առ այս, երբ աւելի աշխարհաբարը կը փնտռուէր: Եւրոպա Թերթին իբրեւ աշխատակից սկսաւ մաս առ մաս հրատարակել հոն* Տարւոյն չորս եղանակներու *նկարագրութիւնը, որ լոյս տեսաւ առանձին հատորով ալ: Ունի աշխարհաբարով ուրիշ աշխատութիւններ ալ, տաղեր եւ ձեռագիր:*

*Իր հմտութիւնն Դասական հայերէնի մէջ երեւան կը բերեն՝*

1· Երանելւոյն Յովհ· Ոսկեբերանի Կոստանդինանուպօղեայ եպիսկոպոսապետի յԱռ Եբրայեցիս թուղթն Պաւղոսի: Ճառ ԼԴ· ի բանն որ ասէ· Ունկնդիր լերուք առաջնորդաց ձերոց եւ հպատակ կացէք նոցա, այլովքն հանդերձ· ժԳ· 17: *Ի Վիեննա* 1855, 8°, *էջ* 16:

*Ճակատին վրայ ոչ Թարգմանչին անունը կայ եւ ոչ ալ Թարգմանութիւն ըլլալու մասին ակնարկութիւն: Ուզուա՞ծ է արդեօք նոր Թարգմանութիւնս իբրեւ հին մը ներկայացնել: Յաւանդութենէ լսած եմ Թէ Հ· Սամուէլ Գաթըրճեան է անոր Թարգմանիչը, Թարգմանած յունարէն սկզբնագրէն:*

*Հայերէն հին թարգմանութենէն հասած է փոքրիկ հատուած մը միայն, հրատարակուած 1862ին Ոսկեբերանի Պաւղոսի թղթոց Մեկնութեան Բ. հատորին մէջ, էջ 567: Յառաջ կը բերեմ հոս այս հատուածը, Նոր թարգմանութեան հետ:*

Հին թարգմանութիւն:

*«Հնազանդ լերուք առաջնորդաց: Զինչ, ասէ, թէ չար ոք է, հնազանդի՞մք: Զար զիա՞րդ ասես. թէ հաւատոյն աղագաւ, փախիր ի նմանէ. մի՛ միայն թէ մարդ իցէ, այլ թէ եւ հրեշտակ յերկնից իջեալ: Ապա եթէ յաղագս վարուց, մի քննիցես... Լուր Քրիստոսի որ ասէ. «Յաթոռն Մովսէսի նստան դպիրքն եւ փարիսեցիքն»... ունին զպատիւ, բայց վարուք են անմաքուր. արդ մի՛ ի վարսն, այլ ի բանսն նայեցարուք. քանզի ի վարուցն եւ ոչ ոք վնասի...: Քանզի «մի դատիք զի մի դատիցիք» վասն վարուցն է եւ ոչ վասն հաւատոյն»:*

Նոր թարգմանութիւն:

*Հնազանդ լերուք առաջնորդաց... Իսկ զի՞նչ, ասէ, յորժամ չար առաջնորդն իցէ. եւ չկայցեմք նմին հպատակ: Ի՞ր աղագաւ կոչիցես զնա չար: Եթէ վասն հաւատոյն՝ խոյս տուր եւ խորշեաջիր ի նմանէ, ո՛չ միայն յորժամ մարդ ոք լոկ իցէ, այլ եւ հրեշտակ եւս իջեալ յերկնից: Ապա թէ չար ասես վասն բարուցն եւ գնացից, զայդ մի՛ ինչ քննեալ որոննեցես: Եւ զայս ոչ եթէ ես յանձնէ ինչ ասիցեմ, այլ յաստուածեղէն գրոց անտի ունիմ. լո՛ւր զինչ Քրիստոսն ասաց. «Յաթոռն Մովսիսի նստան...»: Անցեալ ունին, ասէ, զբարձ ուապութեան, բայց կեան կեանս անսուրբս: Բայց ո՛չ եթէ գնացիցն այլ բա-*

*նիցն նոցա միտ դիք մա-
նաւանդ։ Վասն գնացիցն
նոցա չկրիցէ ինչ ոք
տուժս։ Եւ ընդէ՞ր։ Քանզի
յայտնի իսկ է այն եւ ծա-
նօթ ամենեցուն, եւ ոչ
ինքն ինչ առաջնորդն,
թէպէտ եւ բիւր չարեաց
պատճառպարտ իցէ, չար
ինչ երբեք ուսուցանիցէ։
Այլ վասն հաւատոցն։
Քանզի այնու՝ զի չէ այն
յայտնի ամենեցուն, ոչինչ
զանգիտիցէ ժանտն հակա-
ռակս ինչ ուսուցանել։ Եւ
այն եւս, թէ «Մի՛ դատիք՝
զի մի դատիցիք», վասն
վարուցն ասացաւ եւ ոչ
վասն հաւատոյ»։*

*Հին թարգմանութիւնը, ինչպէս բաղմակէտներէն կը տեսնուի, շատ համառօտուած ձեւի մէջ հասած է եւ այս պատճառաւ տկար է համեմատութեան եզրը նորին հետ որ ջանացած է պայծառ եւ լուսաւոր ըլլալ։ Դասականներու խորհելու կերպը, մանաւորապէս արտայայտութեան ձեւը զգալի է Գաթըրճեանի քով։*

2· Վճիռ զոր հանեալ է Պրոսպերի Ակուիտանեայ ի գործոց Սրբոյն Աւգոստինոսի։ Թարգմանեաց ի լատիներէնէ Հ· Սամուէլ Վ· Գաթըրճեան։

*Թարգմանութեանս տպագրութիւնը խափանուած է իր սկզբնաւորութեան մէջ, յայտնի չէ ի՛նչ պատճառով: Ձեռագիրը կը պահուի Մխիթարեան Մատենադարանի մէջ:*

*Հ. Սամուէլ Գաթըրճեան ունի ընտիր* տաղեր *Մխիթարեան Տաղարանին մէջ:*

## ՀՐԱԺԵՇՏԻ ԽՕՍՔ

Հնչեց ժամը բաժնուելու հայ հումանիստներու մեծարեալ կաճառէն։

Ծանօթացանք դափնեպսակ հումանիստներու հետ, որոնք անցուցին իրենց կեանքի գարունը՝ ինչպէս մեղուներ՝ ծաղկալից ծաղկազարդ մարգերու վրայ, հաւաքելու փոշինները ծաղիկներու եւ գործելու մեղր հայ գրականութեան համար։

Վայելեցինք անոնց անոյշ բերքը եւ ուարթացան մեր քիմքերը։

Ինչպէս ծանր է մեզի այժմ հրաժեշտը անոնց բանաստեղծական կաճառէն, նոյնպէս դժուարին եղաւ այդ մեղուներուն բաժանումը փեթակէն եւ ծաղկալից դաշտերէն։

Կեանքի պայմանները պահանջեցին հեռանալ․ չնչեց քամին, ու ինկան անոնք հեռու մարգերէ անապատներ, ուր կոչեց զանոնք իրենց կոչումը։ Անոնց բազմազբաղ գործունէութիւնը դպրոցական եւ այլ ասպարէզներու վրայ չներեցին արածիլ ծաղկազարդ մարգերու վրայ․ երկարժամանա–

կեայ անգործութիւնը տալու անոնց ընդունակութիւնը, մեղրագործ արուեստը[1]:

Դասականի ուսումը կը պահանջէր անդուլ դեգերիլ դասական ամենածաղիկ դաշտավայրերու եւ լեռնալանջերու վրայ: Ուր կը յեղգար կամ կը խափանուէր մեղուն թռչելու ազատ եւ ժիր դէպի կանաչութիւն, կամ ուր կը վրդովէր իր անդորրութիւնը, հոն կը դադրէր իր արդիւնաբերութիւնը:

Մենք շնորհակալութիւն կը պարտինք մեղուաջան աշխատաւորներուն, որոնք մատակարարեցին մեզի մեղր եւ սորվեցուցին անոր պատրաստութեան արուեստը:

Հայ գրականութեան պատմութեան մէջ այդ մեծ վաստակաւորներու, առաջին հայ հումանիստներու ԱՆՈՒՆՆԵՐՆ ԱՆՄԱՀ ԵՒ ՆՈՒԻՐԱԿԱՆ են եւ պիտի մնան: Եւ ես թոյլ կու տամ ինձ երախտագէտ զգածումներով զոյգն տողերուս մէջ ԿԱՆԳՆԵԼ ԿՈԹՈՂ ՄԸ Ի ՅԻՇԱՏԱԿ ԱՆՈՆՑ, որոնք եղան վերածնիչ եւ տածիչ հայ դասական լեզուի, հայ Հումանիզմի:

---

[1] Կը պատմուի անեկդոտաբար, թէ Հ. Ե. Ձաքըճեան ի Կ. Պոլիս, երբ երկար բաժանումէ ետքը կը պատահի իր սիրելի ուսուցչին՝ Հ. Յ. Գաթըրճեանի, ողջագուրուելու ժամանակ կ'ուզէ հարցունել մեծ ուսուցչին. «Հ. Յովսէփ, ի՞նչ եղաւ ոսկեդարեան հայերէնդ». իսկ նա կը պատասխանէ յուզուած եւ հեծեծախառն. «Մոռցա՛յ, մոռցա՛յ», եւ ի միասին ուսուցիչ եւ աշակերտ, կը թափեն արցունքներ:

# Anhang:

## DAS KLASSISCH-ARMENISCHE UND DIE WIENER MECHITHARISTEN-SCHULE.

ZUSAMMENFASSUNG DES ARMENISCHEN TEXTES.

### I. Das goldene Zeitalter der armenischen Literatur (407—450). S. 11—54.

Das goldene Zeitalter der armenischen Literatur beginnt gleich mit der Erfindung der armenischen Schrift (407). Da das Hauptziel ihres Erfinders dahinstrebte, durch die Schrift die Verbreitung und das Verständnis des christlichen Glaubens zu erleichtern, so müssen wir im voraus annehmen, daß die Sprache, in welcher die Heilige Schrift und andere patristische Werke übersetzt wurden, dem Volke verständlich war. Sie tritt uns bereits im Anfang auf klassischer Höhe entgegen. Bis zu dieser Vollkommenheit konnte die Sprache nur im Munde der Volkssänger ausgebildet worden sein, wie dies die Reste der alten, wahrscheinlich schon im ersten vorchristlichen Jahrhundert entstandenen und erhaltenen Lieder bezeugen. In der Zeit, in die die Schrifterfindung fällt, war das armenische König-

reich, obwohl kurz vor dem Zusammenbruch, doch noch reich an Macht und Prunk und herkömmlichen Traditionen. Die Hofredner standen noch stolz auf der Kanzel, und die Volkssänger sangen und erzählten von alter Heroen- und Sagenwelt. Sie boten der Sprache volle Nahrung zu einer reichen Entwicklung. Neben dem Königshofe blühte das Patriarchat, und die Kirchenboten durchstreiften die Städte und Dörfer, um das Gotteswort den Gläubigen zu predigen. Es waren hie und da auch Schulen errichtet. In diesem gemeinverständlichen Dialekt, in dem die Sänger dichteten und die Prediger sprachen, waren auch die Schüler des Maštoç erzogen. Ihre weitere Ausbildung im Syrischen und Griechischen hat ihnen geholfen, das vorhandene Sprachmaterial zu einer Schriftsprache emporzuheben. Die Verwandtschaft der Sprache der alten Lieder mit der Schriftsprache sowohl in der Grammatik wie auch in der Syntax ist sehr eng. In jenen ist die Sprache schon in ihren echt armenischen Elementen lebendig, in diesen bereits bereichert durch neue Lehnwörter aus dem Pehlevi, ohne dabei ihren armenischen Charakter einzubüßen.

Die regelmäßige, formenreiche Grammatik, die elastische Syntax, die nuancenreichen Präpositionen, die ähnlich dem Griechischen

den Satzbau bekräftigenden enklitischen Partikel und der reichhaltige Wortschatz verschafften der Sprache alle Möglichkeiten, um eine klassische Literatur hervorzubringen. Die Übersetzer des klassischen Zeitalters besaßen alle Vorzüge, um die Sprache zur klassischen Vollendung auszubilden.

Weil es am Anfang schwer fallen würde, eigenhändig eine neue Literatur zu schaffen, begannen sie damit, die klassischen kirchlichen Werke der syrischen und griechischen Kulturvölker in ihre eigene Sprache zu übertragen. Dort hatten sie vollkommene Muster einer gebildeten Denkart. Unzählige biblische und patristische Werke wurden ins Armenische übersetzt, bisweilen buchstäblich treu, ohne daß dabei der armenische Sprachcharakter irgendwie litt, in anderen Fällen in freiem Stil, indem sie sich an den Sinn hielten, in der Satzkonstruktion aber ihren eigenen Weg gingen.

In kurzer Zeit wurde nach Armenien eine ganze Bibliothek biblischer und patristischer Literatur verpflanzt, und zwar nicht ohne einen festen Plan. Der Katholikos Sahak und Maštoç, der Leiter der Literaturbewegung, verfolgten in Vałaršapat konsequent den Plan, die biblische, exegetische, homiletische, hagiographische, historische und liturgische sowie kanonische Literatur ihrem Volk zu-

gänglich zu machen. Vieles davon ist erhalten, vieles verlorengegangen. Eine Liste der erhaltenen Schriften ist S. 119 ff. angegeben.

---

## II. Das silberne Zeitalter der armenischen Literatur (450—572). S. 55—82.

Es ist schwer, genau festzustellen, wo eigentlich das „Goldene Zeitalter" der armenischen Literatur aufhört und wo das „Silberne" anfängt. Es besteht große Wahrscheinlichkeit, daß gleich nach dem Tode der großen Meister Sahak und Maštoc (438/439) der Aufschwung der kulturellen Bewegung nachgelassen hat. Die kirchlichen sowie die politischen Verhältnisse zwischen Armenien und Persien spitzten sich zu, der Aufstand vom Jahre 451 folgte. Dieser wurde zwar bald unterdrückt, doch konnte die innere Ruhe lange nicht zurückkehren. Die Folge war das Aufhören des kulturellen Gedeihens.

In besseren Verhältnissen befand sich um diese Zeit Römisch-Armenien. Hier erwachte erst jetzt das literarische Leben, dessen Samen der hl. Maštoc um 421 ausgestreut hatte. Der Katholikos Giut (um 570 und etwas später der Geschichtsschreiber Lazar, welche ihre Ausbildung im „Römerland" genossen hatten, machen öfters davon Erwäh-

nung, daß sie Mitschüler in Römisch-Armenien hatten. Lazar weiß sogar mitzuteilen, daß es dort eine Übersetzungsschule gab, die für Groß-Armenien die Literatur besorgte. Zweifellos stammen unter anderen Moses und Chosrovik aus dieser Schule. Als Chosrovik mit seinen Übersetzungen nach Armenien kam, wurde er von den feindlich Gesinnten an der Grenze getötet; auch Moses fiel ihrem Hasse zum Opfer. Lazar, der diese Einzelheiten mitteilt und das Vorhandensein verschiedener patristischer Schriften bezeugt, macht leider keines von den Produkten dieser Übersetzungsschule namhaft. Ihr müssen aber der Alexanderroman von Pseudekalisthenes, die Schriften des Gregor von Nazianz und manche andere unbedingt angehören. Den Alexanderroman benützt Lazar in seinem Geschichtswerke. Die klassisch-armenische Sprache hat in diesen Übersetzungen viel von ihrem Glanze eingebüßt; besonders im Satzbau fühlt man den griechischen Einfluß.

Eine zweite Schule auf griechischem Boden treffen wir in J e r u s a l e m. In palästinischen Klöstern lebten um diese Zeit viele Armenier. Ein Kolophon am Ende der Antonius-vita besagt, daß sie „in der heiligen Stadt Jerusalem übersetzt worden ist im Jahre 450 der Ankunft unseres Herrn Jesu Christi,

in dem Jahre, als der selige Maštoç nach guter Laufbahn hinschied". Da der selige Maštoç schon vor genau zehn Jahren gestorben war, ist das gegebene Datum entweder um zehn Jahre zu reduzieren oder in Maštoç ein anderer Zeitgenosse zu verstehen. Der Verfasser will hier eine Entstellung des Namens Hesychios sehen, der um 450 in gutem Rufe in Jerusalem starb. Aller Wahrscheinlichkeit nach sind dieser Jerusalemer Schule folgende Schriften zuzuschreiben: Hesychios' Jobkommentar, das Jerusalemer Lectionarium und manche andere exegetische und aszetische Werke, die, obwohl sie aus nach-klassischer Zeit stammen, doch in einem reinen Stil verfaßt sind.

In Armenien selbst fängt die Literatur am Ende des 5. Jahrhunderts wieder an aufzublühen: Prominente sind Johann Mandakuni und Lazar von P'arpi. Eine Umgangssprache ist jetzt im Gebrauche: einfach, gediegen, der Vulgärsprache eng verwandt, stark beeinflußt von der Literatursprache der beiden vorangehenden Perioden. Dieselbe Sprache beherrscht auch die Korrespondenzen des folgenden Jahrhunderts.

Die präpositionellen Suffixe der hellenophilen Schule sind dieser Periode unbekannt.

Eine Ausnahme in seiner Eigentümlichkeit bildet der zweite Brief des Katholikos

Babgen (506/7). Obwohl die Echtheit des Briefes dem Inhalte nach unantastbar ist, kann er sprachlich aber unmöglich dem ersten Viertel des 6. Jahrhunderts angehören. Die Sprache näher betrachtend, kommt der Verfasser zu dem Schlusse, daß dieser Brief, da er im Originale um 572 verbrannt war, erst um 607 aus dem Griechischen in Edessa rückübersetzt ist. Unter anderen verriet das Wort *šaragrem* = συγγράφω die Posteriorität des Briefes.

---

### III. Die hellenophile Schule (572—603). S. 83—120.

Bisher hat man das Gründungsjahr dieser Schule in die zweite Hälfte des 5. Jahrhunderts verlegt. Obwohl die Philologen darüber öfters Bedenken aufkommen ließen, wagten sie doch nicht, die Zeit genau festzustellen. Die Haupthindernisse hiefür verursachten Moses Khorenatzi und Elisäus, welche, aus der hellenophilen Schule kommend, als Schriftsteller des 5. Jahrhunderts galten. Da in neuerer Zeit vom Verfasser für den ersteren das Jahr 820 und für den letzteren das Jahr 590 als terminus post quem aufgewiesen wurde und damit die genannten Hindernisse beseitigt sind, so hält der Verfasser die Stunde für gekommen, auch die

Gründungszeit der hellenophilen Schule endgültig zu bestimmen.

Von den Resultaten der klassischen Arbeit Prof. J. Manandians über die hellenophile Schule ausgehend, unterscheidet der Verfasser mit Manandian vier Gruppen im Raume der genannten Schule, und zwar:

I. Gruppe: 1. Dionysios Thrax; 2. Das Buch der Chrie; 3. Philo der Hebräer; 4. Hl. Irenäus.

II. Gruppe: 1. Timotheus Aelurus; 2. Aristoteles, περὶ ἑρμηνείας, 3. Aristoteles, κατηγορία, 4. Porphyrios, εἰσαγωγή, 5. Jamblichos, Kommentar zu περὶ ἑρμηνείας, 6. Jamblichos, Kommentar zu κατηγορία.

III. Gruppe: 1. Davids Prolegomena; 2. Analytik zu Porphyrs εἰσαγογή; 3. Fünf Probleme über Einteilung; 4. Kommentar zur Analytik zu 14 Kap. Arist.; 5. Elias, Kommentar zu Aristoteles' Kategorie; 6. Fragmente des Kommentars zu Aristoteles' Kategorie.

IV. Gruppe: 1. Nonnos, Scholien; 2. Aristoteles, περὶ κόσμου.

Diese Gruppierung der Schriften kann nur sprachlich, nie chronologisch als richtig angenommen werden. Unter den vier Gruppen besitzt ohne Zweifel die erste Gruppe chronologisch die Priorität, und Dionysios

bildet darin den Eckstein der hellenophilen Schule.

Es ist nicht leicht zu erklären, wie der Armenier dazukam, eine für die Griechen bestimmte Grammatik wortgetreu, ja sogar sklavisch, ohne jegliche Anpassung an die Muttersprache, ins Armenische zu übertragen. Er, der unbestritten ein guter Kenner des Klassisch-Armenischen war, erlaubt sich, ohne Störung eine mit propositioneller Wortbildungskraft versehene Sprache mit gedachter Absicht Glied um Glied ins Armenische zu übersetzen, nicht nur die technischen Ausdrücke, sondern auch die Konjugationen mit ihrem variierten Modus.

Die Ergebnisse einer solchen gewagten Probe konnten selbstverständlich für eine nicht mit gleichen Befugnissen versehene Sprache fatal sein. Verfolgte der Übersetzer dabei die Absicht, die armenische Sprache nach dem Griechischen neu zu gestalten? Wahrscheinlich nicht. Der Verfasser vermutet, daß der Zweck einer solchen Unternehmung nur darauf abzielen konnte, den Griechisch lernenden jungen Armeniern die Denkweise der Hellenen begreiflicher und anschaulicher zu machen.

Die einmal nach dem griechischen Muster hergestellten technischen Worte faßten

in den Schülern der Grammatik festen Fuß und wurden weiter gebraucht.

N. Aghbalian auf der Suche nach den Spuren des Übersetzers des Dionysios gelangte zu der Vermutung, daß der Übersetzer aus einer Gegend stamme, wo Schneelawinen, Weinreben usw. vorkommen; er kennt die Provinz Taraun und deren Städte, lebt in näherer Umgebung der Mamikonier. Gestützt auf diese Ergebnisse, neigt Manandian zu der Behauptung, daß die Übersetzung in einem Milieu gefertigt ist, das in unmittelbarer Nachbarschaft der Byzantiner liegt, nämlich in westlichen Gauen Armeniens. Diese Ansicht will er damit begründen, daß die dritte Gruppe, die der ersten sprachlich sehr nahesteht, inhaltlich nach chalkedonischer Richtung hinstrebt, dagegen die zweite Gruppe die monophysitische Lehre vertritt.

Über die Zeit, in der diese Gruppen wirkten, sich genau auszudrücken, vermeidet Manandian. Nur für die zweite Gruppe weist er die Zwischenzeit von 552 bis 564 auf.

Um die Entstehung, das Milieu und die Tätigkeit der hellenophilen Schule anschaulicher zu machen, wählt sich der Verfasser den armenischen Krieg vom Jahre 572 zum Ausgangspunkt. Der Aufstand dieses Jahres war ein Signal zu dem zwanzigjährigen Krieg zwischen Persien und Byzanz. Gleich zu Be-

ginn des Krieges mußten viele Armenier, darunter die Fürstenfamilien und die hohe Geistlichkeit das Land verlassen und auf byzantinischem Boden Zuflucht suchen. Die Flüchtlinge, darunter auch der armenische Katholikos Johann, gelangten nach Konstantinopel, wo ihnen Kaiser Justin gastfreundlich entgegenkam. Lange mußten sie hier in der Verbannung leben. Die adelige Jugend brauchte Ausbildung, und die griechischen Schulen wurden ihnen zugänglich. Um den der griechischen Sprache Unkundigen den Unterricht zu erleichtern, übersetzte man die Schulbücher in verständlicher Weise ins Armenische (Grammatik, Rhetorik usw.). Das gewagte Stück, bei den Übersetzungen die hellenische Denkweise beizubehalten, dürfte von e i n e m unternommen sein, der mit seiner Autorität bei den Zeitgenossen Ansehen genoß. Eine solche Persönlichkeit war unbedingt der Oberfeldherr Wardan, der Mamikonier, der, um 575 nach Konstantinopel zurückgezogen, ebenfalls in der Verbannung weilte. Elisäus, der um 590 in seinem Auftrage die Geschichte des armenischen Krieges niederschrieb, lobt seine Neigungen zu Wissenschaften und seine literarische Ausbildung. Es ist wahrscheinlich nicht ohne Absicht, wenn Elisäus in seinem

Widmungsworte sich öfters der philonischen Ausdrücke (= I. Gruppe!) bedient.

Daß tatsächlich Konstantinopel das Betätigungsmilieu der hellenophilen Schule war, und zwar während der zwanzigjährigen Kriegsdauer, wird durch das Kolophon bestätigt, wonach das Buch der Wesen (*Girk' ēakaç*) im Jahre 576/577 im Auftrage des Kathalikos Johann, der nach 572 in Konstantinopel weilte, aus dem Griechischen ins Armenische übersetzt sei. Zur Argumentierung dieser Hypothese führt der Verfasser auch den Beweis, daß die um 577 von Eutychios, Patriarchen von Konstantinopel, veröffentlichte und nach kurzer Frist zurückberufene Schrift über Verschiedenheit der Naturen im gleichen Stil (= III. Gruppe) zu gleicher Zeit ins Armenische übersetzt ist.

Manandians Datierung bezüglich der II. Gruppe ist nach dem Gesagten zu früh. Seine Hypothese stützt sich auf den Todestag des Dioskur, welcher bei Timotheus, Antirretika, am 5. (var. 7) Thoth, 2. Sept. und 6. Hori angegeben wird. Um den armenischen Monatstag chronologisch dem 2. September gleichzusetzen, schlägt M. vor, den „6. Hori" in „26. Hori" zu korrigieren. Mit dieser leichten Korrektur bekommt er die vier Jahre 552 bis 555. Da aber (nach Theopist)

Dioskur am 4. September 454 starb, so schlägt er eine zweite Korrektur vor: „Thoth VII. Sept. IV. Hori XXVI.“ Das Zusammentreffen dieser Monatstage ist nur in den Jahren 560 bis 564 möglich.

Daß die angeführte Stelle in den Handschriften korrumpiert ist, unterliegt keinem Zweifel. Weil die Antirretika aber erst zu Anfang des 7. Jahrhunderts in Armenien zum Vorschein kommt, und zwar in einer Weise, die deren neue Einführung verriet, so schlägt der Verfasser vor, den Todestag Dioskurs wie folgt zu korrigieren: Thoth VII. September IV. Sahmi VI., deren Zusammentreffen chronologisch auf die Jahre 601 bis 603 fällt. Der Kopist hat wahrscheinlich in ՍեպտեմԲԵՐ Դ. ՍԱՀՄԻ des Originals irrtümlich Սեպտեմ. Երկրորդ ՀՈՌԻ gelesen.

Timotheus selbst sowie die anderen Schriften der Gruppe II. vertreten die monophysitische Lehre der Hypostasis. Die Notwendigkeit solcher Schriften wurde in Armenien erst nach 590 bis 606 fühlbar, als nach dem Friedensschlusse zwischen Chosroes II. und Mauritius die wirtschaftlichen Beziehungen beider feindlichen Länder wieder hergestellt wurden. Es wurden zahlreiche Schriften dyophysitischer Lehre in Armenien eingeführt. Um diese zu bekämpfen, war das Patriarchat genötigt, mono-

physitische Literatur herbeizuschaffen. Wie es aus dem Briefe des Katholikos Abraham (607) ersichtlich ist, hatte das Patriarchat dazu in Edessa, im Zentrum des Monophysitismus, eine Übersetzungsschule errichten lassen. Sie verfolgte die Übersetzungstechnik der Konstantinopler Schule, blieb aber streng dem griechischen Satzbau anhänglich.

Der Stil der hellenophilen Schulen erschien zuerst in Persisch-Armenien fremd, man gewöhnte sich aber nach und nach an die technischen Ausdrücke. Die Grammatiker, die Rhetoriker und die Dogmatiker eigneten sich den Stil an. Auf diese Weise erlangte der hellenophile Stil allmählich in der armenischen Literatur das Bürgerrecht.

---

## IV. Die armenische Sprache im Laufe der Jahrhunderte (407—1840). S. 121—136.

Die Literatursprache hat nach der ersten Hälfte des 5. Jahrhunderts ihren klassischen Charakter verloren. Das armenische Königreich war um 428 gestürzt worden. Die politischen Verhältnisse, insbesondere aber der mazdaische Religionszwang, brachten das Land in Aufstand (451). Der Befreiungskrieg mißglückte, damit wurde auch die kulturelle Bewegung geschädigt. So in Per-

sisch-Armenien. Auf byzantinischem Boden, in Römisch-Armenien, wo um 420 Maštoç armenische Schulen gestiftet hatte, sowie in Jerusalem, wo um diese Zeit mehrere armenische Klöster ins Leben gerufen waren, herrschte noch Ruhe und wurde die Literatur weitergepflegt. Wahrscheinlich gehören dieser Periode jene Übersetzungen an, in denen die Sprache, wenn nicht auf klassischer Höhe, doch noch in ziemlich reiner Form hervortritt. Man spürt in manchen Schriften stark, in anderen schwach die griechische Syntax; es kommen dabei aber auch schon die Elemente der Vulgärsprache zum Vorschein sowie die von den Klassikern vermiedenen Suffix und Wörter.

Einen fatalen Eingriff in die Sprache unternahmen dann die hellenophilen Schulen, die nach 572, dem Aufstande Armeniens gegen Chosroes I., in Konstantinopel und in Edessa gegründet wurden. Sie begannen verschiedene philosophische Werke ins Armenische zu übersetzen. Da es für philosophische Begriffe keine fertige Terminologie gab, so versuchten die Übersetzer nach dem Griechischen präpositionellen Wortbildungsystem neue armenische Termini zu bilden und eine dem Griechischen entsprechende Syntax einzuführen. Die Konstantinopler Schule nahm in ihren Arbeiten eine noch einigermaßen

freie Richtung, die Edessenische Schule dagegen trachtete nach einer sklavischen Wiedergabe der griechischen Satzkonstruktionen, wobei die Sprache nur noch in den Vokabeln armenisch blieb. Die Schriften von Dionysios Thrax, Philo, Irenäus, David, Aristoteles usw. sind die Machwerke dieser beiden Schulen.

Diese Erneuerungen wurden zuerst von den Gelehrten akzeptiert und fanden nachher einen allgemeinen Gebrauch. Ihrem Beispiel folgten Step'anos von Siunik' (8. Jahrhundert), Gregor Magistros und sein Sohn Gregor Pahlavuni (11. Jahrhundert) in ihren Übersetzungen aus dem Griechischen.

Der arabische und persische Einfluß auf die Sprache und Literatur war sehr gering. Erst im 11. Jahrhundert wurden einige medizinisch-astrologische Werke aus dem Arabischen und Persischen ins Armenische übertragen, wodurch mehrere Termini gleichzeitig akzeptiert wurden. Da diese Literaturgattung mehr für das Volk bestimmt war, so zeigt sie eine vulgärarmenische Färbung. Das Vulgärarmenische beeinflußte überhaupt seit dem 13. Jahrhundert die Literatursprache sehr stark.

Anfangs des 14. Jahrhunderts wurden in Armenien abendländische Missionshäuser ge-

gründet. Es wurden mehrere theologisch-philosophische Werke ins Armenische übersetzt. In der ersten Periode war die Sprache tadellos. Die Fratres unitores gingen dann aber bald ihren eigenen Weg, indem sie sklavisch das Lateinische nachahmten. Die in Rom gegründete armenische Schule (17. Jahrhundert) bildete nachher noch eindeutiger ihre neue Sprache nach dem lateinischen Muster aus. Damit war der Tiefpunkt in der armenischen Sprachentwicklung erreicht.

Es war die Aufgabe der Mechitharisten-Kongregation (seit 1701), die Schriftsprache wieder auf ihre klassische Höhe zurückzuführen. Mechithar, der Stifter, und seine Schüler bemühten sich, zuerst die Latinität und die Spuren des Vulgärarmenischen aus der Sprache zu tilgen. Es gelang ihnen, zunächst die Sprache wieder auf das Niveau der Literatur des 12. Jahrhunderts zu heben. Es wurden mehrere alte Literaturwerke herausgegeben, Wörterbücher und Grammatiken verfaßt und in Prosa und in Versen die schöne Literatur gepflegt. Dies alles waren die Leistungen der Mechitharisten von Venedig. Sie verwendeten dabei große Energie und Ausdauer, wurden aber nicht darauf aufmerksam, daß die Sprache noch nicht zu ihrer klassischen Höhe regeneriert war, weil sich durch die Elemente des 5. bis

13. Jahrhunderts noch keine reine Schriftsprache zusammensetzen ließ. Denn auch die armenische Literatur hatte einst ihre klassische Periode besessen.

---

### V. Die Renaissance des Klassisch-Armenischen. S. 137—188.

Die Renaissance des Klassisch-Armenischen verdankt ihre Enstehung der Wiener Mechitharisten-Kongregation. Es war Pater Josef Gatherdjian, der zuerst darauf aufmerksam machte, daß die im 19. Jahrhundert allgemein gebrauchte Literatursprache eine Mischsprache sei, die sich aus Sprachelementen verschiedener Jahrhunderte zusammensetzte. Auf der Suche nach dem Echten, Klassischen, kam er zum Schluß, daß die Sprache sich in ihrer klassischen Erhabenheit nur in der Literatur der ersten Hälfte des 5. Jahrhunderts befunden hat. Hier tritt die Sprache in ihrer autochthonen Reinheit und natürlichen Grazie auf. Grammatik und Wortschatz stehen hier in engstem Zusammenhang, der Stil zeigt die höchste Eleganz. Alle Eigenschaften, die an einer klassischen Sprache bewundert zu werden pflegen, treten hier in voller Entfaltung entgegen. Die Literaturwerke dieser Periode

stellen eine eigene Gruppe dar, die von den späteren sowohl grammatisch wie im Wortschatz verschieden ist.

Gatherdjian unternahm im Bunde mit seinen Konfratres, die Literaturgeschichte dieser Periode, des sogenannten goldenen Zeitalters, leidenschaftlich zu studieren und sich anzueignen. Im Jahre 1841 gaben sie als Erstlingswerk die Übersetzung von Bossuets Discours sur l'histoire universelle in klassisch-armenischer Sprachform heraus. Zu gleicher Zeit erschien dasselbe Werk auch in der Venediger Presse. Es war eine Überraschung für das Publikum. Der Unterschied der von beiden Parteien angewandten Literatursprachen und ihrer Übersetzungskunst war eklatant. Man erkannte sofort, daß diese neue Wiener Schule die Zerstörung der alten Venediger Schule bedeutet. Eine heftige Feindseligkeit gegen die neue Richtung entwickelte sich. Die jungen Humanisten zögerten aber nicht, ihre intensive Wirksamkeit fortzusetzen.

Die neue Theorie gewann nach und nach bei den philologisch Denkenden an Boden und wird bis heutzutage bei den Wiener Mechitharisten konsequent gepflegt und ausgebaut.

**VI. Die Biographie des P. Josef Gatherdjian.** S. 189—274.

P. J. Gatherdjian, geboren am 19. Februar 1820 in Konstantinopel, starb dortselbst am 9. Jänner 1882. Er stand noch im zarten Alter, als er in die Mechitharisten-Kongregation zu Wien eintrat (am 25. Mai 1833), wo er mit Auszeichnung die Gymnasial- und theologischen Kurse absolvierte. Am 30. Mai 1841 empfing er die Priesterweihe. Mit diesem Zeitpunkt begann auch seine schriftstellerische Tätigkeit.

In die erste Periode seines Wirkens fallen die Übersetzungen aus dem Französischen, Griechischen und Lateinischen: Bossuet, Discours sur l'histoire universelle (1841), Xenophons Kyropädie (1843), Ciceros Cato maior de senectute (1843), Curtius Rufus' Alexandergeschichte (1841), Cyprians de unitate ecclesiae (1846) usw. in einer rein klassischen Sprache.

In den Jahren 1849 und 1852 gab er die zwei Bände der Weltgeschichte (bis zum Jahre 484 n. Chr.) mit besonderer Berücksichtigung der armenischen Geschichte heraus, in der zum erstenmal die Geschichte Armeniens auf Grund der auswärtigen Quellen, in Unabhängigkeit von Moses Khorenaçi, kritisch und ausführlich dargestellt wird.

Obwohl Gatherdjian seit 1853 von seinen Obern in Verwaltungs-, Schul- und kirchenpolitischen Fragen herangezogen wurde (in Wien, Rom und Konstantinopel), daher die Weltgeschichte sowie die armenische Literaturgeschichte (das erste Heft erschien 1851) unvollendet lassen mußte, hörte er doch nicht auf, literarisch weiterzuarbeiten. Im Jahre 1864 gab er eine theologische Arbeit: Die Grundunterschiede in Glaubensartikeln zwischen den katholischen und nichtunierten armenischen Kirchen, heraus. Nachher erschienen: De obitu Joannis apostoli narratio ex versione armeniaca saeculi V (1877), De Fidei symbolo quo Armenii utuntur observationes (1893, posthum), die Meßbücher der Armenier (1897, herausgegeben von P. J. Dashian) usw. Seine großzügigen Studien über die armenischen Martyrologien, Kanon- und Ritualbücher blieben unvollendet.

Im Jahre 1878 wurde er in Triest von einem Schlaganfall heimgesucht und verschied nach schwerem Leiden am 9. Jänner 1882 in Konstantinopel.

---

## VII. Die Wiener Mechitharisten-Schule (1840—1854). S. 275—365.

Der Enthusiasmus, den die Renaissance des Klassisch-Armenischen in der Mechitaristen-Schule hervorbrachte, ergriff die jun-

gen Zeitgenossen. Sie vertieften sich in die Lesung und Studien der klassischen Autoren und beherrschten die klassische Sprache vollkommen. Unter den Genossen und Schülern Gatherdjians zeichneten sich als armenische Humanisten besonders die folgenden aus:

1. P. Matthias Garagašian († 1903) verfaßte *Die Eigenschaften der Wissenschaften* (mit Berücksichtigung des Klassisch-Armenischen), *Rhetorik, Philosophie;* übersetzte in Versen Racines *Religionslieder.*

2. P. Leontius Hovnanian († 1897) verfaßte *Geschichte der europäischen Staaten, Geschichte der ökonomischen Synoden im Orient;* übersetzte C. Nepos' *de illustribus viris.*

3. P. Lukas Terterian († 1897) verfaßte ein *Lehrbuch der Mathematik* in drei Bänden.

4. P. Cherubin Spenian († 1886) übersetzte *die Regeln des hl. Benedikt.*

5. P. Philipp Djamdjian († 1853) übersetzte drei Bände aus der Rodrigues' *Christliche Vollkommenheit,* Florian's *Tobias;* verfaßte *Dizionario italiano-francese-armeno-turco.*

6. P. Serapion Eminian († 1854) übersetzte Avancinus' *Betrachtungen,* das *Memoriale vitae sacerdotalis;* verfaßte *Dictionnaire français-armenien-turque.*

7. P. EFREM TSCHAKIDJIAN († 1911) übersetzte CICEROS *Laelius de amititia;* verfaßte ein armenisch-türkisches Wörterbuch.

8. P. ARSENIUS AÏDINIAN (später Generalabt und Erzbischof, † 1902) übersetzte RODRIGUES' *Abhandlung über das Gelübde der Armut.*

9. P. SAMUEL GATHERDJIAN († 1895) übersetzte eine *Homilie* aus dem J. CHRYSOSTOMUS' *Kommentar zu Paulus' Ephesinischem Brief,* PROSPERS *Sentenzensammlung.*

---

